## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9
ՍԵՊՏԵՄԲԵՐ 1973
ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# Содержание







# ԱՆՇԵՂՈՐԵՆ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԵԾ ԿԱՆԽԱԳԾՈՒՄՆԵՐԸ ԿՐԹՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Մեր երկրում կոմունիստական շինարարության արդի փուլի կարևորա-
գույն խնդիրներից մեկը ժողովրդի հոգևոր կյանքի անընդհատ կատարելա-
գործումն է, նրա կուլտուրական և կրթական մակարդակի բարձրացումը, կոմու-
նիզմի ակտիվ կառուցողների դաստիարակումը:
Հետևելով մեծ Լենինի այն ցուցումին, որ կոմունիստական հասարա-
կարգն աներևակայելի է առանց գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի
բարձրագույն նվաճումների, առանց ժամանակակից կրթության, մեր կուսակ-
ցությունը միշտ առանձնահատուկ հոգատարություն է ցուցաբերել և ցուցաբե-
րում է սովետական ժողովրդի հոգևոր կյանքի զարգացման նկատմամբ: Մեր
երկրում իրականացվել է, հիրավի, մեծագույն կուլտուրական հեղափոխություն:
Այսօր մենք ունենք կոմունիզմի մեծ իդեալների վրա հիմնված կրթության
առաջադիմական և իսկական դեմոկրատական սիստեմ: Սոցիալիզմի ֆլագ-
ման երկիրն այսօր պատված է գիտության, կուլտուրայի, ուսումնական հիմ-
նարկությունների խիտ ցանցով: Լույս և գիտելիք՝ ահա թե ինչն է խորհրդա-
նշական մեր Միությանը:
Սովետական Միությունն արդեն վաղուց դարձել է համատարած գրագի-
տության երկիր: Այժմ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված աշխատա-
վորների 72 տոկոսն ունի բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթու-
թյուն: Երկրում աշխատում է բարձրագույն կրթությամբ 7 միլիոն 700 հազար և
միջնակարգ մասնագիտական կրթությամբ՝ 11 միլիոն 300 հազար մասնագետ:
Ժողովրդական կրթության և կուլտուրայի բնագավառում չտեսնված բար-
ձունքների են հասել ՍՍՀՄ բոլոր հանրապետությունները:
Հայկական ՍՍՀ դպրոցներում սովորում են 673.300 աշակերտ, միջնա-
կարգ-մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ 16.270, պրոֆե-
սիոնալ-տեխնիկական ուսումնարաններում՝ մոտ 30.000, բուհերում՝ 54.500
ուսանող: Հանրապետության ժողովրդական տնտեսությունն ամեն տարի ստա-
նում է հազարավոր մասնագետներ, որոնք ակտիվորեն մասնակցում են մեր
երկրի կոմունիստական առաջընթացի համար մղվող պայքարին:
Այս ամենը կոմունիստական կուսակցության իմաստուն քաղաքակա-

թյան, կրթության և կուլտուրայի բնագավառում մեր ժողովրդի աչքի ընկնող նվաճումների փայլուն վկայությունն է:

ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը մշտապես ուշադրության կենտրոնում են պահում ժողովրդական կրթության սիստեմի կատարելագործման ու զարգացման պրոցեսը: ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ կառավարությունը կուսակցության XXIV համագումարից հետո ընդունեցին մի շարք որոշումներ՝ «Երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթության անցումն ավարտելու և հանրակրթական դպրոցի հետագա զարգացման մասին», «Պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմի հետագա կատարելագործման մասին», «Երկրում բարձրագույն կրթության հետագա կատարելագործման միջոցառումների մասին»: Վերջերս Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը որոշում ընդունեցին «Գյուղական հանրակրթական դպրոցի աշխատանքի պայմանների հետագա բարելավման միջոցառումների մասին»:

Այս որոշումներում նախատեսված է ժողովրդական կրթության, նրա բոլոր բաղկացուցիչ մասերի կոմպլեքսային զարգացման ու կատարելագործման լայն ծրագիր: ՍՍՀՄ Գերագույն սովետի վեցերորդ սեսիան համակողմանիորեն քննարկեց մեր երկրում ժողովրդական կրթության հետագա կատարելագործման խնդիրները և հաստատեց ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների ժողովրդական կրթության օրենսդրության հիմունքները:

Առաջին անգամ միասնական օրենսդրական ակտի մեջ ի մի են բերվում ընդհանուր միջնակարգ, պրոֆեսիոնալ-տեխնիկական, միջնակարգ-մասնագիտական և բարձրագույն կրթության մասին առավել կարևոր դրույթները: Այդ փաստաթուղթը, որը վավերագրում է աճող սերնդի կոմունիստական դաստիարակության մասին լենինյան գաղափարների իրականացման արժեքավոր փորձը, նպատակ ունի առավել կատարելագործելու ժողովրդական կրթությունը:

Օրենսդրության հիմունքներում ձևակերպված են ՍՍՀՄ-ում ժողովրդական կրթության կարևորագույն սկզբունքները. բոլոր քաղաքացիների հավասարությունը կրթություն ստանալու ասպարեզում, ուսուցման լեզվի ազատ ընտրությունը, կրթության պարտադիր բնույթը բոլոր երեխաների և դեռահասների համար, անվճար կրթությունը, ժողովրդական կրթության հիմնարկությունների պետական և հասարակական բնույթը, կրթական սիստեմի միասնությունը, ուսուցման և կոմունիստական դաստիարակության միասնությունը, դպրոցի, ընտանիքի և հասարակայնության համագործակցությունը դաստիարակության ասպարեզում, կրթության գիտական բնույթը և նրա մշտական կատարելագործումը գիտության, տեխնիկայի, կուլտուրայի նորագույն նվաճումների հիման վրա, կրթության ու դաստիարակության մարդասիրական և վսեմ բնույթը:

Ժողովրդական կրթության պետական սիստեմն իր մեջ ներառնում է մի շարք օղակներ՝ մանկապարտեզից մինչև բուհ: Օրենսդրության հիմունքներում սահմանված են նրանցից յուրաքանչյուրի խնդիրները: Ավելի քան 10 միլիոն երեխաներ դաստիարակվում են նախադպրոցական հիմնարկություններում: Մեր հանրապետության նախադպրոցական հիմնարկությունների ցանցում ընդգրկված է մոտավորապես 100 հազար երեխա: Հիմունքներում սահմանված են նախադպրոցական դաստիարակության խնդիրները. ընտանիքի սերտ



համագործակցությամբ իրականացնել երեխաների համակողմանի ներդաշնակ զարգացումն ու դաստիարակումը, պահպանել ու ամրապնդել նրանց առողջությունը, նրանց պատվաստել տարրական պրակտիկ հմտություններ և սեր աշխատանքի նկատմամբ, երեխաներին նախապատրաստել դպրոցում սովորելու համար, տոգորել մեծերի նկատմամբ հարգանքի, սոցիալիստական հայրենիքի նկատմամբ սիրո ոգով:

Վերջերս ՀԿԿ Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը, քննության առնելով նախադպրոցական հիմնարկությունների ցանցի հետագա զարգացման ու նրանց աշխատանքի բարելավման միջոցառումների հարցը, բացահայտեցին եղած լուրջ թերությունները, միջոցներ նշեցին դրանց վերացման համար: Դատապարտելով շինարարական մինիստրությունների, գերատեսչությունների կողմից նախադպրոցական հիմնարկների կառուցման պլանը տարիներ շարունակ թերակատարելու պրակտիկան, մանկապարտեզների, մանկամսուրների ցանցում առկա մյուս բացերն ու թերությունները, ՀԿԿ Կենտկոմը և Մինիստրների սովետը համապատասխան մարմիններին գործնական առաջադրանքներ տվեցին այս ասպարեզում արմատական բեկում մտցնելու, գործերի վիճակը բարելավելու համար: ՀՍՍՀ լուսավորության մինիստրության, նրա օրգանների առաջնահերթ խնդիրն է բարելավել նախադպրոցական ցանցի գործունեությունը՝ ելնելով օրենսդրության հիմունքներում վավերագրված դրույթներից ու պահանջներից:

Տարեցտարի ավելանում է միջնակարգ կրթություն ստացող պատանիների ու աղջիկների թիվը: Միջնակարգ հանրակրթական դպրոցը հանդիսանում է մեր երկրի կրթական սիստեմի կարևորագույն օղակը: «Միջնակարգ հանրակրթական դպրոցը (ընդհանուր միջնակարգ կրթություն ստանալու հիմնական ձևը) միասնական, աշխատանքային, պոլիտեխնիկական դպրոց է երեխաների և երիտասարդության ուսուցման ու դաստիարակության համար»,— ասված է հիմունքներում:

Միջնակարգ հանրակրթական դպրոցի գլխավոր խնդիրներն են՝ երեխաների և երիտասարդների ընդհանուր միջնակարգ կրթության իրականացումը, որը համապատասխանի հասարակական և գիտատեխնիկական առաջընթացի ժամանակակից պահանջներին, սովորողների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումը, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի պահանջների ոգով աշակերտներին բարոյական վսեմ հատկությունների ներարկումը, նրանց աշխատանքային ու հասարակական ակտիվ գործունեության, մասնագիտության գիտակցական ընտրության համար նախապատրաստումը:

Հանրակրթական դպրոցում 1973—1974 ուստարին կազմակերպված դիմավորելու, ուսուցչական կոլեկտիվների առջև դրված առաջնահերթ խնդիրները հաջողությամբ լուծելու հարցի շուրջ մտքերի աշխույժ փոխանակություն տեղի ունեցավ ավանդական օգոստոսյան խորհրդակցություններում: Նշվեց, որ թե՛ դպրոցների, թե՛ նախադպրոցական հիմնարկությունների, ընդհանուր միջնակարգ կրթության, թե՛ աշխատող երիտասարդության ուսուցման կազմակերպման ասպարեզում առկա որոշակի հաջողությունների հետ մեկտեղ, քիչ չեն թերությունները, որոնց վրա հրավիրվեց ժողովրդական կրթության մարմինների, կուսակցական և հասարակական կազմակերպությունների ուշադրությունը: Միայն պետական բարձր կարգապահություն հաստատելու, կուսակցական պահանջկոտությունը բարձրացնելու, ժողովրդական կրթության

բոլոր օջախների գործունեությունը բարելավելու միջոցով է հնարավոր հասնել այն խնդիրների լիակատար իրագործմանը, որ այսօր առաջադրում են ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը: Գյուղական դպրոցի աշխատանքի պայմանների բարելավման մասին ընդունված որոշման կատարումը, գյուղական բնակչության ուսուցման գործը արմատապես բարեփոխելու վերաբերյալ կուսակցության և կառավարության հոգատարությունը պարտավորեցնում է կուսակցական բոլոր կազմակերպություններին՝ լիովին իրագործելու առաջադրվող խնդիրները:

Աճող սերնդի ուսուցման և դաստիարակության ամբողջ գործի հետագա բարելավման համար անհրաժեշտ է, որ դպրոցի աշխատանքի բովանդակությունը լիովին համապատասխանի կոմունիստական շինարարության խնդիրներին, գիտատեխնիկական առաջընթացի պահանջներին: Իսկ դա նշանակում է, որ հարկավոր է մշտապես բարձրացնել ուսման որակը, հասնել աշակերտների բարձր առաջադիմության, իսկապես գործնականորեն պայքարել մաղումների, երկտարեցիության վերացման համար, դաստիարակել բարձր կուլտուրա ունեցող, քաղաքացիական պատվի զգացմամբ օժտված երիտասարդներ:

ՀՍՍՀ լուսավորության մինիստրության, նրա գիտա-մանկավարժական հիմնարկությունների առաջնահերթ խնդիրն է՝ կատարելագործել ծրագրերն ու դասագրքերը, արմատավորել դասավանդման առաջավոր փորձը, ուսուցման արդյունավետ մեթոդներն ու ժամանակակից տեխնիկական միջոցները, աշակերտներին ավելի բազմակողմանիորեն նախապատրաստել աշխատանքի և հասարակական ակտիվ գործունեության համար, ամրապնդել դպրոցի կապը կյանքի հետ:

Հանրապետության կուսակցական և սովետական մարմինները, լուսավորության օրգանները մեծ անելիքներ ունեն երեկոյան (հերթափոխային) և հեռակա հանրակրթական դպրոցների գործունեությունը բարելավելու, աշխատող երիտասարդության հանրակրթական պատրաստությունն արմատապես բարեփոխելու ասպարեզում: Այստեղ կան էական բացեր և թերություններ: Որոշ շրջաններում նույնիսկ մոռացության է մատնված աշխատող երիտասարդության հաշվառումը, իսկ առանձին գերատեսչություններում և ձեռնարկություններում անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծվել երիտասարդության ուսման կազմակերպման համար:

Անդրադառնալով այն հարցին, որ Միությունում բանվորների 34 տոկոսն ունի միայն տարրական և ավելի ցածր կրթություն, Լ. Ի. Բրեժնևը այս տարվա հուլիսի 26-ին Կիևում արտասանած իր ճառում ընդգծեց, որ «...դա մեզ համար ստեղծում է որոշակի պրոբլեմներ, որոնք պետք է լուծենք և որոնք այժմ լուծում ենք»:

Մեր հասարակության զարգացման արդի փուլն առանձնապես հրատապ է դարձնում բանվորների կրթական և պրոֆեսիոնալ մակարդակի բարձրացման ու գիտատեխնիկական մտավորականության պատրաստման ամբողջ սիստեմի կատարելագործման խնդիրները»:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Մինիստրների սովետի վերջերս համատեղ ընդունված որոշման մեջ շեշտվեց, որ կուսակցության շատ քաղկոմներ, շրջկոմներ, սովետների գործկոմներ, մինիստրություններ, գերատեսչություններ, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններ պատշաճ



պահանջկոտություն չեն ցուցաբերում առանց արտադրությունից կտրվելու երիտասարդության ուսուցման հոգսերի նկատմամբ: Խնդիր է դրված վերացնել տեղ գտած թերությունները, բարելավել ուսումնադաստիարակչական աշխատանքի վիճակը, բարձրացնել դասավանդման որակի և աշակերտների առաջադիմության, մաղումների ու երկտարեցիության վերացման համար երեկոյան (հերթափոխային) և հեռակա դպրոցների դիրեկտորների ու դասատուների պատասխանատվությունը, բոլոր ջանքերը գործադրել միջնակարգ կրթության սիստեմում երիտասարդության լիակատար ընդգրկումն ապահովելու վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների անշեղ կատարման համար:

Լուսավորության մինիստրությանը, շրջանային և քաղաքային սովետների գործկոմներին, ձեռնարկություններին ու կազմակերպություններին, կոլտնտեսություններին ու սովխոզներին հանձնարարված է վճռական ու գործնական միջոցներ ձեռնարկել երեկոյան և հեռակա ուսուցումը զարգացնելու ու կատարելագործելու նպատակով: Խոշոր ձեռնարկությունները, կոլտնտեսությունները և սովխոզները պետք է ստանձնեն երեկոյան և հեռակա դպրոցների շեֆությունը, գործնականում օգնեն կազմակերպված վարելու նրանց աշխատանքները:

Դպրոցի գործունեության հաջողությունը, նրա առջև դրված խնդիրների լուծումն ամբողջապես կապված է ուսուցիչների մանկավարժական մակարդակի, նրանց պատրաստման և վերապատրաստման գործերի դրվածքի հետ: Լուսավորության սիստեմն ամեն տարի համալրվում է բուհերի և ուսումնարանների նորավարտ հազարավոր ուսուցիչներով: Նրանց համար ստեղծվում են աշխատանքի և կյանքի բոլոր պայմանները: Կուսակցության և կառավարության հոգատարության շնորհիվ ուսուցիչների աշխատավարձը 1972 թվականին բարձրացվել է միջին հաշվով 20 տոկոսով:

Կուսակցական, սովետական օրգանները, հասարակական կազմակերպությունները իրենց ամենօրյա օգնությամբ պետք է նպաստեն ուսուցչության հայրենանվեր գործունեությանը, ընդհանուր միջնակարգ կրթության անցնելու հաջող ավարտին:

Մեր հասարակարգը շահագրգռված է այն բանում, որպեսզի երիտասարդ սերունդը հստակ գիտակցի աշխատանքի մարդու դերն ու վեհությունը, ձգտի կանգնել բանվոր դասակարգի փառապանծ շարքերում:

Բանվորական կադրերի համալրման հիմնական միջոցը պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններն են: Աստիճանաբար մեծ համարում և ժողովրդականություն են ստանում պրոֆտեխնիկական այն ուսումնարանները, որոնք տալիս են և՛ մասնագիտություն, և՛ միջնակարգ կրթություն: Անհրաժեշտ է մշտապես հոգ տանել այս դպրոցների զարգացման և կատարելագործման մասին:

«Պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունները երիտասարդության պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության և բանվոր դասակարգի արժանի համալրում կազմակերպելու հիմնական դպրոցն են»,— ասված է օրենսդրության հիմունքներում: Նրանք պատրաստում են ժողովրդական տնտեսության համար բազմակողմանիորեն զարգացած, տեխնիկապես կրթված ու կուլտուրական երիտասարդ որակյալ բանվորներ, որոնք տիրապե-

տում են ժամանակակից արտադրության, գիտատեխնիկական առաջադիմու-
թյան արվեստին, ունեն մասնագիտական վարպետություն:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության
պետական կոմիտեի, գործարանների, հիմնարկ-ձեռնարկությունների առաջ-
նահերթ խնդիրն է հետևողականորեն ընդլայնել պրոֆտեխնիկական կրթու-
թյան ցանցը, բարելավել աշակերտների ուսուցման և կոմունիստական դաս-
տիարակության գործը, արդյունաբերությանը, գյուղատնտեսությանը, ժողո-
վըրդական տնտեսության բոլոր ճյուղերն ապահովել բարձրորակ, հմուտ և
կուլտուրական բանվորական կադրերով:

Օրենսդրության հիմունքներում սահմանված են բարձրագույն ուսումնա-
կան հաստատությունների գլխավոր խնդիրները. պատրաստել մարքս-լենին-
յան տեսությունը և ընտրած մասնագիտությունը տիրապետող, մասսայական-
քաղաքական ու դաստիարակչական աշխատանքի կազմակերպման ասպա-
րեզում տեսական խոր գիտելիքներ և գործնական ունակություններ ունեցող
բարձրորակ մասնագետներ. ուսանողներին տոգորել բարոյական վսեմ հատ-
կություններով, կոմունիստական գիտակցականությամբ, կուլտուրայով, սոցիա-
լիստական ինտերնացիոնալիզմով, սովետական հայրենասիրությամբ, սոցիա-
լիստական հայրենիքը պաշտպանելու պատրաստակամությամբ, անընդհատ
կատարելագործել մասնագետների պատրաստման որակը, հաշվի առնելով
ժամանակակից արտադրության, գիտության, տեխնիկայի և կուլտուրայի պա-
հանջները և դրանց զարգացման հեռանկարները և այլն:

Կադրերի որակից, նրանց քաղաքացիական պատասխանատվությունից է
կախված գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, սոցիալական և
կուլտուրական զարգացման ասպարեզում նոր հաջողությունների ապահովումը:
Ահա թե ինչու այսօր նախ՝ դրվում է վաղվա որակյալ մասնագետների պատ-
րաստման գործի բարելավման խնդիրը:

Օրենսդրության հիմունքներում ընդգծվում է ուսումնական և դաստիարակ-
չական պրոցեսների միասնության անհրաժեշտությունը: Մասնագետների
դաստիարակումը կոմունիստական համոզվածության և պատասխանատվու-
թյան ոգով պետք է հանդիսանա ուսումնական հաստատությունների, կուսակ-
ցական և հասարակական կազմակերպությունների առանձնահատուկ հոգա-
ծության առարկան: Ուսման ընթացքում ուսանողները պետք է ո՛չ միայն ո-
րոշակի գիտելիքներ կուտակեն, այլև ձեռք բերեն որոշակի մտածելակերպ,
մարքս-լենինյան աշխարհայացք: Այս ամենը կախված է դասախոսների, ման-
կավարժների որակից, նրանց գործունեությունը ճիշտ կազմակերպելուց: Իսկ
դասախոսները մեկ կամ երկու տարվա ընթացքում չեն ստեղծվում: Ուսանող-
ների թվի աճը պրոբլեմներ է հարուցում ո՛չ միայն դասախոսական կադրեր
պատրաստելու, այլև բուհերի նյութատեխնիկական բազան ամրապնդելու,
ընդլայնելու ասպարեզներում:

Ժողովրդական կրթության օրենսդրության հիմունքներում արձանագրված
հիմնական սկզբունքների և խնդիրների անշեղ կատարումը, դրանց հետևո-
ղական իրագործումը կհանդիսանա մեր երկրում կոմունիստական հասարա-
կարգի կառուցման վճռական գործոններից մեկը:



# ԱԶԳԱՅԻՆ ԵՎ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ՇԱՀԵՐԻ ԶՈՒԳԱԿՑՈՒՄԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Ռ. Բ. ՍԱՀԱԿՅԱՆ

*Արդիականության քաղաքական կարևորագույն խնդիրը հեղափոխական
բոլոր ուժերի միասնության ապահովումն է նրանց համատեղ պայքարում՝
ընդդեմ իմպերիալիզմի, հանուն խաղաղության, դեմոկրատիայի և հասարա-
կական առաջընթացի: Հակաիմպերիալիստական ուժերի միասնության միջու-
կը, նրա ցեմենտող գործոնը միջազգային կոմունիստական շարժումն է, ամե-
նից առաջ, սոցիալիստական աշխարհի կոմունիստական ու բանվորական կու-
սակցությունների, համաշխարհային սոցիալիստական սիստեմի միասնու-
թյունը:*

*Սոցիալիստական երկրներում առկա են հասարակական առաջընթացի
ամենազոր ուժեր, կոմունիստական ու բանվորական ազդեցիկ կուսակցու-
թյուններ: Դրա համար էլ նրանց միասնությունից, համաձայնեցված գործո-
ղությունններից է կախված ո՛չ միայն համաշխարհային սոցիալիզմի ներքին
խնդիրների, այլև հեղափոխական ողջ շարժման ինչպես մերձակա, այնպես էլ
հեռավոր խնդիրների լուծումը:*

*ՍՄԿԿ-ն, սոցիալիստական մյուս երկրների մարքս-լենինյան կուսակցու-
թյունները գիտակցում են սոցիալիստական սիստեմի միասնության, նրա
հետագա ամրապնդման կարևորությունը: Նրանք իրենց ջանքերն են ներդնում,
«որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը լինի նոր հասարակարգը համա-
տեղ կառուցող ու պաշտպանող, փորձով ու գիտելիքներով միմյանց հարըս-
տացնող ժողովուրդների համերաշխ ընտանիք՝ համախմբված ու ամուր ըն-
տանիք, որի մեջ երկրագնդի մարդիկ տեսնեն ազատ ժողովուրդների ապագա
համաշխարհային միության նախատիպը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութե-
րը, էջ 18):*

*Սոցիալիստական երկրների միասնության ամրապնդման վճռական նա-
խապայմանն ազգային-պետական և ինտերնացիոնալ շահերի ներդաշնակ զու-
գակցումն է. միայն այդպիսի զուգակցումը կարող է ապահովել յուրաքանչյուր*

առանձին սոցիալիստական երկրի և ողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացումը։

Սույն հոդվածում մեր ուսումնասիրության առարկան ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցման պրոբլեմն է։ Դրա լուսաբանման համար անհրաժեշտ է բացահայտել ազգային և ինտերնացիոնալ շահերի էությունը, տալ դրանց գիտական սահմանումը։

Սոցիալիստական համագործակցության փորձը ցույց է տալիս, որ յուրաքանչյուր սոցիալիստական երկիր ունի իր ազգային շահերը, որոնք կապված են նրանց առանձնահատուկ ազգային պայմանների հետ։ Ամեն մի ժողովրդի ազգային շահերը պետք է բացատրել ոչ թե «ազգային ոգով», «ազգի հոգեոր էությամբ», այլ դրանց գոյության ռեալ պայմաններով։ Ազգային շահերի գոյությունը սոցիալիստական երկրներում պայմանավորված են հետևյալ գործոններով. միջազգային դրության և միջազգային տնտեսական հարաբերությունների, տնտեսական զարգացման մակարդակի, ազգային արտադրության համակենտրոնացման ու ներքին շուկայի մեծության տարբերությամբ, հումքի և բանվորական ուժի մեծության, աշխարհագրական դիրքի, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանմանը յուրաքանչյուր երկրի մասնակցության, դասակարգային կառուցվածքի (բանվոր դասակարգի տեսակարար կշիռ, գյուղացիության դրություն և այլն), ազգային կազմի, հասարակության սոցիալիստական վերափոխման փուլերի, պատմական և կուլտուրական ավանդույթների տարբերությամբ։

Սոցիալիզմի ժամանակ ազգային շահերը՝ բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի կենսական շահերն են, իսկական համազգային, համաժողովրդական շահերը:

Ինտերնացիոնալ շահերն առաջանում են սոցիալիստական երկրների ինտերնացիոնալ փոխհարաբերությունների զարգացման հիման վրա։

Ինտերնացիոնալ շահերն իրենց բազմազանությամբ արտահայտում են տվյալ ինտերնացիոնալ դասակարգի պահանջները, նրա վերաբերմունքն իր գոյության և զարգացման պայմանների նկատմամբ:

Սոցիալիստական երկրների ինչպես ազգային, այնպես էլ ինտերնացիոնալ շահերն ունեն պատմական, օբյեկտիվ և դասակարգային բնույթ։ Պատմական բնույթը երևում է այն բանում, որ պատմական զարգացման ընթացքում ընդլայնվում և փոփոխվում են դրանց բովանդակությունը, դրսևորման ու իրականացման ոլորտները։ Շահերն օբյեկտիվ բնույթ ունեն, որովհետև դրանց բովանդակությունը մարդկանց գիտակցությունից և կամքից անկախ է։ Եվ, վերջապես, դասակարգային բնույթ ունեն, որովհետև արտահայտում են տվյալ դասակարգի կամ նրա ազգային ջոկատների օբյեկտիվ պահանջները։ Ազգային և ինտերնացիոնալ շահերի դասակարգային բնույթը դրանց միասնության օբյեկտիվ հիմքն է։

Ազգային և ինտերնացիոնալ խնդիրների զուգակցման անհրաժեշտությունն առաջացել է միջազգային բանվորական շարժման սկզբնավորմամբ։ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը միջազգային բանվորական շարժման մեջ հետևողականորեն կիրառում էին պրոլետարական ինտերնացիոնալիզմի, բանվոր դասակարգի ազգային և ընդհանուր շահերի զուգակցում։ Հանդես գալով 1830 թվականի լեհական ապստամբության 17-րդ տարեդարձին նվիրված Լոնդոնի միջազգային միտինգում, Կ. Մարքսը ասել է. Որպեսզի ժողովուրդները կարո-



ղանան իսկապես միավորվել, նրանք պետք է ընդհանուր շահեր ունենան։ Որպեսզի նրանց շահերը ընդհանուր լինեն, պետք է ոչնչացվեն գոյություն ունեցող սեփականատիրական հարաբերությունները, քանի որ այդ հարաբերությունները պայմանավորում են որոշ ժողովուրդների շահագործում ուրիշների կողմից (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 4, стр. 341)։

Պրոլետարիատի դիկտատուրայի շրջանում աշխատավորների ազգային և
ինտերնացիոնալ շահերի միջև հաստատվեց այնպիսի ամուր կապ, որ ամե-
նևին հնարավոր չէ դրանք բաժանել միմյանցից։ Սովետական իշխանության
հաստատումից հետո ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցումը, կի-
րառվելով սովետական ժողովուրդների տնտեսական, քաղաքական և կուլտու-
րական համագործակցության մեջ, ստացավ ներպետական բնույթ։ Մեր երկրի
ժողովուրդները զարգացման ամենատարբեր մակարդակներում ոտք դրին սո-
ցիալիզմի ուղին։ Սովետական հանրապետությունները սովետական իշխա-
նության առաջին տարիներին արմատապես տարբերվում էին արտադրաուժերի
զարգացման աստիճանով։ Հնարավոր էր նյութական ռեսուրսների բաշխման
երկու եղանակ. 1) յուրաքանչյուր հանրապետություն ընդհանուր պետական
եկամուտներից ստանալու էր այնքան, որքան նյութական արժեքներ էր ստեղ-
ծում. 2) նյութական արժեքները բաշխվելու էին այնպես, որ աստիճանաբար
հաղթահարվեր ժողովրդի ետ մնալը և վարվեր տնտեսական զարգացման մա-
կարդակների հավասարեցման կուրս։ Մեր կուսակցությունն ընտրեց նյութա-
կան բոլոր հիմնական ռեսուրսների կենտրոնացման ուղին և դրանց բաշխման
այնպիսի ձև, որպեսզի բոլոր հանրապետություններում ապահովվի բնակչու-
թյան նյութական դրության միևնույն մակարդակը։
Այդ քաղաքականության շնորհիվ Ռուսաստանի նախկին հետամնաց ժո-
ղովուրդները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, կարողա-
ցան կարճ ժամանակամիջոցում հաղթահարել զարգացման մակարդակների
միջև եղած տարբերությունը. ազգային ծայրամասերում ստեղծվեց ժամանա-
կակից արդյունաբերություն, վերացվեցին ազգային երկպառակությունն ու ան-
վստահությունն ազգերի միջև, հող նախապատրաստվեց նրանց աստիճանական
մերձեցման համար։ «Մի խոսքով,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— լենինյան ազ-
գային քաղաքականության հիման վրա, ամբողջ սովետական ժողովրդի լար-
ված աշխատանքի գնով մենք հասանք այն բանին, որ հին Ռուսաստանի հա-
մար այնքան սովորական հասկացությունը, ինչպիսին է հետամնաց ազգային
ծայրամասը, դադարեց գոյություն ունենալուց» (Լ. Ի. Բրեժնև, Սովետական
Սոցիալիստական Հանրապետությունների Միության 50-ամյակի մասին, Երե-
վան, 1973, էջ 23)։ Սա էլ հենց նշանակում է ազգային և ընդհանուր պրոբլեմ-
ների ճիշտ լուծում։ ՍՍՀՄ 50-ամյակի նախապատրաստության մասին ՍՄԿԿ
Կենտկոմի որոշման մեջ ասված է. «Սովետական բազմազգ պետության կա-
ռուցման փորձը փայլուն կերպով հաստատեց մարքսիզմ-լենինիզմի այն հե-
տևությունները.
որ ազգային հարցը հետևողականորեն կարող է լուծվել հասարակության
սոցիալիստական վերակառուցման բազայի վրա միայն...
որ Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը բազմազգ պե-
տության կառուցվածքի առավել կենսունակ և կատարյալ ձևն է, որն ամբողջ
հասարակության շահերը ներդաշնակորեն զուգորդում է յուրաքանչյուր ազգի
շահերի հետ»։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի շրջանակներում ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցումը շատ բարդ ու դժվարին պրոբլեմ է, որովհետև ազգայինի և ինտերնացիոնալիստականի ներդաշնակումը իրականացվում է ոչ թե մեկ, այլ մի քանի պետությունների բազմակողմանի համագործակցությամբ։ Յուրաքանչյուր պետություն ունի իր տնտեսությունը, ռեսուրսները, վալյուտա-ֆինանսական սիստեմը, պլանավորման օրգանները, ազգային կուլտուրան, պատմական ավանդույթները, որոնք բազմազանություն են մտցնում ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցման ձևերի մեջ։

Այս պրոբլեմի բարդությունը և դժվարությունը նաև այն է, որ, թեև ազգային ու ինտերնացիոնալ շահերն օբյեկտիվ բովանդակություն ունեն, բայց դրանց զուգակցումը հնարավոր է միայն սուբյեկտիվ գործոնի, այսինքն՝ սոցիալիստական երկրների բանվորական և կոմունիստական կուսակցությունների ճիշտ քաղաքականությամբ։ Ինտերնացիոնալիստական քաղաքականության կենտրոնական հարցը Վ. Ի. Լենինը համարում էր «ազգայինի և միջազգայինի ճիշտ զուգորդումը պրոլետարական կուսակցությունների հեղափոխական շարժման բոլոր ջոկատների գործունեության մեջ» (Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ ԿԿ-ի թեզիսները, Երևան, 1970, էջ 53—54)։

Ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցմանը ամենօրյա ուշադրություն են նվիրում սոցիալիստական երկրների եղբայրական կուսակցությունները։ Սոցիալիզմի կառուցման հաջողությունները,— նշել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— մեծապես կախված են հասարակական զարգացման գործում ընդհանուրի և ազգային առանձնահատուկի ճիշտ զուգորդումից։ Այժմ մենք ոչ միայն տեսականորեն գիտենք, այլև գործնականում համոզվել ենք, որ սոցիալիզմի ուղին, նրա գլխավոր գծերը որոշվում են այն ընդհանուր օրինաչափություններով, որոնք հատուկ են սոցիալիստական բոլոր երկրների զարգացմանը։ Մենք գիտենք նաև այն, որ ընդհանուր օրինաչափությունների գործողությունը դրսևորվում է կոնկրետ պատմական պայմաններին, ազգային առանձնահատկություններին համապատասխանող տարբեր ձևերով։ Առանց ընդհանուր օրինաչափությունները և յուրաքանչյուր երկրի կոնկրետ պատմական յուրահատկությունները հաշվի առնելու, անհնար է սոցիալիզմ կառուցել։ Առանց այդ երկու գործոնները հաշվի առնելու անհնար է նաև ճիշտ զարգացնել սոցիալիստական պետությունների հարաբերությունները (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 7)։

Սոցիալիստական երկրների մարքս-լենինյան յուրաքանչյուր կուսակցությունից պահանջվում է այդ պրոբլեմը լուծել այնպես, որ տվյալ երկրի ազգային շահերը չհակադրվեն սոցիալիստական համագործակցության ընդհանուր շահերին։ Անօրինաչափ կլիներ ազգային շահերը մեխանիկորեն անջատել ինտերնացիոնալից։ Կարելի՞ է դրանից եզրակացնել, որ ինտերնացիոնալ շահերը համընկնող ազգային շահերի միջին թվաբանականն են, որ ինտերնացիոնալ շահերը բխում են միատիպ սոցիալ-տնտեսական զարգացման և քաղաքական գործունեության դրսևորման ձևերից ու սոցիալիստական տարբեր երկրների շահերի միահյուսման սինթեզից։ Իհարկե, ո՛չ։ Դա կնշանակեր համաձայնել այն կարծիքին, թե սոցիալիստական համագործակցությունը տարբեր ազգային շահերի ինչ-որ մեխանիկական գումար է։ Այդպիսի մոտեցումը կհակասեր ոչ միայն մարքսիզմ-լենինիզմին, այլև նոր, սոցիալիստական տիպի միջազգային հարաբերությունների զարգացման պրակտիկային։



Ինտերնացիոնալ շահերը ոչ միայն սոցիալիզմի համաշխարհային սիստե-
մի, այլև նրա մեջ մտնող առանձին երկրների շահերն են։ Ամեն մի երկիր
որոշակի չափով համաշխարհային սոցիալիստական սիստեմի ինտերնացիոնալ
շահերի կրող է։ Ընդհանուր շահերը յուրաքանչյուր առանձին դեպքում դրսևոր-
վում են ազգային շահերը պայմանավորող գործոնների պրիզմայի միջով,
դրանք կգործեն երկար ժամանակ և յուրահատկություն կհաղորդեն սոցիալիս-
տական սիստեմի միասնական ինտերնացիոնալ խնդիրների լուծմանը։

Սոցիալիստական համագործակցության երկրների ազգային և ինտերնա-
ցիոնալ շահերը իրենց դասակարգային բնույթով համընկնում են։ Լենինը,
նկատի ունենալով ռուս ժողովրդի ազգային շահերի բարոյական տարրերը,
նշել է. «Վելիկոռուսների ազգային հպարտության շահը (ծառայամտորեն
չհասկացված) զուգադիպում է վելիկոռուս (և բոլոր այլ) պրոլետարների սո-
ցիալիստական շահին» (Երկեր, հ. 21, էջ 122)։ Լենինյան այս դրույթը լրիվին
վերաբերում է սոցիալիստական համագործակցության ազգային և ինտերնա-
ցիոնալ շահերին, որոնք փոխադարձաբար լրացնում են միմյանց, կազմելով
աշխատավորների միասնական շահերը։ Ազգային և ինտերնացիոնալ շահերի
համապատասխանությունը չի նշանակում նրանց լրիվ նույնություն կամ բա-
ցարձակ համապատասխանություն։ Ինտերնացիոնալիստականի և ազգայինի
դիալեկտիկան ենթադրում է նաև այդ փոխադարձ կապի երկու կողմերի ան-
համապատասխանություն, որ հիմնականում կապված է գների սահմանման,
հումքի և վառելիքի մատակարարման, ինվեստիցիոն ֆոնդերի ստեղծման և
աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման պրոբլեմների հետ։
Ազգային և ինտերնացիոնալ շահերի համընկնումը չի ընդգրկում ամեն ման-
րուք ու մասնավոր ասպեկտ։ Անհամապատասխանությունը արգելք չպետք է
դառնա համագործակցության համար։ Ընդհակառակը, մարքս-լենինյան ճիշտ
քաղաքականության պայմաններում, համագործակցության մեջ դրսևորված
անհամապատասխանությունից առաջանում են այն հաղթահարելու նոր ազ-
դակներ։

Ուրեմն, շահերը դիալեկտիկական հակասության մեջ են, որը, ինչպես
ամեն մի հակասություն, ենթադրում է նույնություն և տարբերություն։ Գոյու-
թյուն չունի ոչ զուտ նույնություն, ոչ էլ զուտ տարբերություն։ «... զտության
բուն հասկացությունը,— նշել է Վ. Ի. Լենինը,— մարդկային իմացության
որոշ չափով նեղ և միակողմանի լինելն է. այն իմացության, որը չի ընդգր-
կում երևույթները մինչև վերջ՝ նրանց ամբողջ բարդությամբ» (Երկեր, հ. 21,
էջ 292)։ Ինտերնացիոնալ շահը դրսևորվում է որպես միասնության կրող, իսկ
ազգայինը՝ բազմազանության։ Մ. Վ. Սենինը գտնում է, որ «ազգային և ին-
տերնացիոնալ շահերն ազգի կյանքում և զարգացման մեջ սոցիալիստական
սկզբունքներով հասարակության վերափոխման միևնույն պատմական պրոցե-
սի երկու կողմերն են» (М. В. Сенин. Социалистическая интеграция,
М., 1969, стр. 308)։

Այսպիսով, սոցիալիզմի զարգացման ընթացքում երևում է ինտերնացիո-
նալիստականի և ազգայինի օրգանական կապը։ Ընդհանուր շահերը, վերջի-
վերջո, իրականանում են ազգային շահերի միջոցով։ Վերջիններիս ազդեցու-
թյան տակ ընդհանուր շահերը ձևավորվում և կոնկրետանում են, երևում
իրենց կոնկրետ ազգային ձևի մեջ։ Այստեղից էլ՝ սոցիալիստական երկրների
ազգային և ինտերնացիոնալ շահերի միասնությունը, նրանց դիալեկտիկան։

Մեկի և մյուսի միջև կապը լավ է արտահայտում ընդհանուրի և առանձինի դիալեկտիկական միասնության մարքս-լենինյան հայտնի սկզբունքը։ «...առանձինը,— նշել է Վ. Ի. Լենինը,— գոյություն չունի այլ կերպ, քան այն կապակցությամբ, որը տանում է դեպի ընդհանուրը։ Ընդհանուրը գոյություն ունի միայն առանձինի մեջ, առանձինի միջոցով։ Ամեն մի առանձին (այսպես թե այնպես) ընդհանուր է։ Ամեն մի ընդհանուր առանձինի (մասնիկը կամ կողմը, կամ էությունն) է։ Ամեն մի ընդհանուր միայն մոտավորապես է ընդգրկում բոլոր առանձին առարկաները։ Ամեն մի առանձին ընդհանուրի մեջ մտնում է ոչ լրիվ և այլն, և այլն» (Երկեր, հ. 38, էջ 458)։

Ուրեմն, ամեն մի առանձին շահի մեջ որպես գործոն բովանդակում է ռեալ գոյություն ունեցող ընդհանուրը։ Առանձին շահերը միավորվում են ընդհանուրի օրինաչափությամբ, որի ուսումնասիրությունը անհրաժեշտ է սոցիալիստական երկրների զարգացումը հասկանալու և պրակտիկ ղեկավարման համար։ Հաշվի չառնել սոցիալիստական համագործակցության ընդհանուր շահի դրսևորման առանձնահատկությունն առանձինի, եզակիի մեջ, նշանակում է չտեսնել ռեալ իրականության բազմազանությունը։ Եվ, ընդհակառակը, յուրաքանչյուր սոցիալիստական երկրի շահի մեջ չտեսնել համագործակցության ընդհանուր շահի դրսևորումը, նշանակում է՝ ճիշտ չհասկանալ ազգային շահերը և դրսևորել ազգային սահմանափակություն։ Նման ծայրահեղություններից խուսափելու համար հարկավոր է շահերի զուգակցումը կատարել գիտական հիմքերի վրա։ Զուգակցել առանձին և ընդհանուր շահերը, նշանակում է՝ գիտակցականորեն միասնություն հաստատել ինտերնացիոնալիստականի և ազգայինի, ընդհանուրի և առանձինի, տևականի ու ժամանակավորի, արմատականի և անցողիկի միջև։

Ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցումն ունի մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի բաղկացուցիչ մասերը հանդիսացող մի շարք սկզբունքներ։ Սոցիալիստական միջազգային հարաբերությունների զարգացումը շատ բանով կախված է այդ սկզբունքների հետևողական կիրառումից։ Ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցման սկզբունքները նշված են կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների 1957, 1960 և 1969 թվականների և Վարշավայի պայմանագրի ու ՏՓԽ-ի մասնակից երկրների հաճախակի գումարվող խորհրդակցությունների փաստաթղթերում։ Բայց դա չի նշանակում, որ այդ սկզբունքների մշակումն ավարտվել է։ Շահերի զուգակցման սկզբունքների հարցը կմնա էական, քանի դեռ գոյություն ունի սոցիալիզմի համաշխարհային սիստեմը՝ որպես սուվերեն ազգային պետությունների ինտերնացիոնալ միավորում։

Ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցման սկզբունքներից շատ կարևոր է ինտերնացիոնալ շահերի առաջնությունն ազգայինի նկատմամբ: Այլ կերպ ասած, սա ազգայինի և ինտերնացիոնալի հարաբերակցությունն է։

Սոցիալիզմի անցման ընդհանուր օրինաչափությունների և ազգային առանձնահատկությունների հարաբերակցությամբ է որոշվում նաև սոցիալիստական երկրների ինտերնացիոնալ ու ազգային շահերի հարաբերակցությունը։ Իրականում գոյություն ունի այսպիսի օրինաչափ կապ և պայմանավորվածություն՝ աշխատավորների ազգային շահերի առավելագույն պաշտպանումը կախված է ինտերնացիոնալ շահերի հետևողական իրականացումից։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման մեջ ինտերնացիոնալ գործոնի



նշանակությունն աստիճանաբար և մշտապես աճում է։ Հասկանալի է, դա չի նշանակում, որ ազգային շահերը լրիվ կորցնում են իրենց նշանակությունը։ Զարգացման դիալեկտիկան այստեղ այն է, որ ազգայինի մեջ անխուսափելիորեն ընդարձակվում է ինտերնացիոնալ բովանդակությունը։ Այդ օրինաչափությունն ակնհայտորեն հաստատվում է սոցիալիստական ինտեգրացման պրոցեսի խորացմամբ։ Մեզ համար շատ կարևոր է ինտերնացիոնալ շահերի առաջնությունն ազգայինի նկատմամբ։ Սա էլ ինտերնացիոնալիստականի և ազգայինի հարաբերակցության մարքսիստական ըմբռնումն է։

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմը ժողովուրդներին հոգեպես և բարոյապես բարձրացնում է ազգային շահերի նեղ հորիզոնից և ընդլայնում նրանց զգացմունքների ու պահանջմունքների ընդգրկումը։ «Իր» և «ուրիշի» ըմբռնմամբ սոցիալիստական ինտերնացիոնալիզմն անհատներին, կոլեկտիվներին, քաղաքական կազմակերպություններին և ժողովուրդներին բարձրացնում է միջազգային, համաշխարհային պրոբլեմների գիտական մակարդակին։

Ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցումը պահանջում է իրավահավասարության և սուվերենության սկզբունքի խստիվ կիրառում, որը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի տարրերից մեկն է և այդ քաղաքականության անկապտելի մասը։ Տնտեսական, արտաքին քաղաքական, կուլտուրական և գիտատեխնիկական համագործակցության մեջ, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի կիրառման ընթացքում, հարստանում և զարգանում է ժողովուրդների հավասարության գաղափարը։ Սոցիալիստական երկրների եղբայրական կուսակցությունների բազմաթիվ հանդիպումներում և հայտարարություններում ընդգծվել է, որ սոցիալիստական երկրների փոխհարաբերությունները հենվում են լրիվ հավասարության և տերիտորիալ ամբողջության հարգման վրա։

Ազգայինի և ինտերնացիոնալի պրոբլեմի մեջ բացառիկ մեծ դեր ունի եղբայրական օգնությունը, օգնության և փոխօգնության զուգակցման սկզբունքը:

Սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1957 թ. խորհրդակցության դեկլարացիայում նշված է, որ այնպիսի սկզբունքներ, ինչպիսիք են՝ հավասարությունը, տերիտորիալ ամբողջության հարգումը, պետական սուվերենությունը, չեն սպառում սոցիալիստական երկրների հարաբերությունների ողջ էությունը, «Նրանց փոխհարաբերությունների անկապտելի մասը եղբայրական օգնությունն է»։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման սկզբնական շրջանում օգնողը հիմնականում Սովետական Միությունն էր։ Սոցիալիզմի զարգացման արդի փուլում եղբայրական օգնությունը հիմնվում է փոխադարձության սկզբունքի վրա։

Այժմ սոցիալիստական երկրները ո՛չ միայն ստանում են ՍՍՀՄ օգնությունը, այլև իրենք էլ են օգնում նրան։ Այսպես, օրինակ, Չեխոսլովակիան տալիս է սարքավորումներ՝ շաքարի գործարանների, Հունգարիան՝ պահածոների, Լեհաստանը՝ բետոնի արտադրության, ԳԴՀ-ն՝ էլեկտրալամպերի արտադրության համար։ Փոխօգնության սկզբունքը, համաշխարհային սոցիալիստական սիստեմի շրջանակներում, կարևոր դեր է կատարում կոմունիստական նոր բարոյականության ձևավորման, ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցման գործում։

Ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցումը ենթադրում է օգնություն կապիտալիստական երկրների հեղափոխական պրոլետարիատին և

*Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի ազգային-ազատագրական շարժումներին։ Դա խիստ էական սկզբունք է ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցման, համաշխարհային հեղափոխական պրոցեսի դժվարությունների հաղթահարման համար։ Ազգային անկախության համար պայքարող ժողովուրդներին ցույց տրվող աջակցությունն ու օգնությունը միաժամանակ ինտերնացիոնալ խնդիրների բաղկացուցիչ մասն են։*

*Ազգային և ինտերնացիոնալ շահերի գիտականորեն հիմնավորված զուգակցումը սոցիալիզմի համաշխարհային սիստեմում բխում է դրանց օբյեկտիվ, դասակարգային, պատմական էությունից, սիստեմի ռեալ պահանջներից։ Դասակարգային մոտեցումն օգնում է սոցիալիստական երկրների մարքս-լենինյան կուսակցություններին՝ հաջողությամբ պայքարելու լենինիզմի գաղափարներին խորթ երևույթների, ազգային շահերի բացարձակացման տենդենցների դեմ։*

*ՍՍՀՄ հիսնամյակի մասին զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշել է. «Այդ աշխատանքի ընթացքում մենք սովորեցինք գտնել յուրաքանչյուրի շահերի և ընդհանուր շահերի ճիշտ զուգակցումը, սովորեցինք համագործակցել՝ մեր ճանապարհից վերացնելով այն ամենը, ինչ կարող է խանգարել, կարող է դժվարացնել ընդհանուր առաջընթացը»։*

*Ինտերնացիոնալիստականի և ազգայինի ճիշտ զուգակցումը ձեռք է բերվել և բերվում է ռևիզիոնիզմի ու դոգմատիզմի դեմ մղվող պայքարում։*

*Այսպիսով, ազգային և ինտերնացիոնալ շահերի ներդաշնակ զուգակցումը յուրաքանչյուր սոցիալիստական երկրի առաջընթացի և ամբողջ սիստեմի զարգացման ու միասնության երաշխիքն է։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, ինչպես Լ. Ի. Բրեժնևն է ասում՝ «զոդված է նպատակների ու աշխարհայացքի ընդհանրությամբ։ Նրա նպատակն է կոմունիզմը, աշխարհայացքի հիմքը՝ մարքսիզմ-լենինիզմը»։*

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԿՈԼԵԿՏԻՎԻ ԴԺՎԱՐԻՆ ՈՒՂԻՆԵՐՈՎ

**Ս. Գ. ԱԴՈՅԱՆ**



## I

Թարգմանություն կոչված իրողությունը նույնքան հին է, որքան տարբեր լեզուների գոյությունը մեր երկրագնդի վրա։ Հայտնի է պատմությունից, որ բոլոր ժողովուրդների, անգամ հեռավոր դարերի կենսագործունեության ոլորտում, բանավոր խոսքի թարգմանությունը էական դեր է խաղացել նրանց զարգացման գործում։ Սակայն մարդկային պրակտիկայից հարուցված հաղորդակցման այդ ձևն սկսեց ավելի ներգործուն դառնալ, երբ ժողովուրդներն իրենց գիրն ու գրականությունն ստեղծեցին։ Գրավոր աղբյուրների թարգմանությամբ ժողովուրդների, ազգերի հաղորդակցման, նրանց հոգևոր հարստությունների փոխանակման գործը դարձավ յուրաքանչյուր սոցիալական հանրության առաջընթացի կարևոր և անհրաժեշտ մասը։ Մարդկային կուլտուրայի դարավոր վերընթացում թարգմանական արվեստը բացառիկ առաջավոր դեր է խաղացել ու շարունակում է խաղալ։

Թարգմանական գործի վիթխարի մասշտաբներով ծավալումը մեր ապրած դարում հանգեցրեց նրան, որ այսօր արդեն մարդկությունն ունի ուրույն գիտություն՝ թարգմանաբանություն։ Հասարակության տնտեսա-տեխնիկական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական կապերի անօրինակ զարգացումը մեր օրերում անհնարին է պատկերացնել առանց թարգմանության արվեստի առաջխաղացման։ Պետությունների, ազգամիջյան բազմաթիվ կազմակերպությունների, առևտրի, տուրիզմի նորմալ գործունեությունը քսաներորդ դարում անվերջ ընդլայնում է ինֆորմացիայի՝ հատկապես թարգմանական գործի շրջանակները։ Յունեսկոյի ոչ լրիվ տվյալներով, այժմ աշխարհում լույս է տեսնում (տարում) 40.000 թարգմանված գիրք, օրը 100 գրքից ավելի։ Թարգմանական գրականության թափն ու ծավալը ՍՍՀՄ-ում միայն բավական է՝ պատկերացնելու այդ կուլտուրայի խոշորագույն դերը մեր առօրյա կյանքում։ Այս առումով նշանակալի են նաև Հայկական ՍՍՀ հասումները թարգմանական գրականության բնագավառում։

Սովետական կարգերի հաստատման օրից ի վեր թարգմանական գործը դարձավ նոր կյանքի ստեղծման հուժկու լծակներից մեկը։ Այս իմաստով ՍՍՀՄ ժողովուրդների ավելի քան կեսդարյա բարեկամության կռումն ու կոփումն օրգանապես զոդված են ռուսաց լեզվից կատարված թարգմանական հսկայածավալ գրականության հետ։ Աշխարհի հազարավոր ժողովուրդների հաղորդակցման այդ անգնահատելի գործոնը շատ է օգնել մեր աշխատավորությանը՝ ետ չմնալու մարդկության առաջընթացից։

Մարքսի, Էնգելսի, Լենինի երկերի մայրենի լեզվով և մասսայական հրա-

տարակումը սովետական դարաշրջանում հանդիսացավ սոցիալիստական հասարակության ստեղծման անփոխարինելի գործոններից մեկը: Մի գործոն, որն իր գաղափարական վեհությամբ ու պայծառությամբ տոգորելով հանրապետության համակ աշխատավորության ներաշխարհը, անմար լույսերով ողողեց կոմունիզմի մեր ուղին:

Հիրավի, անգնահատելի դեր կատարեցին այն թարգմանիչները, ովքեր, հետևելով Ս. Շահումյանի և մյուս երևելի կոմունիստների թարգմանչական պրակտիկային, իրենց նվիրեցին մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների երկերի հայացման դժվարին, տառապալի, բայց և հույժ պատվաբեր գործին: Այժմ հպարտությամբ է լցվում մեր հոգին, երբ ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների գրադարաններում Մարքսի, Էնգելսի, Լենինի բազմալեզու աշխատությունների կողքին կան ու միշտ կմնան նաև նրանց հայերեն ծանրակշիռ հատորները:

Ուրախալի է, որ ՄԼԻ հայկական ֆիլիալն արժանացավ կառավարական բարձր պարգևի՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանի: ՄԼԻ հայկական ֆիլիալի աշխատակիցները (որոնց առաջին սերնդի մեծագույն մասը, ցավոք, կենդանի չէ), նոր կյանքի այդ համեստ մշակները, հիրավի, ստեղծարար աշխատանքով վաստակեցին այդ պատվաբեր պարգևը: Եվ ահա նրանց գործունեության այս եռուն օրերին, երբ ձեռնարկված է Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուի հայերեն հրատարակման գործը, կուզենայինք մի քանի խոսք ասել այդ առթիվ:

Տակավին Դ. Դիդրոյի խմբագրած **Հանրագիտարանում** բանաձևված է թարգմանչին ներկայացվող պահանջը. **այնպես հաղորդել հեղինակի միտքը, որ կարծյոք այն արտահայտված է թարգմանվող լեզվով:** Որևէ տեքստի բառացի թարգմանությունը խեղում է միտքը, ոճը, լեզուն, կերպարը, էմոցիան և այլն: Ստացվում է այն, ինչ Ֆ. Էնգելսն է մի առիթով նկատել՝ գերմանական միտք, անգլիական անհեթեթությամբ: Հետևաբար, բառացի թարգմանությունը, որը մատնում է թարգմանչի անկարողությունը, այս կամ այն չափով խեղում է ամբողջությունը, աղավաղում բնագիրը՝ հանուն կարծեցյալ կամ առերևույթ ճշգրտության:

Բարձրորակ թարգմանության համար բավական չէ, որ թարգմանողը լավ տիրապետի երկու լեզվին: Նա պետք է խորապես ըմբռնած լինի հեղինակի աշխատության **գաղափարական իմաստը,** նրա **մտահղացման** սոցիալ-քաղաքական **միտումը:** Եթե թարգմանիչը չի **վերապրում** հեղինակի մտքերի ու հույզերի ներաշխարհը, չգիտե հեղինակի գեթ **գլխավոր երկերը,** ապա թարգմանությունը լիարժեք չի լինի: Բայց չէ՛ որ թարգմանչի գլխավոր խնդիրը մայրենի լեզվով թարգմանված համարժեք երկի **ստեղծումն է:** Այո՛, ստեղծումը, հոգեմա՛շ ստեղծումը: Իսկ սա նշանակում է, որ պետք է հոգալ ոչ միայն երկի բովանդակության ճշմարտացիության, այլև բնագրի ոճի պահպանման համար: Ո՛չ թե փետիշացնել հեղինակի լեզվական կառուցվածքն իր յուրահատուկ ատաղձով, ոչ թե այն հնամենիացնել կամ մոդեռնացնել, այլ հավատարիմ մնալ հեղինակի գրածի **ոգուն,** այսինքն՝ չանտեսել նրա ապրած ժամանակի պատմական իրականությունը:

Խույս տալով թվացող ճշգրտությունից (բառացիությունից) և կամայականությունից, թարգմանիչը կոչված է լիովին դրսևորելու իր **վարպետությունը,** որի միակ չափանիշը խոսքից **օգտվելու կարողությունն** է: Մի հանգամանք, որը պահանջում է ոչ միայն լեզվի կանոնների հարմոնիայի քաջ իմացություն, այլև թարգմանության գլխավոր զենքի՝ լեզվի հաստատուն տիրապետում: Խոր գիտակցելով, որ տվյալ երկը հեղինակի աշխարհն է՝ իր մտային, զգայական, կուլտուրական, հոգեբանական հազար ու մի նրբերանգներով, սովետական թարգմանիչը չի մոռանում նաև, որ իր աշխատանքը գերազանցապես **ստեղծագործական է,** ապա, ուրեմն, մայրենի լեզվական մշակույթի բոլոր հնարավորությունների, նրա արտահայտչաձևերի ու եղանակների օգտագործումն իր պարտքն է համարում: Ո՛չ միայն կատարյալ գործիմացություն, այլև **հոգևոր ներշնչում** է պետք թարգմանելիս: Միայն այս դեպքում է հնարավոր դրսևորել սեփական էնցիկլոպեդիզմը, ոճի ընկալման հնարը, բայց



և թարգմանիչը ստեղծագործական ազատությունից օգտվելիս չպետք է չարաշահի այն՝ ի վնաս բնագրի:

Այս հանգամանքը կարևոր է թեկուզ այն առումով, որ Մարքսի, Էնգելսի, Լենինի երկերը տոգորված են կրքոտությամբ, բանավեճայնությամբ, գրելաձևի ու ոճային իրենց հատուկ հնարքներով: Ահա թե ինչու Ֆ. Էնգելսը գրել է Է. Բեռնշտայնին Կ. Մարքսի՝ **Փիլիսոփայության աղքատության** թարգմանության մասին. «Առաջին մամուլում ջանալով ճշգրիտ ու համարժեքաբար հաղորդել իմաստը, Դուք փոքր-ինչ անտեսել եք ոճը— միայն այդքանը: Ընդ որում, կցանկանայի, որ թարգմանության մեջ պահպանեիք Ձեզ համար Մարքսի անսովոր ոճը, որով և բացատրվում են արված բազմաթիվ շտկումները» (К. Маркс и Ф. Энгельс. Соч. т. 36. стр. 85): Խմբագիր Էնգելսի այս կարևոր ցուցումը մեզ համար շատ ուսանելի է:

Պատահական չէ, որ նա մեծ ափսոսանք է հայտնել **Կապիտալի** ֆրանսերեն առաջին հատորի՝ գործարանային օրենսդրությանը նվիրված հատվածի անհաջող թարգմանության վերաբերյալ: «Խորապես հարգելով ֆրանսիական նուրբ լեզվով թարգմանված արվեստը,— գրել է նա Մարքսին,— համենայն դեպս ափսոսում եմ սքանչելի այդ գլուխը: Կորովը, կյանքն ու հյութեղությունը, բոլորը սուզվել են գրողի ծոցը: Սովորական գրողի համար պատշաճ ընդբությամբ սեփական մտքերի արտահայտումը հատուցվում է լեզվի ամորձատմամբ» (Соч. т. 33, стр. 81—82):

Ի՞նչ է հետևում վերոհիշյալից. որևէ երկ թարգմանելիս, խմբագրելիս կամ քննադատելիս Մարքսը, Էնգելսը, Լենինը, լեզուն համարելով **«մտքի անմիջական իրականություն»,** միաժամանակ մեծ ուշադրություն էին հատկացնում դրա հստակությանը, մատչելիությանը, ինչպես և ոճի հարցերին: Այս դեպքում նրանք պահանջում էին նաև չխափանել տվյալ երկի ընթեռնման էսթետիկական հաճույքը:

Հայտնի է, որ Լենինը տակավին երիտասարդ տարիներին մի շարք երկեր է թարգմանել անգլերենից, գերմաներենից, ֆրանսերենից: Ափսո՜ս որ մինչև օրս չի գտնված նրա թարգմանած **Կոմունիստական կուսակցության մանիֆեստը:** Թարգմանության հարցերում նա միշտ դրսևորել է կատարյալ խստապահանջություն: Պատահական չէ, որ **Պետություն և հեղափոխություն** աշխատության նախաբանում շեշտում է, որ գերմանական բնագրերից ցիտատներն ինքն է թարգմանում, որովհետև եղած թարգմանությունները մեծ մասամբ «կամ թերի են, կամ ծայր աստիճան վատ են թարգմանված»: **Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, Ագրարային հարցը և «Մարքսի քննադատները»** և այլ աշխատություններում Լենինը բազմիցս մերկացրել է մարքսիզմի գաղափարական հակառակորդներին, ապացուցելով, որ նրանք ոչ միայն խեղաթյուրում են Մարքսին, այլև լեզվի վատ իմացությամբ, աղաղակող սխալներով են թարգմանում վերջինիս մտքերը:

Կողմնակից լինելով թարգմանության **իմաստայնությանը,** բնագրի հարազատությանը, այլ ոչ բառացի փոխադրությանը, Լենինը քանիցս սեփական թարգմանությամբ և ցայտուն օրինակներով ապացուցել է իր հայացքների ճշմարտացիությունը: Օրինակ, **Անքննադատ քննադատը** երկում նա առարկում է Պ. Սկվորցովին այն առթիվ, որ սա անհիմն իրեն մեղադրել է Մարքսի **Կապիտալից** ոչ ճիշտ թարգմանելու համար: Լենինի մոտ կարդում ենք. «Պ. Սկվորցովը պնդում է, թե ես չեմ «հասկացել» Մարքսին, ինձ խիստ հանդիմանում է «ազատ թարգմանության» համար, «անհրաժեշտ է» համարում «մանրամասնորեն մեջբերումներ անել **Կապիտալից** (ըստ որում մեջբերումներում ասվում է հենց այն, ինչ ես եմ շարադրել...), թե ինչով է տարբերվում իմ ասածն այն բանից, ինչ ասվում է Մարքսից բերված քաղվածքների մեջ— այդ՝ անեղ քննադատի գաղտնիքն է մնում: Պարզ է միայն, որ իմ մահացու մեղքն «ազատ թարգմանությունն» է կամ այն, երևի, որ ես Մարքսին «իմ խոսքերով» եմ շարադրում, ինչպես Պ. Սկվորցովն արտահայտվում է հոդվածի մի այլ տեղում: Մտածե՜ք միայն. շարադրում է Մարքսին «ի՜ր խոսքերով» (հատ. 3, էջ 797, 798):

Այս առնչությամբ Լենինը վկայակոչում է Սկվորցովի թարգմանության մի քանի նմուշներ, որոնք ակնբախորեն աղճատել են հարցի մարքսիստական ըմբռնումը և այդպիսով հեղինակին դրել աննախանձելի վիճակում: Դրա համար Լենինը դառը սարկազմով նրան խորհուրդ է տալիս «...պատենտ վերցնել՝ «գիտական քննադատության» ամենանոր և ամենահեշտ եղանակի համար, որն արմատից ոչնչացնում է հակառակորդին» (նույն տեղը, էջ 807):

Բնորոշ է, որ թարգմանիչ Լենինն այլ լեզուներից վկայակոչած առածները, թևավոր խոսքերը, աֆորիզմները թարգմանել է ռուսերեն, հարազատ մնալով մայրենի լեզվի ուժին ու գեղեցկությանը, խույս տալով արտասահմանյան բառերն անհարկի գործածելուց:

Մարքսիզմ-լենինիզմի դասականները խստապահանջ էին բոլոր նրանց նկատմամբ, ովքեր թարգմանական մեծարժեք արվեստը վերածում էին արհեստի և հաճախ աղճատում բնագիրը: Բնագրի ճիշտ ու **համակողմանի** իմացություն, իմացություն խորապես, այլ ոչ մակերեսորեն: Թարգմանվող աշխատության քաղաքական նկրտումի, որոշիչ հասկացությունների հստակ ըմբռնում, երկու լեզուների կենդանի նրբերանգների ու զանազանությունների նըշմարում ու հեղինակի ոճի պահպանում: Սույն հատկանիշներով օժտված պետք է լինեն և Լենինի Երկերի այսօրվա թարգմանիչն ու խմբագիրը: Եթե Էնգելսը պահանջում էր Մարքսին թարգմանողներից. «Արտահայտչական գերմանական լեզուն հաղորդել արտահայտչական անգլերենով», ապա «նոր ստեղծված գերմանական տերմինները պահանջում են ստեղծել անգլիական նոր տերմիններ» (Соч. т. 21, стр. 238): Ուստի, մնում է պահանջել Լենինի թարգմանչից ու խմբագրից. մեզ տվեք **հայերեն** Լենին, որն իսկապես բնագրի համարժեքը լինի:

## II

Պրակտիկան ասում է, որ թարգմանիչներին ու խմբագիրներին չի մտահոգում թարգմանվող երկի ծավալի հարցը: Մինչդեռ սա էական է: Լեզվական շռայլումները, որոնք ճապաղեցնում են մեր լեզուն, թարգմանվող երկի ծավալի ընդարձակման պատճառներից են: Մինչդեռ, եթե օգտվենք մեր լեզվի առավելություններից, դրական արդյունքներ կստանանք: Օրինակ, փոխանակ օգնություն ցույց տալ, ասենք՝ օգնել, պարզաբանում տալ՝ պարզաբանել, դիմադրություն ցույց տալ՝ դիմադրել: Լենինի մի հատորից առնված այս երեք օրինակները կազմված են ընդամենը 53 տառերից: Իսկ մեր առաջարկը կիրառելիս պետք է շարել միայն 23 տառ: Մի՞թե քիչ բան է ավելի քան երկու անգամ խնայել աշխատանքն ու թուղթը: Սա մեզ հնարավորություն կընձեռի նաև պահպանել կազմված հատորի արտաքին հաճելի տեսքը:

Սխալված չենք լինի, եթե ասենք, թե Լենինի Երկերի լիակատար ժողովածուների հրատարակության գործն այսօր զերծ չէ դժվարություններից: Բանն այն է, որ լույս տեսած հատորները (45) և դրանց մեջ ամփոփված հեղինակի տարբեր երկերը, **թարգմանչական արվեստի մակարդակով, ոճով, զանազանվում են: Չափալեզվական ատաղձով** միմյանցից ակներևաբար **զանազանվում են:** Չափազանցություն թող չհամարվի մեր պնդումն այն մասին, որ մի շարք թարգմանություններ **անհաջող են** և հաճախ բնագիրն է միայն օգնում ճիշտ ընթերցելու թարգմանությունը:

Հետևաբար, Լենինի տպագրության հանձնվող յուրաքանչյուր հատոր սկզբից մինչև վերջ պետք է համեմատվի բնագրի հետ, ոչ միայն աղավաղումները ու սխալները շտկելու, հեղինակի ոճն ու լեզուն վերականգնելու, այլև ողջ երկը ընթերցողին մատուցելու **իրոք հայերեն մտածելակերպով, կենդանի հայերենով:** Օրինակ, Լենինին ճիշտ ըմբռնող խմբագիրը կամ թարգմանիչը չպետք է հանդուրժեն, որ հեղինակի՝ посоленном шуточками արտահայտությունը թարգմանվի «աղոտված ձևով կատակներով», այլ ասվի կծու կատակներով: Հարցի էությունը հասկացող խմբագիրը Լենինի крепостники за работой փոխանակ թարգմանելու՝ «Ճորտատերերն աշխատանքի են», կասի «Ճորտատերերը գործում են»: Դժվար է հավատալ, որ Լենինի «успели умереть-ը



թարգմանվել է՝ «կարողացան մեռնել» կամ «тут что-то не так»-ը պետք է թարգմանվի՝ ինչ-որ մի բան այդպես չէ և ոչ թե՝ «այստեղ ինչ-որ այդպես չէ» և այլն: Նախադասության աղն այդ **բանն** է, այլ ոչ թե անդեմ որ-ը: Կոնկրետ օրինակները բերված են աղյուսակներում:

Հայտնի է, որ հայոց լեզուն ունի պայքար, կռիվ, պատերազմ բառերը, որոնք իրենց բովանդակությամբ իրարից տարբեր են: Լենինի՝ Все на борьбу с Деникиным, թարգմանված է՝ «Բոլորը դեպի պայքար Դենիկինի դեմ»: Մինչ, մեզ թվում է, որ այն կարելի է արտահայտել և այսպես՝ «Բոլորս ի զե՛ն, ընդդեմ Դենիկինի», կամ թե՝ «Բոլորս կռվի ելնենք Դենիկինի դեմ»: Սա, անշուշտ, պատմականորեն ու տրամաբանորեն առնչվում է քաղաքացիական կռվի, որպես պատմական իրողության հետ: Այստեղ, կարծյոք, «պայքար» չպիտի գործածվի:

Հարկ է նկատել, որ անհաջող թարգմանությունը համեմատաբար դժվար է խմբագրել և ժամանակի խնայողության առումով առավել լավը նոր թարգմանությունն է:

Ավելորդ չենք համարում շեշտել, որ դժվար է լինելու թարգմանչի ու խըմբագրի ընտրության գործը, եթե միակ չափանիշը չլինի՝ **մտավոր կարողությունը, լեզվական կուլտուրան:** Ձևական կամ «պաշտոնական» մոտեցումն այս դեպքում հղի է մեծ կորուստներով:

Ցավոք, տարիներ են անցել, բայց հրապարակի վրա չկա մի ծանրակշիռ գիրք կամ բրոշյուր, որում ըստ արժանվույն վերլուծված, համակարգված ու դրվատված լիներ ՄԼԻ հայկական ֆիլիալի համեստ կոլեկտիվի անգնահատելի, սակայն դժվարին ու արգասավոր գործունեությունը՝ մարքսիզմ-լենինիզմի կլասիկների վիթխարի ժառանգության թարգմանության մարզում: Չգիտես ինչո՞ւ ՄԼԻ հայկական ֆիլիալի որևէ աշխատակից երբևէ չի փորձել համակողմանի մի ուսումնասիրությամբ, գեթ հիմնական թեզերով մեզ պատմել այն դարակազմիկ ու արմատական առաջընթացի մասին, որը կատարել է հայ ժողովրդի հոգևոր կյանքում Մարքսի, Էնգելսի ու Լենինի երկերի հայերեն երկաբույլը:

Լավ է, երբ մեր գիտնականները համառորեն և **իրավամբ** ուսումնասիրում են **հեռավոր դարերում հայերեն թարգմանված** շատ երկեր, արժեքավորում դրանց դերն ու տեղը կուլտուրայի անդաստանում: Վերջերս լույս տեսավ **Հայոց լեզվի զարգացումը սովետական շրջանում** մեծարժեք կոլեկտիվ աշխատությունը, որում գիտականորեն արտացոլված է Սովետական Հայաստանի լեզվական մշակույթի հարուստ աշխարհը: Բայց արժեքավոր այս երկասիրությունը չի անդրադարձել մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների կես դարից ավելի կուտակված հարուստ գրականության լեզվաշինարարության և **ոչ մի հարցի:** Սա, հարկավ, բնորոշ վրիպում է:

Այստեղ շնորհակալ ու տևական աշխատանք է սպասում ոչ միայն լեզվագետներին, այլև ՄԼԻ աշխատողներին: Տասնյակ մարդկանց համար (տարբեր առումներով) ուսումնասիրության ու դիսերտացիայի անսպառ նյութ կա մարքսիզմ-լենինիզմի կլասիկների հայերեն երկերի ուսումնասիրության մարզում:

Մենք չգիտենք թե ՄԼԻ հանրապետական ֆիլիալը ինչպիսի լուրջ և գործնական միջոցառումներով է մտադիր հասնելու այն բանին, որ թարգմանության ու խմբագրման աշխատանքները, տերմիններն ունենան միասնական մեկ սիստեմ, մեկ կայուն ելակետ: Եթե առ այսօր ֆիլիալն ունի դրա համար որևէ գրավոր և համոզիչ ուղեցույց, ապա գործն իրոք կշահի: Իսկ եթե Լենինի հայերեն երկերում պետք է մնա ոճի, լեզվի կառուցվածքի, տերմինների արդի խայտաբղետությունը, դա կվնասի գործին:

Լենինի **Փիլիսոփայական տետրերի** թարգմանությունն ու խմբագրությունը, իրոք, ստեղծագործական հասում է, որը ձեռք է բերվել մի խումբ մարդկանց արգասալի ջանքերով: Չնայած դրան, այս հատորում (38) ևս ակնբախ են խմբագրական մեկ ոճի ու կամքի բացակայությունը, բառացի թարգմանության տաղտուկը և նույնիսկ՝ գրական անփութությունը:

Բացում ենք 38-րդ հատորն իր ընդհանուր վերնագրով՝ **Փիլիսոփայական տետրեր**, իսկ առաջաբանում ասված է. **Փիլիսոփայական տետրակներ**: Այսպես է և XVI էջում, իսկ մինչ այդ՝ **Փիլիսոփայական տետրեր**, որն ավելի ճիշտ է: Ինչո՞ւ ասենք «լենինյան կոնսպեկտներին է **հարում...** հանճարեղ փրագմենտը...» (հ. 38, էջ XIII): Եթե ասենք՝ կոնսպեկտներից է Լենինի հանճարեղ փրագմենտը, սխա՞լ է: Այստեղ կարդում ենք. «ծավալով ոչ մեծ այդ փրագմենտը իրենից ներկայացնում է մտքերի խորությամբ և հարստությամբ անգերազանցելի մի ընդհանրացում այն ամենի գլխավորի ու էականի, ինչը կազմում է մատերիալիստական դիալեկտիկայի բովանդակությունը (էջ XIII): Արդյոք ավելի լավ չէ՞ հետևյալ կերպ՝ փոքրածավալ այդ փրագմենտը մատերիալիստական դիալեկտիկայի գլխավոր ու էական բովանդակության խոր և հարուստ մտքերի անգերազանցելի մի ընդհանրացում է: Թվում է, թե հայերեն այսպես պետք է գրել: Չասենք Վունդը **ուժգնորեն ընդգծում** է (էջ 641), այլ՝ **շեշտում է**: «Չի կարող բանվորական ուժի համար կիրառում գտնել» (էջ 640) նախադասությունը հայերեն չէ. ճիշտ կլինի՝ չի կարող բանվորական ուժը գործադրել: Այս մի քանի բառում խնայեցինք 9 տպանիշ, որը մեծ բան է: Հայերեն չէ՝ մենք՝ մեզ թույլ ենք տալիս չխորանալու (641): Պետք է ասվի՝ չենք ուզում խորանալ. խնայվեց 13 տպանիշ ևս: Չասենք՝ ընկնել նախ, հույժ ցավալի սխալի մեջ (625), այլ պարզունակ և հույժ ցավալի սխալ կատարել: Անհաջող է թխված **հրամանատարող** դասակարգեր տողը (627), ասենք՝ հրամայող, թելադրող: Փոխանակ գրելու հատորի մեջ մտել են (IX), գրենք՝ զետեղվել են: Մեր կարծիքով, ճիշտ չէ ասել՝ «Փիլիսոփայական տետրերը **ներթափանցված են** ստեղծագործական **մոտեցմամբ** դեպի մարքսիզմի փիլիսոփայությունը... (XI): Ավելի ճիշտը սա է. **Փիլիսոփայական տետրերը** տոգորված են մարքսիզմի փիլիսոփայության նկատմամբ հեղինակին հատուկ ստեղծարար ոգով: Խոստովանենք, որ **պրոլետարիատի մեջ մարդը կորցրել է ինքն իրեն** (XII) անհաջող է: Գուցե ասվի՝ հանձին պրոլետարիատի մարդն ինքնիրեն է կորցրել: Ճապաղ չէ՞ ասված՝ «ոչ զգայությունների **միջոցով**, ոչ սովորական մտածողության միջոցով» (629): Ո՛չ զգայություններով, ո՛չ սովորական մտածողությամբ, թերևս ավելի ճիշտ է: Իդեալիստական **համակրություններ** և ոչ թե՝ **համակրանքներ** (640): Ո՛չ թե պատմության **մեջ** դրվեց այն հռչակավոր հարցը (628), այլ՝ առաջադրվեց. հարուցվեց, արծարծվեց հարցը:

Վերևում արդեն ասացինք, որ բառացի թարգմանությունը պետք է մերժվի, որովհետև այն հեղինակի գործը ներկայացնում է ընթերցողին աղարտված, հաճախ իմաստազրկված: Ստորև բերված մի քանի օրինակները (Վ. Ի. Լենինի Երկերի 4, 5, 8, 22, 44 հատորներից) հավանաբար կհաստատեն մեր հետևությունը և մասամբ կօգնեն այդ գործը վարողներին՝ առավել բարձր մակարդակով կատարելու Լենինի երկերի հայերեն թարգմանությունը: Գուցե հարկավոր լինի կատարելագործելու նաև նրա երկերի 15 վերնագրերը, որոնք հիշատակվում են ստորև հրապարակվող աղյուսակում: Կարծում ենք այսուհետև կարելի է ընթերցողին մատուցել այնպիսի թարգմանություններ, որով մարդկանց չհարկադրեն «անցնել պղնձյա խողովակներով», լսել «աղոտված սրախոսություններ», «զոհեր դնել բանվոր դասակարգի վրա», Վիտեի «Զեկուցագիրը» վերագրել մեկ այլ հեղինակի, «պրիմներ կառուցել» և այլն: Ի դեպ, ավելորդ չենք համարում ընդգծել, որ Լենինի հատորներում անհարկի գործածված են օտար տերմիններ, որոնց համարժեքները վաղուց կիրառվում են հայերենում:

Չենք տարակուսում, որ գործին մասնակից շատ ընկերներ կառարկեն մեր թարգմանություններին: Սակայն համոզված ենք, որ նրանք համամիտ կլինեն այն մտքին, թե Լենինի Երկերի լիակատար հրատարակման գործը դժվարին է, քան թվում է ոմանց: Մեր ասելիքն այն է, որ այժմ սովետական ըն-



թերցողը կուզենա կարդալ Լենինին **իրոք կենդանի**, իսկապես հյութեղ, լիովին տրամաբանված և կուռ հայերենով: Սա այն վեհ գործն է, ուր ինքնագործունեությունը հանդուրժելի չէ, ուր պահանջվում է աշխատողների համագործակցություն, ուր պետք է դրսևորվի հայոց լեզվի ուժն ու գեղեցկությունը:

Մերկախոս չլինելու համար Լենինի հայերեն հատորներից վկայակոչում ենք սխալ, անհաջող թարգմանությունների մի շարք օրինակներ (տես առաջին աղյուսակը): Երկրորդ աղյուսակը բովանդակում է նրա աշխատությունների վերնագրերը, որոնք, մեր կարծիքով, կարոտ են թարգմանական մշակման:

Սյունակ առաջին

| Բնագիր | Թարգմանված է | Թերևս թարգմանել |
|---|---|---|
| «Крепостники за работой» (т. 5, стр. VII). | *Ճորտատերերն աշխատանքի են (հ. 5, էջ 9):* | *Ճորտատերերը գործում են.* |
| ...возлагает на рабочий класс бесчисленные жертвы (стр. 13). | *անհամար զոհեր է դնում բանվոր դասակարգի վրա (էջ 26).* | *անթիվ զոհեր է խլում բանվոր դասակարգից.* |
| ...порождаемых отвратительными условиями труда, нищенской обстановкой жилищ, недостатком отдыха (т. 5, стр. 13). | *որոնք առաջացնում են աշխատանքի զզվելի պայմաններից, բնակարանների մուրացկանային կահավորումից, հանգստի պակասությունից (հ. 5, էջ 26).* | *որոնք առաջանում են աշխատանքի զզվելի պայմաններից, բնակարանների աղքատիկ կահավորումից, հանգստի պակասությունից.* |
| ...прошло, можно сказать, огонь и воду и медные трубы (стр. 28). | *անցել էր, կարելի է ասել, կրակից ու ջրից և պղնձե խողովակներից (էջ 47).* | *կարելի է ասել, անցել էր հրից ու սրից և դաժան փորձություններից.* |
| «Несомненно,— пишет автор «Записки» Витте (стр. 39). | *«Անկասկած է,— գրում է Վիտեի «Զեկուցագրի» հեղինակը (էջ 62—63).* | *Անկասկած է,— գրում է «Զեկուցագրի» հեղինակ Վիտեն.* |
| ...даст революционной пропаганде огромный козырь (стр. 52). | *ռևոլյուցիոն պրոպագանդին հսկայական հաղթաթուղթ կտա (էջ 81).* | *հեղափոխական պրոպագանդայի համար վիթխարի կովան կլինի.* |
| Рабочие волнения (стр. 66). | *Բանվորական հուզմունքները (էջ 101).* | *Բանվորական հուզումները, խլրտումները.* |
| ...удалось отклонить от себя (стр. 96). | *հաջողվեց իրենից վերացնել (էջ 142).* | *հաջողվեց վանել իրենից.* |
| ...«потерпели крушение» (стр. 141). | *փլուզում կրեցին (էջ 206).* | *խորտակվեցին, փլուզվեցին.* |
| ...ухудшилось и содержание скота (стр. 186). | *վատթարացել է նաև անասունների պահվածքը (էջ 271).* | *վատացել է և անասնախնամքը.* |
| ...отрицать не решается (стр 189). | *ժխտել չի վստահանում (էջ 276).* | *չի համարձակվում ժխտել.* |
| ...не подлежат ...сомнению (стр. 192). | *տարակույսից դուրս են (էջ 279).* | *անտարակուսելի են.* |

| | | |
|---|---|---|
| ...раньше еще, чем этот закон успел войти в действие (стр. 212). | *ավելի վաղ, քան այս օրենքը գործադրության մեջ կմտներ (էջ 309).* | *այս օրենքը գործադրվելուց առաջ.* |
| ...дают чиновникам право подвергать рабочих аресту **до трех дней без особого судебного производства**, за нарушение тишины (стр. 225). | *չինովնիկներին իրավունք են տալիս կալանքի տակ առնել բանվորներին* **մինչև երեք օր առանց առանձին դատավարության ճանապարհը** *խանգարելու (էջ 325).* | *չինովնիկներին իրավունք են տալիս անդորրը խանգարելու համար բանվորներին մինչև երեք օր կալանել՝ առանց հատուկ դատավարության.* |
| ...многие свидетели успели умереть (стр. 257). | *շատ վկաներ կարողացան մեռնել (էջ 371).* | *վկաներից շատերն արդեն մեռել էին.* |
| ...посоленном шуточками и прибауточками виде (стр. 285). | *կատակներով և սրախոսություններով աղոտած ձևով (էջ 413).* | *կծու կատակներով ու սրախոսություններով.* |
| ...получившие почти что монополию на «разнос» марксизма (стр. 335). | *մոնոպոլիա ստացան մարքսիզմի «մանրածախով» զբաղվելու (էջ 478).* | *գրեթե մենաշնորհ ստացան մարքսիզմը «քամուն տալու».* |
| Мы вернемся еще к этому ниже (стр. 353). | *Մենք դեռևս կդառնանք դրան ստորև (էջ 504).* | *ստորև դեռ կանդրադառնանք դրան.* |
| Строить новую дисциплину труда, строить новые формы общественной связи между людьми, строить новые формы и приемы привлечения людей к труду (ПСС, т. 40, стр. 316). | *Աշխատանքի նոր կարգապահություն կառուցել, մարդկանց միջև հասարակական կապի նոր ձևեր կառուցել, մարդկանց աշխատանքի ներգրավելու նոր ձևեր ու պրիոմներ կառուցել... (հ. 30, էջ 662).* | *Հաստատել աշխատանքի նոր կարգապահություն, մարդկանց միջև ստեղծել հասարակական կապի նոր ձևեր, սահմանել մարդկանց աշխատանքի ներգրավելու նոր ձևեր ու միջոցներ.* |
| уклонения... повлекут за собой взыскание (ПСС, т. 51, стр. 169). | *խուսափումները կառաջացնեն պատիժ (հ. 44, էջ 385).* | *խուսափումները կտուժարկվեն.* |
| ...до такой степени изолгался по этому вопросу, что на очень долгое время неизбежны будут, с одной стороны, потуги отмалчаться и увернуться, а с другой стороны, требования рабочих дать им «прямые ответы» на «проклятые вопросы» (ПСС, т. 30, стр. 18). | *այն աստիճանի է ստից գլուխ ընտելացել ստին այս հարցի վերաբերմամբ, որ շատ երկար ժամանակ անխուսափելի կլինի, մի կողմից, ճիգեր թափել լուռ մնալու և փախուստ տալու խուսելուց, իսկ, մյուս կողմից, անխուսափելի կլինեն բանվորների պահանջները՝ նրանց «ուղղակի պատասխան» տալու «նզովյալ հարցերին» (հ. 22, էջ 432).* | *Այս դեպքում նա այնքան շատ է ստել, որ երկար ժամանակ անխուսափելի կլինեն, մի կողմից ճգնել պապանձվել և դիմադարձ լինել, իսկ մյուս կողմից՝ «ուղղակի պատասխանել» բանվորների «անիծյալ հարցերին»:* |



| | | |
|---|---|---|
| Отсутствие ответа польских коллег на эти доводы заставляет признать дискуссию по этому пункту конченной (ПСС, т. 30, стр. 23). | *Այդ փաստարկներին լեհ ընկերակիցների կողմից պատասխան չլինելը ստիպում է ընդունել, որ դիսկուսիան այս կետի վերաբերմամբ վերջացած է (հ. 22, էջ 439).* | *Լեհ կոլեգաների՝ այդ փաստարկներին չպատասխանելն ստիպում է դիսկուսիան այդ կետի վերաբերյալ ավարտված համարել.* |
| ...Мы доказываем неосуществимость запрещения машин или введения рабочих денег (ПСС. т. 30, стр. 23). | *մենք ապացուցում ենք մեքենաներն արգելելու կամ աշխատանքային փող մտցնելու անկարելիությունը (հ. 22, էջ 439).* | *մենք ապացուցում ենք մեքենաներն արգելելու կամ աշխատադրամի կիրառման անկարելիությունը.* |
| По-моему, не стоит этого брать всерьез и спешить отвечать. Лучше подождем и посмеемся (ПСС. т. 51, стр. 29). | *Ըստ իս, չարժե դա լուրջ ընդունել և շտապել պատասխանել: Ավելի լավ է սպասենք և ծաղրենք (հ. 44, էջ 276):* | *Ըստ իս, չարժե դա լուրջ համարել և հապճեպ պատասխանել: Ավելի լավ է սպասենք և ծիծաղենք.* |
| ...мы должны уже теперь работать над развитием классового самосознания сельских наемных рабочих, над их самостоятельной классовой организацией (ПСС. т. 10, стр. 49). | *մենք պետք է այժմ արդեն աշխատենք գյուղական վարձու բանվորների դասակարգային ինքնագիտակցությունը զարգացնելու վրա, նրանց ինքնուրույն դասակարգային կազմակերպման վրա (հ. 8, էջ 402).* | *այժմ իսկ պետք է ջանանք զարգացնել գյուղական վարձու բանվորների ինքնագիտակցությունը, ամրացնել նրանց ինքնուրույն դասակարգային կազմակերպությունը.* |
| нисколько не предохраняющими населения от вымирания (т. 5, стр. 235). | *բնակչությանն ամենևին չեն պաշտպանում մահաջնջումից (էջ 339).* | *բնակչությանն ամենևին չեն փրկում մահացությունից.* |

Աղյուսակ երկրորդ

| Բնագիր | ՎԵՐՆԱԳՐԵՐ<br>Թարգմանված է | Գուցե թարգմանվի |
|---|---|---|
| Английский пацифизм и английская нелюбовь к теории (ПСС, т. 26, стр. 266). | *Անգլիական պացիֆիզմը և անգլիական հակակրությունը դեպի թեորիան (հ. 21, էջ 325).* | *Անգլիական պացիֆիզմը և անգլիական հակակրանքը տեսության նկատմամբ.* |
| О мире без аннексий и о независимости знакомят Интернационал с положением дел в РСДРП (ПСС, т. 19, стр. 355). | *Այն մասին, թե մի քանի սոցիալ-դեմոկրատներ ինչպես են ծանոթացնում Ինտերնացիոնալին գործերի դրությանը ՌՍԴԲԲ մեջ (հ. 16, էջ 371).* | *Այն մասին, թե մի քանի սոցիալ-դեմոկրատներ Ինտերնացիոնալին ինչպես են ծանոթացնում ՌՍԴԲԿ գործերի վիճակին.* |
| О мире без аннексий и о независимости Польши, как лозунгах дня в России (ПСС, т. 27, стр. 246). | *Առանց աննեքսիայի հաշտության և Լեհաստանի անկախության մասին, որպես օրվա լոզունգների՝ Ռուսաստանում (հ. 22, էջ 175).* | *Հաշտություն առանց անեքսիաների և անկախություն Լեհաստանին՝ ահա օրվա կոչերը Ռուսաստանում.* |

| | | |
|---|---|---|
| Предисловие к брошюре Войнова (А. В. Луначарского) об отношении партии к профессиональным союзам (ПСС, т. 16, стр. 183). | Առաջաբան դեպի պրոֆեսիոնալ միությունները պարտիայի վերաբերմունքի մասին Վոյինովի (Ա. Վ. Լունաչարսկու) բրոշյուրի առթիվ (Հ. 13, էջ 195). | Առաջաբան՝ Վոյնովի (Ա. Վ. Լունաչարսկու) կուսակցության վերաբերմունքը պրոֆեսիոնալ միությունների նկատմամբ բրոշյուրի առթիվ. |
| Распущенная дума и растерянные либералы (ПСС, т. 23, стр. 329). | Արձակված դուման և գլուխները կորցրած լիբերալները (Հ. 19, էջ 308). | Արձակված Դուման և գլխակորույս լիբերալները. |
| Резолюция о поведении в партийном кризисе Плеханова (ПСС, т. 9, стр. 322). | Բանաձև Պլեխանովի վարքի մասին պարտիական կրիզիսում (Հ. 8, էջ 232). | Բանաձև՝ կուսակցական ճգնաժամում Պլեխանովի վարքի մասին. |
| Все на борьбу с Деникиным (ПСС, т. 39, стр. 44). | Բոլորս պայքարի՝ Դենիկինի դեմ (Հ. 29, էջ 535). | Բոլորս կռվի ելնենք Դենիկինի դեմ, կամ ի զե՛ն, ընդդեմ Դենիկինի. |
| Классы и партии в их отношении к религии и церкви (ПСС, т. 17, стр. 429). | Դասակարգերն ու պարտիաները իրենց վերաբերմունքով դեպի կրոնն ու եկեղեցին (Հ. 15, էջ 516). | Դասակարգերի ու կուսակցությունների վերաբերմունքը կրոնի ու եկեղեցու նկատմամբ. |
| Издевательство капиталистов над народом (ПСС, т. 32, стр. 232). | Կապիտալիստների ծաղրանքը ժողովրդի նկատմամբ (Հ. 24, էջ 696). | Կապիտալիստների ծաղր ու ծանակը ժողովրդի նըկատմամբ. |
| О кандидатуре М. И. Калинина на пост председателя ВЦИК (ПСС, т. 38, стр. 223). | Մ. Ի. Կալինինի թեկնածության մասին Համառուս. ԿԳԿ նախագահի պաշտոնի համար (Հ. 29, էջ 278). | Համառուս. ԿԳԿ նախագահի պաշտոնում Մ. Ի. Կալինինի թեկնածության առաջադրման մասին. |
| Народничествующая буржуазия и растерянное народничество (ПСС, т. 8, стр. 77). | Նարոդնիկություն անող բուրժուազիան և գլուխը կորցրած նարոդնիկությունը (Հ. 7, էջ 114). | Նարոդնիկացող բուրժուազիան և գլխակորույս նարոդնիկությունը. |
| Народничество и ликвидаторство как элементы распада в рабочем движении (ПСС, т. 24, стр. 250). | Նարոդնիկությունը և լիկվիդատորությունը որպես քայքայման տարրեր բանվորական շարժման մեջ (Հ. 20, էջ 56). | Նարոդնիկությունը և լիկվիդատորությունը որպես բանվորական շարժման քայքայիչ տարրեր: |
| Завоеванное и записанное (ПСС, т. 37, стр. 512). | Նվաճվածն ու գրանցվածը (Հ. 28, էջ 621). | Նվաճվածն ու գրառվածը. |
| Аноним из „Varwärts'a„ и положение дел в РСДРП (ПСС, т. 21, стр. 201). | Անոնիմը «Varwärtsà»-ից և իրերի դրությունը ՌՍԴԲՊ-ում (Հ. 17, էջ 659). | Անոնիմը «Varwärts'a»-ից և գործերի վիճակը ՌՍԴԲԿ-ում. |
| Орган либеральной рабочей политики (ПСС, т. 21, стр. 157). | Լիբերալ բանվորական քաղաքականության օրգանը (Հ. 17, էջ 602). | Բանվորական լիբերալ քաղաքականության օրգանը. |



Թարգմանության գործի հաջող կազմակերպումը մեծապես կօգնի մեզ ոչ միայն խոր գիտելիքներով, սոցիալիստական հումանիզմի իդեալներով զինելու մատաղ սերնդին, այլև համակելու նրան պրոլետարական ինտերնացիոնալիզմի, սոցիալիստական երկրների ժողովուրդների լենինյան եղբայրության վսեմ գաղափարներով:

Ճիշտն ասած, մխիթարական վիճակում չէ թարգմանական գործը նաև Հայկական ՍՍՀ իրավա-օրենսդրական և կառավարական որոշումների հրապարակման բնագավառներում: Անհապաղ լուծման կարոտ մի շարք խնդիրներ են ծառացել նշված մարզերում:

## III

Կանխավ ասենք, որ բնավ հակամետ չենք անտեսելու այն խոշոր նվաճումները, որոնք ձեռք են բերված սովետական կարգերի օրոք՝ իրավական հարաբերությունները ու պետական-քաղաքական կյանքն արտացոլող լեզվական կուլտուրայի ասպարեզում: Բավականին շատ նոր տերմիններ, հասկացություններ ու բառեր են մուծված հայոց լեզվի գանձարանը նաև այս ոլորտում: Բայց սովետական ժողովրդի հոգևոր պահանջները ևս շատ են հարըստում: Բայց սովետական ժողովրդի հոգևոր պահանջները ևս շատ են հարըստացել ու բազմացել: Այս առումով մոտենալով խնդրին, ցավոք, պետք է նըշենք, որ հայերեն հրապարակվող օրենքների ու որոշումների լեզուն նախանձելի վիճակում չէ:

Իրականում գործն այնպես է ընթանում, որ օրենքների ու պաշտոնական մարմինների որոշումներ մշակողները, թարգմանիչներն ու խմբագիրները հաճախ են խախտում լեզուների փոխազդեցության, փոխհարստացման հատատուն օրենքը և ջանում՝ **բառացի թարգմանությամբ** «հարազատ մնալ» բնագրին: Այստեղ է նրանց աքիլլեսյան գարշապարը:

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի 1970 թ. դեկտեմբերյան սեսիայում հաստատված ու պարբերական մամուլում հրապարակված **Հողային օրենսգիրքը** սկսվում է հետևյալ պարբերությամբ. «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը ոչնչացրեց ցարական Ռուսաստանի կիսաճորտատիրական **հողային կառուցվածքը,** որը գյուղացիությանը **դատապարտել էր** աղքատության...» և այլն: Օրենքը թարգմանող և խմբագրող ընկերները անտեսել են, որ «հողային կառուցվածք» հասկացությունը գերազանցապես արտահայտում է հողի ֆիզիկո-քիմիական բաղադրությունը, բայց ոչ բնավ հողօգտագործման **սոցիալ-տնտեսական հարաբերությունները:** Земельный строй ասելով ռուսը երբեք չի հասկանում՝ строение земли, այլ **հողօգտագործման եղանակն ու կերպը:** Իմաստի այդ խեղումը լույս տեսած գրքույկում (5.000 տըպաժով) մասամբ ուղղված է որպես «հողային կարգ»: Թվում է, որ «հողային կարգը» ևս այս դեպքում լիովին չի արտացոլում հարցի էությունը: Ճիշտը կլինի՝ հողօգտագործման կարգը: Ս. Օժեգովի բառարանում земельный բառի դիմաց աված է. относящийся к землевладению и к земледелию: Հողային կարգը կարող է հասկացվել հողի որպիսության իմաստով, բայց ոչ սոցիալ-իրավական առումով: Земельная реформа, Земельный кодекс հասկացությունները նախ բովանդակում են մարդկանց հասարակական հարաբերությունները երկրագործության բնագավառում:

Ինչո՞ւ գրենք՝ «որոշման հիման վրա» և ոչ՝ որոշմամբ: Ինչո՞ւ ասել «օրենքը կիրառության դնել», երբ ունենք՝ կիրառել բայը: Ինչո՞ւ գրենք «քննության դնել», երբ կարելի է գրել՝ քննարկել: Ինչո՞ւ գրենք «նախագիծը մտցվում է... կողմից», երբ կարելի է ասել՝ նախագիծն առաջարկում կամ առաջադրում է այսինչ հանձնաժողովը: Արդյոք ճի՞շտ կլինի ասել՝ «լեռնային, անտառային և ջրային հարաբերությունները... կարգավորվում են հատուկ օրենսդրությամբ» (տե՛ս **Հողային օրենսգիրք,** 2-րդ հոդված): Մի՛թե ճիշտ չէ ասել՝ լեռնային, անտառային և ջրային հարցերը լուծվում են հատուկ օրենսդրությամբ: Ինչո՞ւ ասել «գյուղատնտեսության նշանակության հող», այլ ոչ՝ գյուղատնտեսության համար պիտանի հող: Եվ, վերջապես, մի՞թե հաջող է թարգմանված վերոհիշյալ օրենսգրքի առաջին հոդվածը.

| Թարգմանված է | Թերևս լինի |
| --- | --- |
| *Հայկական ՍՍՀ հողային օրենսգրքի խնդիրներն են՝ հողային հարաբերությունների կարգավորումը հողերի ռացիոնալ օգտագործումն ապահովելու, դրանց արդյունավետության բարձրացման համար պայմաններ ստեղծելու նպատակով, սոցիալիստական կազմակերպությունների և քաղաքացիների իրավունքների պաշտպանությունը, օրինականության ամրապնդումը, հողային հարաբերությունների բնագավառում (էջ 7):* | *Հայկական ՍՍՀ հողային օրենսգրքի խնդիրն է՝ կարգավորել հողային հարաբերությունները հողերի ռացիոնալ օգտագործմամբ, դրանց արդյունավետության բարձրացման պայմանների ստեղծմամբ, սոցիալիստական կազմակերպությունների ու քաղաքացիների իրավունքների պաշտպանությամբ, հողային հարաբերությունների բնագավառում օրինականության ամրապնդմամբ.* |

Իմաստային առումով ու լեզվական բարեհնչունությամբ վերոհիշյալ հոդվածի երկու ձևակերպումները էապես տարբեր են:

Հրապարակված որոշ օրենքներ ու կառավարական որոշումներ շեշտված արտահայտում են բառացի թարգմանության ակներև արատները:

Այստեղ, ինչպես և գրեթե պաշտոնական բոլոր փաստաթղթերում հանդիպում ենք՝ «որոշում ընդունում» դարձվածքին: Ինչո՞ւ ասենք, թե Մինիստրների սովետը **որոշում է ընդունում** կամ ՀԿԿ Կենտկոմի ու Մինիստրների սովետի մայիսի 24-ին **ընդունած** որոշմամբ և այլն: Ավելի ճիշտ չի՞ լինի, եթե այդ «ընդունման» փոխարեն ասենք՝ որոշեց, որոշել է, որոշմամբ բայական հստակ ըմբռնումը: Բոլոր օրենքներում, հրամանագրերում ու որոշումներում բազմիցս գործածվում են՝ «անց են կացնում միջոցառումներ» կամ «միջոցառումներ անցկացնել»: Մեր կարծիքով, լավ կլինի՝ միջոցառումներ իրականացնել, կատարել. ո՛չ թե կոմպլեկտացման բաժին, այլ կոմպլեկտավորման բաժին: Ո՛չ թե ստաժավորում են անցնում, այլ պարզապես՝ ստաժավորվում են: Ո՛չ թե հաստատված նախահաշվի հանդեպ գերածախսը կազմել... այլ՝ նախահաշվի համեմատ:

Ինչո՞ւ ասել՝ աղմուկի մակարդակի իջեցում և ոչ թե աղմուկի սաստկության նվազեցում կամ սաստկության թուլացում: Լավ չէ՞, որ **աղմուկի փոնը** տարեցտարի աճում է արտահայտության փոխարեն ասվի՝ աղմուկը հետզհետե ավելի է տարածվում կամ ծավալվում: Կենցաղային աղմուկի մակարդակն իջեցնելու հարցե՞ր, թե՞ կենցաղային աղմուկի սաստկությունը կամ ուղղակի աղմուկի թուլացման հարցեր: Ո՛չ թե կառուցապատողներ, այլ կառուցողներ և այլն: Խաղողը պահելու գործը շահագրգռելու համար, թե՞ խաղողապահներին շահագրգռելու համար:

Փոխանակ ասելու՝ **տույժի միջոցներ կիրառելու կարգը,** ասենք՝ տուժարկման կամ տուժարկելու կարգը: Փոխանակ գրելու **հարկադրական բուժում կիրառել,** պետք է ասել՝ հարկադրաբար բուժել: Ո՛չ թե պատժի կատարումը, այլ կիրառումը: Պետք է գրել դեղագործություն և ոչ թե՝ դեղագործական գործունեություն: Օգնում են դեղորայքով, այլ ոչ թե՝ **օգնություն են ցույց տալիս** դեղորայքով: Ո՛չ թե որակի հսկողությունն իրականացնում է, այլ՝ հսկում է որակին: Ո՛չ թե **հաստատող ինստանցիաներ,** այլ՝ մարմիններ: Ո՛չ թե **Դարալագյազի մասիվ,** այլ զանգված: Ինչո՞ւ **կուլինարական խանութներ** ասենք, երբ վաղուց ունենք խոհարարական բառը: Հրապարակված մի որոշման մեջ խոսվում է ճանապարհի շուրթերի մասին, փոխանակ՝ եզրերի:

Մեր կարծիքով, լեզվաշինարարության այսօրվա կարևորագույն խնդիրներից մեկը նյութական միջոցների ու աշխատանքի խնայողությունն է: Մինչդեռ հրապարակված օրենքներում և որոշումներում կան բազմաթիվ բառակապակցություններ, դարձվածքներ, որոնք կարելի է փոխարինել մեկ կամ երկու բառով կամ բառաստեղծմամբ: Դա կնպաստի լեզվի հարստացմանը, թղթի և աշխատանքի խնայողությանը:

Մեր միտքը ցայտուն և համոզիչ դարձնելու համար բերենք օրինակներ. մի քանի տարի առաջ հրապարակված (հայերեն) օրենքներից ու պաշտոնական որոշումներից:



| Գրված է | Թերևս լինի |
| --- | --- |
| *...զարգացնել հողերի ոռոգումը.* | *կատարելագործել հողերի ոռոգումը.* |
| *Հողն օգտագործելու իրավունքը.* | *Հողօգտագործման իրավունքը.* |
| *Միջոցառումները կոմպլեքս իրագործել կանխելու հողերի էրոզիան.* | *կոմպլեքս միջոցառումների կենսագործմամբ կանխել հողերի էրոզիան.* |
| *Հողերի պահպանության միջոցառումներ.* | *հողապահպան միջոցառումներ.* |
| *Աշխատանքի են անցել.* | *աշխատում են.* |
| *Եթե նրանք անցնում են ծերության կամ հաշմանդամության կենսաթոշակի.* | *եթե նրանք իբրև ծեր կամ հաշմանդամ կենսաթոշակավորվել են.* |
| *Անտառով չծածկված հողեր.* | *անտառազուրկ հողեր.* |
| *Անտառներով ծածկված հողեր.* | *անտառապատ կամ անտառածածկ հողեր.* |
| *Պլանին համապատասխան.* | *պլանով, ըստ պլանի.* |
| *Կառուցվածքն իրականացնող.* | *կառուցող.* |
| *Այդ հողերի վրա չի թույլատրվում այնպիսի շենքերի ու կառուցումների կառուցում.* | *այդ հողերի վրա արգելվում է այնպիսի շինությունների կառուցում.* |
| *Պիտանի վիճակի բերելու.* | *պիտանիացնելու.* |
| *Հողամասերն օգտագործման հատկացնելն իրականացվում է դրանք սահմանազատելու կարգով.* | *հողամասերն օգտագործման են հատկացվում սահմանազատմամբ.* |
| *Վնասները ենթակա են հատուցման.* | *վնասները հատուցվում են, հատուցելի են.* |
| *Նոր պայմաններ մտցնելու մասին.* | *նոր պայմաններ ստեղծելու կամ սահմանելու մասին.* |
| *Պետակ·սն գնումների անցկացում.* | *պետական գնումների կատարում.* |
| *Նրանց վրա գրված բոլոր անկողնային պարագաները.* | *նրանց անվամբ գրված անկողնային պարագաները.* |
| *Վերահսկողությունն իրականացնում են.* | *վերահսկում են.* |
| *Գործողության մեջ դնել միասնական գներ.* | *Կիրառել միասնական գներ.* |
| *Համակցված կերեր.* | *համակցված կեր.* |
| *Հացընդունման և հացահատիկի վերամշակող ձեռնարկությունների ցանց.* | *հացահատիկի ընդունման ու վերամշակման ձեռնարկությունների ցանց.* |
| *Իրագործում է վերահսկողություն.* | *վերահսկում է.* |
| *Որտեղ տեղի է ունեցել մահացած վիճակում երեխայի ծնունդը.* | *որտեղ երեխան մեռած է ծնվել.* |
| *Գործողության մեջ դնել.* | *գործադրել.* |
| *Կատարում են ապացույցների ապահովում.* | *հաստատում են ապացույցները.* |
| *Կոշիկներ չմուշկներով սահելու համար.* | *չմշկակոշիկներ.* |
| *Մտցվում է մթերատու անասնապահության գծով զոոտեխնիկի պաշտոն.* | *սահմանվում է մթերատու անասնապահության անասնաբույծի պաշտոն.* |
| *Որոնց մեղքով վնաս է հասցվում պետությանը.* | *որոնց զանցանքով պետությունը վնաս է կրում.* |
| *Թերություններ թույլ տալու հետևանքով.* | *թերությունների հետևանքով.* |
| *Վարձատրություն վճարել.* | *վարձատրել.* |
| *Բազմամյա տնկարկներ.* | *բազմամյա տնկիներ.* |
| *Շարունակվում են թույլ տրվել այնպիսի խախտումներ.* | *շարունակվում են այնպիսի խախտումներ.* |
| *Գոյանում են միջոցների ազատ մնացորդ, այն սահմանված կարգով ուղղվում է խթանման ֆոնդի ստեղծմանը.* | *գոյանում է ազատ միջոցների մնացորդ, որը սահմանված կարգով հատկացվում է խթանման ֆոնդի ստեղծմանը.* |
| *Վարձակալման վարձավճարների դրույքներ.* | *վարձակալման վճարադրույքներ.* |

| Թարգմանված է | Թերևս լինի |
| --- | --- |
| *Հայկական ՍՍՀ հողային օրենսգրքի խնդիրներն են՝ հողային հարաբերությունների կարգավորումը հողերի ռացիոնալ օգտագործումն ապահովելու, դրանց արդյունավետության բարձրացման համար պայմաններ ստեղծելու նպատակով, սոցիալիստական կազմակերպությունների և քաղաքացիների իրավունքների պաշտպանությունը, օրինականության ամրապնդումը, հողային հարաբերությունների բնագավառում (էջ 7)։* | *Հայկական ՍՍՀ հողային օրենսգրքի խնդիրն է՝ կարգավորել հողային հարաբերությունները հողերի ռացիոնալ օգտագործմամբ, դրանց արդյունավետության բարձրացման պայմանների ստեղծմամբ, սոցիալիստական կազմակերպությունների ու քաղաքացիների իրավունքների պաշտպանությամբ, հողային հարաբերությունների բնագավառում օրինականության ամրապնդմամբ.* |

Իմաստային առումով ու լեզվական բարեհնչունությամբ վերոհիշյալ հոդվածի երկու ձևակերպումներն էապես տարբեր են։

Հրապարակված որոշ օրենքներ ու կառավարական որոշումներ շեշտված արտահայտում են բառացի թարգմանության ակներև արատները։

Այստեղ, ինչպես և գրեթե պաշտոնական բոլոր փաստաթղթերում հանդիպում ենք՝ «որոշում ընդունում» դարձվածքին։ Ինչո՞ւ ասենք, թե Մինիստրների սովետը **որոշում է ընդունում** կամ ՀԿԿ Կենտկոմի ու Մինիստրների սովետի մայիսի 24-ին **ընդունած** որոշմամբ և այլն։ Ավելի ճիշտ չի՞ լինի, եթե այդ «ընդունման» փոխարեն ասենք՝ որոշեց, որոշել է, որոշմամբ բայական հստակ ըմբռնումը։ Բոլոր օրենքներում, հրամանագրերում ու որոշումներում բազմիցս գործածվում են՝ «անց են կացնում միջոցառումներ» կամ «միջոցառումներ անցկացնել»։ Մեր կարծիքով, լավ կլինի՝ միջոցառումներ իրականացնել, կատարել. ո՛չ թե կոմպլեկտացման բաժին, այլ կոմպլեկտավորման բաժին։ Ո՛չ թե ստաժավորում են անցնում, այլ պարզապես՝ ստաժավորվում են։ Ո՛չ թե հաստատված նախահաշվի հանդեպ գերածախսը կազմել... այլ՝ նախահաշվի համեմատ։

Ինչո՞ւ ասել՝ աղմուկի մակարդակի իջեցում և ոչ թե աղմուկի սաստկության նվազեցում կամ սաստկության թուլացում։ Լավ չէ՞, որ **աղմուկի ֆոնը** տարեցտարի անում է արտահայտության փոխարեն ասվի՝ աղմուկը հետզհետե ավելի է տարածվում կամ ծավալվում։ Կենցաղային աղմուկի մակարդակն իջեցնելու հարցե՞ր, թե՞ կենցաղային աղմուկի սաստկությունը կամ ուղղակի աղմուկի թուլացման հարցեր։ Ո՛չ թե կառուցապատողներ, այլ կառուցողներ և այլն։ Խաղողը պահելու գործը շահագրգռելու համար, թե՞ խաղողապահներին շահագրգռելու համար։

Փոխանակ ասելու՝ **տույժի միջոցներ կիրառելու կարգը,** ասենք՝ տուժարկման կամ տուժարկելու կարգը։ Փոխանակ գրելու **հարկադրական բուժում կիրառել,** պետք է ասել՝ հարկադրաբար բուժել։ Ո՛չ թե պատժի կատարումը, այլ կիրառումը։ Պետք է գրել դեղագործություն և ոչ թե՝ դեղագործական գործունեություն։ Օգնում են դեղորայքով, այլ ոչ թե՝ **օգնություն են ցույց տալիս** դեղորայքով։ Ո՛չ թե որակի հսկողությունն իրականացնում է, այլ՝ հսկում է որակին։ Ո՛չ թե **հաստատող ինստանցիաներ,** այլ՝ մարմիններ։ Ո՛չ թե **Դարալագյազի մասսիվ,** այլ զանգված։ Ինչո՞ւ **կուլինարական խանութներ** ասենք, երբ վաղուց ունենք խոհարարական բառը։ Հրապարակված մի որոշման մեջ խոսվում է ճանապարհի շուրթերի մասին, փոխանակ՝ եզրերի։

Մեր կարծիքով, լեզվաշինարարության այսօրվա կարևորագույն խնդիրներից մեկը նյութական միջոցների ու աշխատանքի խնայողությունն է։ Մինչդեռ հրապարակված օրենքներում և որոշումներում կան բազմաթիվ բառակապակցություններ, դարձվածքներ, որոնք կարելի է փոխարինել մեկ կամ երկու բառով կամ բառաստեղծմամբ։ Դա կնպաստի լեզվի հարստացմանը, թղթի և աշխատանքի խնայողությանը։

Մեր միտքը ցայտուն և համոզիչ դարձնելու համար բերենք օրինակներ. մի քանի տարի առաջ հրապարակված (հայերեն) օրենքներից ու պաշտոնական որոշումներից։



| Գրված է | Թերևս լինի |
| --- | --- |
| *...զարգացնել հողերի ոռոգումը.* | *կատարելագործել հողերի ոռոգումը.* |
| *Հողն օգտագործելու իրավունքը.* | *Հողօգտագործման իրավունքը.* |
| *Միջոցառումները կոմպլեքս իրագործել կանխելու հողերի էրոզիան.* | *կոմպլեքս միջոցառումների կենսագործմամբ կանխել հողերի էրոզիան.* |
| *Հողերի պահպանության միջոցառումներ.* | *հողապահպան միջոցառումներ.* |
| *Աշխատանքի են անցել.* | *աշխատում են.* |
| *Եթե նրանք անցնում են ծերության կամ հաշմանդամության կենսաթոշակի.* | *Եթե նրանք իբրև ծեր կամ հաշմանդամ կենսաթոշակավորվել են.* |
| *Անտառով չծածկված հողեր.* | *անտառազուրկ հողեր.* |
| *Անտառներով ծածկված հողեր.* | *անտառապատ կամ անտառածածկ հողեր.* |
| *Պլանին համապատասխան.* | *պլանով, ըստ պլանի.* |
| *Կառուցվածքն իրականացնող.* | *կառուցող.* |
| *Այդ հողերի վրա չի թույլատրվում այնպիսի շենքերի ու կառուցումների կառուցում.* | *այդ հողերի վրա արգելվում է այնպիսի շինությունների կառուցում.* |
| *Պիտանի վիճակի բերելու.* | *պիտանիացնելու.* |
| *Հողամասերն օգտագործման հատկացնելն իրականացվում է դրանք սահմանազատելու կարգով.* | *հողամասերն օգտագործման են հատկացվում սահմանազատմամբ.* |
| *Վնասները ենթակա են հատուցման.* | *վնասները հատուցվում են, հատուցելի են.* |
| *Նոր պայմաններ մտցնելու մասին.* | *նոր պայմաններ ստեղծելու կամ սահմանելու մասին.* |
| *Պետակ․ոն գնումների անցկացում.* | *պետական գնումների կատարում.* |
| *Նրանց վրա գրված բոլոր անկողնային պարագաները.* | *նրանց անվամբ գրված անկողնային պարագաները.* |
| *Վերահսկողությունն իրականացնում են.* | *վերահսկում են.* |
| *Գործողության մեջ դնել միասնական գներ.* | *Կիրառել միասնական գներ.* |
| *Համակցված կերեր.* | *համակցված կեր.* |
| *Հացաընդունման և հացահատիկի վերամշակող ձեռնարկությունների ցանց.* | *հացահատիկի ընդունման ու վերամշակման ձեռնարկությունների ցանց.* |
| *Իրագործում է վերահսկողություն.* | *վերահսկում է.* |
| *Որտեղ տեղի է ունեցել մահացած վիճակում երեխայի ծնունդը.* | *որտեղ երեխան մեռած է ծնվել.* |
| *Գործողության մեջ դնել.* | *գործադրել.* |
| *Կատարում են ապացույցների ապահովում.* | *հաստատում են ապացույցները.* |
| *Կոշիկներ չմուշկներով սահելու համար.* | *չմշկակոշիկներ.* |
| *Մտցվում է մթերատու անասնապահության գծով զոոտեխնիկի պաշտոն.* | *սահմանվում է մթերատու անասնապահության անասնաբույժի պաշտոն.* |
| *Որոնց մեղքով վնաս է հասցվում պետությանը.* | *որոնց զանցանքով պետությունը վնաս է կրում.* |
| *Թերություններ թույլ տալու հետևանքով.* | *թերությունների հետևանքով.* |
| *Վարձատրություն վճարել.* | *վարձատրել.* |
| *Բազմամյա տնկարկներ.* | *բազմամյա տնկիներ.* |
| *Շարունակվում են թույլ տրվել այնպիսի խախտումներ.* | *շարունակվում են այնպիսի խախտումներ.* |
| *Գոյանում են միջոցների ազատ մնացորդ, այն սահմանված կարգով ուղղվում է խթանման ֆոնդի ստեղծմանը.* | *գոյանում է ազատ միջոցների մնացորդ, որը սահմանված կարգով հատկացվում է խթանման ֆոնդի ստեղծմանը.* |
| *Վարձակալման վարձավճարների դրույքներ.* | *վարձակալման վճարադրույքներ.* |

| | |
|---|---|
| Սպասարկումն իրականացվում է. | սպասարկվում է. |
| Շինարարական-մոնտաժային աշխատանքների լուրջ հետամնացություն. | ...լուրջ ետ մնալը. |
| Չեն կատարվել ցուցանիշները. | չեն կատարվել առաջադրանքները. |
| Թույլ է տրվել թերություններ ու խախտումներ. | կան թերություններ ու խախտումներ. |
| Թույլ է տրվել աշխատավարձի աճ. | աշխատավարձն աճել է. |
| Հոտերը դնել արոտային գիրացման տակ. | հոտերը գիրացնել արոտավայրերում. |
| Առանց բյուջեի հետ փոխհարաբերությունները փոխելու. | առանց բյուջեի համամասնությունները փոխելու. |
| Դրասենյակն ունի... անկյունային դրոշմ. | դրասենյակն ունի եռանկյունի դրոշմ. |
| Ստացել են 456 հազար ռուբլու վնաս. | 456 հազար ռուբլու վնաս են կրել. |
| Կրեդիտորական պարտքեր. | վարկատուական պարտքեր. |
| Վատնում-յուրացումներ թույլ տվող անձանց. | վատնող-յուրացնողների. |
| Մարտիրոս գյուղի ակտիվ ու սպառնալից սողանքներով հյուսիսային մասը. | Մարտիրոս գյուղի վտանգավոր ու գործող հյուսիսային սողանքը. |
| Բժշկական արդյունաբերության մինիստրություն. | բուժական արդյունաբերության... |
| Հակասելավային | հակահեղեղային. |
| Հիվանդների թարմ դեպքեր. | նոր հիվանդներ. |
| Ոչխարների կթումը. | ոչխարների կիթը. |
| Կառուցել անասնագերեզմանոցներ. | փորել անասնաթաղարաններ կամ անասնագերեզմանոցներ. |
| Հայտարարել Հովհաննես Թումանյանի լավագույն սեղանի կիսանդրիի մրցանակաբաշխություն. | հայտարարել Հովհաննես Թումանյանի՝ լավագույն կիսանդրիի (սեղանի համար) մրցանակաբաշխություն. |
| Սողանքների զարգացում. | սողանքների ծավալում, սաստկացում, տարածում. |
| Մտցնել կոլեգիայի կազմի մեջ. | հաստատել կոլեգիայի կազմում. |
| Վտանգի տակ են դնում պլանի կատարումը. | վտանգում են... |
| Կուլտուրաների տակ դնելու համար | կուլտուրաների մշակման համար. |
| Փաստերը տեղի չէին ունենա. | փաստերը չէին լինի. |

**Հետևություններ.** մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերի, նմանապես ու կառավարական որոշումների և սովետական օրենքների, օրենսգրքերի թարգմանության և հրապարակման գործը համարելով գաղափարա-քաղաքական, համապետական կարևորագույն խնդիր, գտնում ենք նպատակահարմար.

1. կազմակերպել թարգմանիչների պատրաստման պետական հաստատություն (կամ այդպիսին ստեղծել գործող որևէ գիտական հիմնարկության կից), որը կարողանա շնորհալի երիտասարդներից պատրաստել քաղաքական, գիտատեխնիկական, գեղարվեստական երկերի որակյալ թարգմանիչներ:

2. Ինչպես նշել էինք մեր ամսագրի ս. թ. հուլիսյան համարում, աշխատավորությունը խիստ կարիք ունի ընդհանուր և մասնագիտական բառարանների: Ուստի, անհրաժեշտ է արագացնել Հ. Աճառյանի անվան լեզվի ինստիտուտի պատրաստած արդի հայերենի լիակատար բառարանի, ինչպես և այլ մասնագիտական բառարանների հրատարակումը:

3. Նպատակահարմար է տերմինաբանական կոմիտեի ֆունկցիաներով օժտել ՀԳԱ լեզվի ինստիտուտին, հնարավորություն ընձեռելով վերջինիս պարբերաբար հրատարակելու ընթացիկ լեզվաշինության բյուլետեն, որն արտացոլի լեզվի զարգացման նորագույն նվաճումները:

4. Ժամանակն է կազմակերպել պրոֆեսիոնալ թարգմանիչների ստեղծագործական միություն, ինչպես և սահմանել վաստակավոր թարգմանչի պատվավոր կոչում:

5. Կարիք կա հանրապետությունում ստեղծել թարգմանական սպասարկման բյուրո՝ իր մեքենագրական ապարատով հանդերձ, որն ամեն կարգի թարգմանություններով ծառայի պետական մարմիններին ու քաղաքացիներին:

# ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԿԵՂԾԱՐԱՐՆԵՐԸ ԳՈՐԾՈՒՄ ԵՆ

**Հ. Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ**
Պահեստի գեներալ-մայոր

*Արդի ժամանակաշրջանի առավել բնորոշ առանձնահատկություններից մեկը իմպերիալիզմի ու սոցիալիզմի միջև մղվող գաղափարախոսական պայքարի սրումն է:*

*Երկու հիմնական աշխարհայացքների՝ կոմունիստական և բուրժուական, գաղափարախոսական պայքարը ժողովրդական մասսաների գիտակցության վրա գերիշխող ազդեցություն ունենալու համար մղվող մեծ ճակատամարտ է: Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում նշեց. «Մենք ապրում ենք գաղափարախոսական անդադրում պատերազմի պայմաններում, որը մեր երկրի դեմ, սոցիալիզմի աշխարհի դեմ մղում է իմպերիալիստական պրոպագանդան՝ օգտագործելով ամենանրբին եղանակներ ու տեխնիկական հզոր միջոցներ» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 120):*

*Իմպերիալիստական բուրժուազիան շովինիզմի ու ռասիզմի տարածմամբ, հակակոմունիզմի ու հակասովետիզմի քարոզմամբ ջանում է խաթարել համաշխարհային սոցիալիստական սիստեմի միասնությունը, պառակտել միջազգային կոմունիստական շարժումը: «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ասված է. «Ձգտելով թուլացնել սոցիալիզմի դիրքերը, պառակտում մտցնել միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման շարքերի մեջ, ճնշել ազգային-ազատագրական շարժումը, իմպերիալիստները լայնորեն դիմում են ռասիզմի բորբոքմանը, փորձում են ազգային հողի վրա տարանջատել աշխատավորության տարբեր ջոկատներին» (էջ 30—31):*

*Խաղաղության, սոցիալիզմի և առաջընթացի դեմ մղվող գաղափարախոսական պայքարում բուրժուական պրոպագանդան զգալի տեղ է հատկացնում երկրորդ համաշխարհային պատերազմի պատմության նենգափոխմանը: Դրանով բուրժուական պատմաբանները հետապնդում են միանգամայն որոշակի քաղաքական նպատակներ: Նրանք, ամենից առաջ, փորձում են նսեմացնել Սովետական Միության, նրա հերոսական զինված ուժերի դերն ու ծառայությունները գերմանական ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի ջախջախման գործում, վերացնել աշխարհը դարչնագույն ժանտախտից փրկած սովետական ժողովրդի նկատմամբ համաշխարհային հասարակայնության երախտագիտության զգացումը:*

*Մյուս նպատակն այն է, որ փաստերի աղավաղմամբ, երկրորդ համաշխարհային պատերազմի իրադարձությունների բուն իմաստի խեղաթյուրմամբ «ապացուցվի» համաշխարհային-պատմական մեր հաղթանակի, գերմանա-ֆաշիստական զորքերի պարտության անօրինաչափությունը և այդպիսով «հիմնավորել» այն միտքը, թե, իբր, ժամանակակից պայմաններում հնարավոր է ագրեսիվ իմպերիալիստական հաջող պատերազմ վարել ընդդեմ սոցիալիստա-*

թյունը ռևանշիստական պատերազմի նախապատրաստումը դիտում էր իբրև նվիրական պարտականություն. «Դա էլ հենց, մասամբ, հիմնական պատճառներից մեկն էր Գերմանիայի գաղտնի վերազինման, որ սկսվեց Հիտլերի կողմից իշխանությունը զավթելուց մոտ տասը տարի առաջ և սաստկացավ առանձնապես նացիստական տիրապետության ժամանակ»: Վերջապես հայտնի է միջազգային տրիբունալի դատավճիռն այն մասին, որ պատերազմը Սովետական Միության դեմ սանձազերծել է հիտլերյան Գերմանիան. այնտեղ ասված է. «Իրավական արդարացման ոչ մի հիմք— դա բացահայտ ագրեսիա էր»:

Այս ամենը կկամենային մոռանալ իրենց քաղաքականության համար պատասխանատվությունից խուսափող պատմության բուրժուական կեղծարարներն ու իմպերիալիստները, որոնք զինել էին հիտլերյան Գերմանիային, սանձազերծել երկրորդ համաշխարհային պատերազմը և բանը հասցրել պատմության մեջ չլսված ու չտեսնված, ավելի քան 50 մլն մարդկային զոհեր արժեցող ռազմական աղետի:

ՍՄԿԿ ամենամեծ ծառայությունն այն է, որ նա երկրորդ համաշխարհային պատերազմից դեռ շատ վաղ, ստեղծված այդ բարդ իրադրության պայմաններում առաջինը հասկացավ ու կռահեց մարդկության գլխին կախված ահավոր վտանգը և ողջ աշխարհի առաջ մերկացրեց կապիտալիստական երկրների միջև բորբոքված զինված պայքարի իմպերիալիստական էությունը, բացահայտեց այդ պատերազմում առավել ռեակցիոն ու ագրեսիվ ուժի՝ գերմանական ֆաշիզմի, իսկական դեմքը: Սովետական Միությունը, խաղաղասիրական ակտիվ, հետևողական քաղաքականություն վարելով, վճռականորեն հանդես էր գալիս ընդդեմ ագրեսիայի սանձազերծման, պայքարում կոլեկտիվ անվտանգության սիստեմի ստեղծման համար:

Ղեկավարվելով կապիտալիստական աշխարհի հակասությունները հմտորեն օգտագործելու անհրաժեշտության վերաբերյալ լենինյան ցուցումով, ՍՄԿԿ-ն ու սովետական կառավարությունն ընդունեցին Գերմանիայի առաջարկությունը և 1939 թ. օգոստոսի 23-ին, տասը տարի ժամանակով, չհարձակվելու պայմանագիր կնքեցին նրա հետ: Այդ խսկ նկատառումներով, սովետական կառավարությունը 1941 թ. ապրիլի 13-ին, չեզոքության պայմանագիր ստորագրեց Ճապոնիայի հետ:

Սակայն մեր կուսակցությունն ու կառավարությունը քաջ գիտեին, որ ֆաշիզմը սոցիալիզմի կատաղի թշնամին է, որ պատերազմն անխուսափելի է և անում էին ամեն հնարավոր բան ժամանակ շահելու, երկիրն ու ժողովրդին նախապատրաստելու՝ ֆաշիստական ագրեսիան ետ մղելու համար:

Սովետական Միության մարշալ Գ. Կ. Ժուկովը նկատել է. «ՀամԿ(բ)Կ Կենտկոմը և սովետական կառավարությունը ելնում էին այն բանից, որ դաշնագիրը Սովետական Միությանը չէր ազատում ֆաշիստական ագրեսիայի սպառնալիքից, բայց ժամանակ շահելու հնարավորություն էր ընձեռում հօգուտ մեր երկրի պաշտպանության ամրապնդման, խոչընդոտում հակասովետական միասնական ճակատի ստեղծմանը (տե՛ս Г. К. Жуков. Воспоминания и размышления, стр. 244):

Վերջին տարիներին բուրժուական պատմագրության մեջ այն տեսակետն է պրոպագանդվում, թե «հաղթանակի գլխավոր ճարտարապետը» պատերազմում ԱՄՆ էր, ֆաշիստական Գերմանիայի ջախջախման գործում ՍՍՀՄ ներդրումը կարևոր էր, բայց ոչ վճռական, թե հիմնական հարվածները, որ ստիպեցին Ճապոնիային անձնատուր լինել, օդից հասցվեցին» (Большая ложь о войне, стр. 90, 97):

Ժամանակակից հակակոմունիզմի գաղափարախոսները՝ Է. Ջիմկեն, Ա. Կլարկը, Դյուպուին, Է. Եկելը և այլոք, խեղաթյուրելով պատմական իրադարձությունները, ջանում են փոքրացնել Սովետական Միության ու նրա զինված ուժերի դերը գերմանական ֆաշիզմի ջախջախման գործում, նվազեցնել սովետա-գերմանական ռազմաճակատի նշանակությունը երկրորդ համաշխարհային պատերազմում, ստվեր գցել սովետական ժողովրդի մարտական փառավոր անցյալի վրա, ժխտել մեր տարած հաղթանակի օրինաչափությունը:



Ամենևին գաղտնիք չէ, որ սովետա-գերմանական ռազմաճակատի կռիվները երկրորդ համաշխարհային պատերազմի հիմնական բովանդակությունն են: Փաստերը վկայում են, որ պատերազմի ողջ ընթացքում սովետա-գերմանական ռազմաճակատն է եղել գլխավորն ու վճռականը, այնտեղ էր որոշվում պատերազմի ելքը: Մինչև 1944 թ. ամառը այստեղ գործում էին գերմանական բոլոր դիվիզիաների 76,5 տոկոսը, կենտրոնացվել էին ինքնաթիռների 60, տանկերի՝ 67 և հրանոթների 84 տոկոսը: Իսկ ռազմական գործողությունների մյուս թատերաբեմում, ինչպես և ֆաշիստական Գերմանիայի օկուպացված երկրներում դրանք միայն 23—25 տոկոս էին կազմում: Ընդ որում, սովետական զորքերի դեմ էին ուղարկվում առավել մարտունակ, լիովին համալրված ու զինված գերմանական դիվիզիաներ, մինչդեռ մյուս ռազմաճակատներում օգտագործվում էին հակառակորդի թուլացած ու հապշտապ կազմակերպված զորքերը: Մինչև երկրորդ ռազմաճակատի բացումը, անգլո-ամերիկյան զորքերին դիմադրում էին Գերմանիայի ցամաքային զորքերի 0,9—6,2 տոկոսը, նույնիսկ Ֆրանսիայում դաշնակից զորքերի դեսանտ իջեցնելուց հետո էլ, գերմանական դիվիզիաների մեծ մասը գործում էր սովետա-գերմանական ռազմաճակատներում: Բարենցից Սև ծովի ափերը 1941 թ. հունիսից մինչև 1944 թ. գործում էր հակառակորդի 270 դիվիզիա, իսկ անգլո-ամերիկյան զորքերի դեմ Հյուսիսային Աֆրիկայում 1941—1943 թթ.՝ ընդամենը 9—20, Իտալիայում՝ 7—26 դիվիզիա: Ամենաերկարատև ու ամենաակտիվ զինված կռիվները երկրորդ համաշխարհային պատերազմում մղվել են սովետա-գերմանական ռազմաճակատում: Այն տևել է 1.418 օր, մարտական գործողությունները շարունակվել են 1.320 օր (93 տոկոս): Մարտական գործողությունների այդպիսի լարվածություն չի եղել և ոչ մի ռազմաճակատում: Հյուսիս-աֆրիկյան ռազմաճակատը գոյություն է ունեցել 1.068 օր, իսկ մարտական ակտիվ գործողություններն այնտեղ շարունակվել են 309 օր (28,8 տոկոս):

Սովետական զինված ուժերը ֆաշիստական վերմախտի դեմ մղվող պայքարում կատարել են ստրատեգիական մասշտաբի հարձակողական ու պաշտպանական 50 օպերացիա: Դրանք չի կարելի համեմատել մյուս ռազմաճակատների օպերացիաների հետ: Սովետական բանակի հարձակողական գործողություններն ընդգրկում էին հազարավոր կմ տարածություններ: Բելոռուսական օպերացիայի ժամանակ, օրինակ, հարձակողական գործողությունների թատերաբեմը սկզբում 700 կմ էր, իսկ ճակատամարտի ավարտման օրերին՝ 1.000 կմ: Սովետական զորքերը մարտեր մղելով առաջացան 600 կմ: 1944 թ. ամռան-աշնան կամպանիայի ընթացքում նրանք հարավ-արևմտյան ուղղությամբ շարժվեցին 1.200 կմ: 1945 թ. մեր բանակները Վիսլայից մինչև Էլբա անցան 700 կմ: Առաջշարժման այդպիսի խորություն չի եղել և ոչ մի ռազմաճակատում: Հյուսիսային Աֆրիկայում անգլիացիները հարձակվել են 50—80 կմ խորությամբ նեղ առափնյա շերտագծով: Սովետական ռազմիկների հերոսական սխրագործությունների մասին Ֆր. Ռուզվելտը նշել է. ռուսները հակառակորդին ավելի էին ոչնչացնում, քան դաշնակից մյուս 25 պետությունները միասին վերցրած: Այնուհետև նա գրել է. «Նրանց փառավոր հաղթանակը կանգնեցրեց ներխուժման ալիքը և դարձավ դաշնակից ազգերի պատերազմի շրջադարձային կետը՝ ընդդեմ ագրեսիայի ուժերի» (Правда истории, 1971, стр. 75—76):

Գնահատելով սովետական զինված ուժերի սխրագործությունները ստալինգրադյան ճակատամարտում, ԱՄՆ նախկին պետական քարտուղար Է. Ստետինիուսը այսպես է արտահայտվել. «Ամերիկյան ժողովուրդը չպետք է մոռանա, որ նա 1942 թ. կարող էր աղետի առաջ կանգնել: Եթե Սովետական Միությունը չկարողանար դիմադրել իր ռազմաճակատում, գերմանացիների համար Մեծ Բրիտանիան գրավելու հնարավորություն կստեղծվեր: Նույն հաջողությամբ էլ նրանք կարող էին գրավել Աֆրիկան և այդպիսով իրենց հենադաշտը ստեղծել Լատինական Ամերիկայում»:

Սովետական Միության մարշալ Գ. Կ. Ժուկովը գրում է. «Արևմտյան Եվրոպայում երկրորդ ռազմաճակատը բացվեց ուշացումով, համենայն դեպս,

հատկացրեց 16.500 հրանոթ ու ականանետ, մոտ 900 տանկ ու ինքնագնաց հրետանային սարքեր, 1.400 ինքնաթիռ, կառավարման զգալի միջոցներ, տրանսպորտ, ռազմամթերք, սովետական ռազմա-ուսումնական հաստատություններում կադրեր էին պատրաստվում արտասահմանյան զորամասերի համար:

Սովետական ժողովրդի տարած փայլուն հաղթանակը Հայրենական մեծ պատերազմում հավաստեց սոցիալիստական-հասարակական, պետական կարգի առավելությունները: Այն ապահովվեց մեր ժողովրդի միասնությամբ: ՍՍՀՄ ժողովուրդները միահամուռ կերպով հերոսաբար մարտնչում էին ու անձնուրաց աշխատում հանուն իրենց սոցիալիստական հայրենիքի պաշտպանության: Սովետական ժողովրդի հայրենիքի ազատության ու անկախության նվիրական պայքարը վստահորեն ղեկավարում էր լենինյան կոմունիստական կուսակցությունը: Նա մոբիլիզացնում էր ժողովրդի նյութական ու հոգևոր բոլոր ուժերը և ուղղում դրանք թշնամու ջախջախման ու մեծ Հոկտեմբերի նվաճումների պաշտպանությանը:

Կոմունիստական կուսակցության լավագույն ուժերը ֆաշիզմի դեմ մղվող զինված պայքարի առաջավոր գծում էին: Կուսակցությունը դաստիարակել ու առաջ է քաշել զինվորների և զորահրամանատարների հրաշալի համաստեղություն: Բանակում կազմակերպական ու կուսակցական-քաղաքական մեծ աշխատանք էին տանում քաղաշխատողները, որոնց թվում կային կուսակցության ու պետության նշանավոր գործիչներ: Մոտ 2 մլն կոմունիստ զոհվեցին ռազմաճակատում, սակայն պատերազմի վերջում սովետական բանակի շարքերում կար 3,5 մլն կոմունիստ, որը մեր երկրի կոմունիստների 60 տոկոսն էր կազմում:

Ռազմատենչ հակակոմունիստների, դասակարգային թշնամու գաղափարական դիվերսիաների ձևերի և մեթոդների մերկացումը եղել ու մնում է մեր կուսակցության կենսական խնդիրը: ՍՄԿԿ անհրաժեշտ է համարում առավել մեծ ջանքեր գործադրել մերկացնելու երկրորդ համաշխարհային պատերազմի բուրժուական կեղծարարներին: Այդ պայքարը պետք է լինի անզիջում, անողոք, դասակարգային, մարքսիզմ-լենինիզմի դիրքերից: Գաղափարախոսական պայքարում չկան և չեն կարող լինել անտարբերներ: Դա պայքար է հանուն մարդկանց մտքի ու սրտի, նրանց դասակարգային գիտակցության:

ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևն ասաց. մենք պետք է հարյուր միլիոնավոր մարդկանց պարզաբանենք ճշմարտությունը սոցիալիստական հասարակության, սովետական ապրելակերպի, մեր երկրում կոմունիզմի կառուցման մասին: Եվ այս բանը պետք է անել համոզիչ, մատչելի և ցայտուն կերպով (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 121):

Ահա թե ինչու երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիստական Գերմանիայի ու նրա դաշնակիցների ջախջախման գործում Սովետական Միության վճռական դերի ճիշտ, գիտական բացահայտումն ունի քաղաքական ակտուալ նշանակություն:

# ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՃԸ ԵՎ ԵՐԿՐԱԳՆԴԻ ՍՆՆԴԻ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԸ

**Լ. Վ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Հայաստանի բնության պահպանության ընկերության նախագահության նախագահի տեղակալ, կենսաբանական գիտու թյունների դոկտոր

Գոյության կռվում բուսական և կենդանական օրգանիզմներն իրենց տեսակը պահպանում են առասպելական արագությամբ բազմանալու ունակության շնորհիվ: Էրիգերոնի մեկ բույսը տարվա ընթացքում կարող է տալ մինչև 120 հազար, սովորական ծխախոտը՝ 350 հազար, դեսկուրանիան՝ 730 հազար սերմ: Պոլիպորուս կոչվող սունկը տարեկան տալիս է մինչև 11 միլիարդ, իսկ լիքոպերդոնը՝ 7 տրիլիոն սպոր: Եթե սովորական խատուտիկի բոլոր սերմերը ծլեին, ապա տասներորդ սերնդում այնքան խատուտիկ կաներ, որ դրանց կողք-կողքի տեղավորելու համար անհրաժեշտ կլիներ երկրագնդի մակերեսից 15 անգամ ավելի մեծ տարածություն:

Իրականում անբարենպաստ պայմանները, հիվանդությունները, վնասատուները, պարազիտները, գիշատիչները խիստ կրճատում են պոպուլյացիաների աճը, որով և դրանց քանակը բնության մեջ պահպանվում է նորմալ սահմաններում: Գիշատիչները, կեր որոնելով, հարձակվում են խոտակեր կենդանիների վրա և, այդպիսով, սահմանափակում դրանց աճը: Հակառակ դեպքում խոտակեր կենդանիները, չափից ավելի բազմանալով, կոչնչացնեին ողջ բուսականությունը, հողերն էրոզիայի կենթարկեին և, այդպիսով, կխախտվեր բնության ներդաշնակությունը: Բանն այն է, որ ամեն մի հողատարածություն կերակրում է միայն որոշակի քանակությամբ կենդանիներ, դրանով չի խախտվում արածեցման պարբերականության և բուսականության վերականգնման ժամկետի միջև եղած հավասարակշռությունը: Երբ գիշատիչներն այնքան են բազմանում, որ դրանց որսը նվազում է, ապա, դրան համապատասխան, պակասում են նաև իրենք՝ գիշատիչները: Երբ որևէ կենդանի կամ բույս ազատվում է իր բնական թըշնամիներից, կամ տարվում այնպիսի միջավայր, ուր այդպիսիք չկան, ապա այն բազմանում է պոպուլյացիոն պայթման եղանակով՝ գրավելով հսկայական տարածություններ: Հիշենք ճագարների Ավստրալիա փոխադրելը կամ ջրային հիացինտի աղետալի տարածումը արևադարձային ու մերձարևադարձային ջրերում:

Մարդն այսօր բնության մեջ թշնամի չունի: Երկրագնդի ամենահզոր կենդանիներն անգամ նրա համար անվնաս են: Վտանգավոր չեն նաև զանազան վիրուսները, միկրոօրգանիզմներն ու բակտերիաները: Մարդը սահմանափակում է դրանց տարածումը և իսպառ ոչնչացնում. համաճարակները մոլեգնում են միայն երկրագընդի տնտեսապես ու կուլտուրապես թույլ զարգացած, հետամնաց երկրներում: Բնական ոչ մի ուժ մարդուն մասսայական ոչնչացում չի սպառնում: Ուստի, մարդկությունը ներկայումս աճում է աննախընթաց արագությամբ:

Գիտնականները ենթադրում են, որ պալեոլիթի դարաշրջանում երկրագնդի վրա բնակվել է հազիվ 10 միլիոն մարդ: Ամենայն հավանականությամբ, մեր թվարկության սկզբին արդեն բնակչությունը 250—350 միլիոն էր: 1650 տարի անց այն կրկնապատկվեց: Հաջորդ կրկնապատկման համար պահանջվեց ընդամենը 200 տարի: Չնայած համաշխարհային երկու մեծ պատերազմներին ու բազմաթիվ համաճարակներին, երկրի բնակչությունը, 100 տարի անց, նորից կրկնապատկվեց, 1950 թ. մեր մոլորակի վրա արդեն ապրում էր ավելի քան երկու և

կես միլիարդ մարդ։ Այսօր երկրագնդի բնակչությունն անցնում է 3,5 միլիարդից։ Հաշվարկները ցույց են տվել, որ այսուհետև յուրաքանչյուր 30—35 տարին մեկ մեր մոլորակի բնակչությունը պետք է կրկնապատկվի, և 2000 թվականին այն կհասնի 6—7 միլիարդի։ Եվս 100 տարի և այդ թիվը կկազմի արդեն 20 միլիարդ (Н. Тимофеев-Ресовский. Биосфера и человечество, «Курьер Юнеско», январь, М., 1973)։

Ներկայումս աշխարհի բնակչության օրական աճը կազմում է 250 հազար մարդ։ Դա նշանակում է, որ մեկ տարում երկրագնդի վրա ավելանում է 90 միլիոն մարդ։

Ահա թե ինչու ներկայումս ողջ մարդկությանը հուզում է օրըստօրե ավելացող բնակչության սննդի խնդիրը։ Որքա՞ն մարդ կարող է ապրել երկրի երեսին։ Ինչպիսի՞ պոտենցիալ հնարավորություններ ունի դրա համար մեր մոլորակը։

Տարբեր գիտնականներ այս հարցին տարբեր ձևով են պատասխանում։ Կապիտալիստական երկրների մի շարք գիտնականներ այսօր էլ գտնում են, թե շուտով երկրագունդն ի վիճակի չի լինի կերակրելու մարդկությանը, և թե համաշխարհային սովն անխուսափելի է։ Նրանց կարծիքով այդ պահը վրա կհասնի 2000 թվականից անմիջապես հետո կամ նույնիսկ դրանից առաջ։ Մի շարք ֆանտաստ գրողներ (Ֆ. Պոլ, Ս. Կոռնբլատ և ուրիշներ) մռայլ գույներով են նկարագրում մարդկության ապագան. սով, գերբնակչություն, ամայացած բնություն, ամենուր գործարաններ, մեքենաներ, ավտոմատներ, ռոբոտներ... մարդկությունը մեծ մասամբ սնվում է արհեստական նյութերով...

Սակայն, բարեբախտաբար, այս մռայլ ֆոնի վրա վերջին ժամանակներս հրապարակ են եկել մի շարք աշխատություններ, որոնց հեղինակները (П. Дювиньо, М. Танг. Биосфера и место в ней человека, М., 1968, К. де Вит, Продукция растений вчера, сегодня, завтра, «Природа», 1970, М. Осорио де Альмейда, Миф о равновесии в природе, «Курьер Юнеско», январь, М., 1973...), հարցին մոտենում են գիտական տեսանկյունից։ Ի տարբերություն բուրժուական մի շարք գիտնականների (Դադլի Ստամպ, Վան Ստավերեն, Սելտեր), որոնք կարծում են, թե եղած վարելահողերն անհրաժեշտ է կրկնապատկել կամ նույնիսկ եռապատկել, նրանք շեշտը դնում են բերքատվության պրոգրեսիվ բարձրացման վրա, հիմնականում ելնելով բնության պահպանության արմատական շահերից. չէ՞ որ խիստ անհրաժեշտ են նաև անտառները, մարգագետինները, նույնիսկ՝ ճահիճները։

Վիտը միանգամայն իրավացի է. կարևորագույն պայմանը բերքատվության բարձրացումն է։ Սովետական գիտնական, պրոֆ. Կ. Մ. Մալինը գրում է. «...եթե բոլոր կուլտուրաների բերքատվությունը հասցվի առաջավոր երկրների մակարդակին, ապա աշխարհում ներկայումս մշակվող ցանքատարածություններից (1.46 **մլրդ** հեկտար) կարելի է այնքան սննդամթերք ստանալ, որ կբավարարի 10 միլիարդ, իսկ հնարավոր պոտենցիալ ցանքատարածությունից (9.33 **մլրդ** հեկտար)՝ 65 միլիարդ մարդու»։ Ավելի զարգացնելով իր միտքը, նույն հեղինակը նշում է, որ որոշակի պայմաններում երկիրը կարող է կերակրել 2,5—4,0 տրիլիոն մարդու։

Այս հարցին լավատեսորեն է նայում նաև սովետական գիտնական Ն. Տիմոֆեև-Ռեսովսկին։ Նրա հաշվարկները ցույց են տալիս, որ եթե կարողանանք կրկնապատկել երկրագնդի բուսածածկույթի խտությունը, ավելի շատ մշակենք բարձր բերքատու բույսեր, միաժամանակ մեծացնենք ֆոտոսինթեզի օգտակար գործողության գործակիցը (մի բան, որ լիովին հնարավոր է գիտության զարգացման արդի փուլում), ապա երկրագնդի կենսաբանական մթերատվությունը կարելի է ավելի քան տասնապատկել։ Թե որքան են ռեալ այս հաշվարկները, ցույց կտա ապագան։ Սակայն ընթերցողներին առավել կհետաքրքրի ներկա վիճակը։

Ինչպե՞ս է երկրագնդի բնակչությունն ապրում այսօր, ապահովվա՞ծ է արդյոք գոյամիջոցներով։ Այս տեսակետից չափազանց ուշագրավ են սովետական գիտնական Վ. Պ. Կովալևսկու ուսումնասիրությունները, որոնք հարուստ նյութ են տալիս այս հարցի պարզաբանման համար։ Ներկայումս երկրագնդի բնակչության 31 տոկոսը բնակվում է տնտեսապես զարգացած, իսկ 69-ը՝ թույլ զարգացած կամ զարգացող երկրներում։ Ամենապարզ հաշվարկները ցույց են տալիս, որ եթե տնտեսապես զարգացած եվրոպական երկրներում, ինչպես նաև ԱՄՆ-ում, ՍՍՀՄ-ում, Ավստրալիայում, Նոր-Զելանդիայում բնակչության կենսամակարդակը բավական բարձր է, ապա զարգացող մի շարք երկրներում (Լատինական Ամերիկա, Աֆրիկա, Արևելյան և Հարավային Ասիա) սովի վտանգ կա։ Շատ ժողովուրդներ մատնված են խրոնիկական սովահարության, թերասնման։ Հատկապես ուժգին է արտահայտվում կենդանական ծագում ունեցող սննդի պակասը՝ սպիտակուցային սովը։

Մարդու նորմալ գոյության համար օրական



անհրաժեշտ է 2.400 կիլոկալորիա։ Նման նորմայի դեպքում մարդկությանը հարկավոր կլինի տարեկան 2,7.$10^{15}$ կիլոկալորիա։ Բայց կենսոլորտը մարդկությանը տալիս է 2,6.$10^{15}$ կիլոկալորիա, այսինքն զգալիորեն պակաս, քան պետք է համեստ կենսամակարդակն ապահովելու համար (տե՛ս В. П. Ковалевский, «Человечество и продовольственные ресурсы», М., «Природа», 1969)։

Զարգացող երկրների բնակիչը միջին հաշվով օրական ստանում է 2.150, իսկ տնտեսապես զարգացած երկրներինը՝ 3.050 կիլոկալորիա։ Սակայն դա էլ հարաբերական պատկերացում է, քանի որ զարգացող երկրներում խիստ շերտավորում կա։ Եթե Հնդկաստանի ունևոր բնակիչներն օրական սպառում են 2.900, ապա աղքատները՝ միայն 1.500 կիլոկալորիա։

Սննդամթերքի արտադրության ոլորտում հիմնական գործոնը եղել և մնում է վարելահողը, որը տարեկան տալիս է 4,5.$10^{15}$ կիլոկալորիա, դրանից 2,29.$10^{15}$ կիլոկալորիան սպառում է մարդը։ Այսպիսով, վարելահողերը տալիս են մարդկության սննդի էներգիայի մոտ 88 տոկոսը։ Արոտավայրերից և համաշխարհային օվկիանոսից մարդն ստանում է սննդի էներգիայի 12 տոկոսը, դրանք միաժամանակ, կենդանական սպիտակուցների կարևորագույն աղբյուրն են։

Տնտեսապես թույլ զարգացած երկրները քիչ են մշակում հատիկային կուլտուրաներ։ Գյուղատնտեսության աշխարհագրությունը բացահայտում է, որ տնտեսապես զարգացած երկրները տալիս են հացահատիկային կուլտուրաների արտադրության համաշխարհային ծավալի 65—85 տոկոսը։ Միայն բրնձի մշակությամբ է, որ զարգացող երկրները համաշխարհային մասշտաբով հասնում են բացարձակ առավելության (90 տոկոս)։ Բայց բրինձը հացահատիկային կուլտուրաների համաշխարհային արտադրության ծավալի միայն 24—26 տոկոսն է կազմում։ Ճիշտ է, զարգացող երկրներն արտադրում են մեծ քանակությամբ կակաո, սուրճ, շաքարեղեգն, բանան, արմավ, սակայն դրանք մեծ մասամբ արտահանվում են։ Այստեղ թույլ է զարգացած նաև անասնապահությունը, քանի որ արոտավայրերը բերրի չեն։ Հնդկաստանում է գտնվում աշխարհի խոշոր եղջերավոր անասունների 25 տոկոսը, որի 16 տոկոսն է միայն կաթնատու, ընդ որում, յուրաքանչյուր կովի տարեկան կաթնատվությունը չի անցնում 300—350 լիտրից։

ՄԱԿ-ի տվյալներով մինչև 2.000 թվականը «սովի գոտու» բնակչությունը կհասնի 4,7 միլիարդ մարդու, որը կկազմի երկրագնդի ապագա բնակչության 77 տոկոսը (տե՛ս Կովալևսկու նշված հոդվածը)։ «Սովի գոտում» գնալով նվազում է բնակչության մեկ շնչին ընկնող սննդամթերքի արտադրությունը։ Ներկայումս Լատինական Ամերիկայի և Հարավարևելյան Ասիայի մի շարք երկրներում այն ցածր է նույնիսկ նախապատերազմյան մակարդակից։ Դրա հետևանքով մեծանում է տնտեսապես զարգացած և զարգացող երկրների կենսամակարդակի տարբերությունը։ Եթե առաջին համաշխարհային պատերազմից առաջ Հնդկաստանի մեկ բնակչին բաժին ընկնող միջին եկամուտը ԱՄՆ-ի համանման ցուցանիշից պակաս էր 8 անգամ, ապա երկրորդ համաշխարհային պատերազմից առաջ այդ տարբերությունը հասավ 15-ի։ Ներկայումս ԱՄՆ-ի մեկ բնակչին բաժին ընկնող միջին եկամուտը 50 անգամ գերազանցում է Հնդկաստանի համանման ցուցանիշին (տե՛ս Хосе де Кастро, «Окружающая среда и развитие», М., «Курьер Юнеско», январь, 1973)։

Արտասահմանյան մի շարք տնտեսագետների կարծիքով սոցիալական նման անհավասարություններն ավելի կխորանան 2000 թվականին։ Նրանք գտնում են, որ այդ ժամանակաշրջանում զարգացած երկրների բնակչության մեկ շնչին ընկնող միջին եկամուտը կհասնի տարեկան մինչև 10 հազար դոլարի, այն ժամանակ, երբ ամբողջ մարդկության ավելի քան երկու երրորդին բաժին կընկնի հազիվ 400 դոլար (վերջին ցուցանիշը ԱՄՆ-ի ներկա կենսամակարդակից 10 անգամ պակաս է)։ Եվ դա համարվում է «լավատեսական հույսերի սահման» (Барбара Уорд. Только одна земля, М., «Курьер Юнеско», январь, 1973)։ Դրան համաձայնել մենք չենք կարող։ Ըստ երևույթին կապիտալիստական երկրների տնտեսագետները թերագնահատում են զարգացող երկրների բնական հզոր ռեսուրսները, նրանց պոտենցիալ հնարավորությունները և այդ երկրներում տեղի ունեցող սոցիալ-տնտեսական մեծ փոփոխությունները։

Արդ, որո՞նք են սովի վերացման հիմնական ուղիները։ Նախ՝ սննդամթերքի արտադրության տեմպերը պետք է զգալիորեն գերակշռեն բնակչության աճին։ Ուստի, անհրաժեշտ է անհապաղ լուծել բերքատվության շեշտակի բարձրացման խնդիրը։

Պ. Դյուվինյոն և Մ. Տանգը պարզել են, որ ներկայումս երկրային բոլոր էկոսիստեմներում խիստ ցածր է ֆոտոսինթեզի արդյունավետությունը և, հետևապես՝ նախնական մթերատվությունը։ Միանգամայն ռեալ հաշվարկների

հիման վրա նրանք եկել են այն համոզման, թե «...անտառներն են անող բնակչության սննդի ամենահուսալի աղբյուրը», քանի որ դրանք տալիս են երկրագնդի վրա սինթեզվող օրգանական նյութերի երկու երրորդը՝ տարեկան 28,4 **մլրդ** տոննա, իսկ մշակովի բոլոր հողերը միասին՝ ընդամենը 8,7 **մլրդ**, երկրագնդի բոլոր տափաստաններն ու մարգագետինները՝ 10,4 մլրդ տոննա սինթեզվող օրգանական նյութ: Առավել ցածր է մյուս էկոսիստեմների մթերատվությունը, ընդ որում, անապատներինը 5,4 միլիարդ տոննա է. բևեռային գոտիները մթերատու չեն, իսկ համաշխարհային օվկիանոսը, որը երկու անգամ գերազանցում է ողջ ցամաքի տարածությունը, տալիս է ընդամենը 30 միլիարդ տոննա սինթեզվող օրգանական նյութ, ընդ որում, մթերատվությունն այստեղ այնքան ցածր է, որ ածխածնի պարունակությունը յուրաքանչյուր քառակուսի մետրի վրա հասնում է օրական 0,1 տոննայի (տե՛ս П. Дювиньо, М. Танг, Биосфера и место в ней человека, М., «Прогресс», 1968):

Այս ցուցանիշների հիման վրա կարելի է հաշվել կենսաոլորտի ընդհանուր տարեկան մթերատվությունը, որը կազմում է 83 միլիարդ տոննա օրգանական նյութ (տե՛ս Л. Ф. Правдин, Леса будущего, М., изд. «Знание», серия Биология, № 11, 1971):

Եթե հաշվարկների ու արտահայտված կարծիքների հիման վրա ընդունենք, որ ամեն տարի ֆոտոսինթեզի պրոցեսում $5\times10^{16}$գ ածխածին անօրգանական վիճակից անցնում է օրգանականի (ածխաջրեր), ապա դա համապատասխանում է $4\times10^{17}$ կիլոկալորիա լուսային էներգիայի կուտակմանը: Քանի որ երկրագնդի մակերևույթն արեգակից ստանում է $5\times10^{20}$ կիլոկալորիա, ապա ֆոտոսինթեզի արդյունավետությունը կազմում է

$$\frac{4\times10^{17}}{5\times10^{20}}\times100=0{,}1 \text{ տոկոս:}$$

Նշանակում է, կարելի է պնդել, որ բույսերը կլանում են արեգակնային էներգիան 0,1 տոկոսից մինչև 1,0 տոկոս արդյունավետությամբ: Հետևաբար, մարդու խնդիրն է՝ փընտրել նոր մեթոդներ՝ բարձրացնելու գյուղատընտեսական կուլտուրաների ֆոտոսինթետիկ արդյունավետությունը: Մյուս կողմից՝ պետք է պահպանել և ընդարձակել երկրագնդի անտառները, որպես սինթեզվող օրգանական նյութի ամենաարդյունավետ էկոսիստեմ:

Նույն տեսակետն է արտահայտում նաև Կ. դը Վիտը. ուսումնասիրելով Նիդեռլանդների փորձը՝ նա գտնում է, թե համաշխարհային մասշտաբով հնարավոր է անշեղորեն բարձրացնել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը: Ներկայումս Նիդեռլանդներում մեկ հեկտար վարելահողը տալիս է 50 միլիոն կիլոկալորիա, որը կարող է կերակրել 50 մարդու: Արևադարձներում, գրում է Վիտը, որտեղ բուսական ֆոտոսինթեզի առավելագույն արագությունը տարեկան 1.200 g/հեկտար է, մեկ հեկտարը կարող է կերակրել 120 մարդու: Պարզվում է, որ ներկայիս սովի գոտին պոտենցիալ հնարավորություն ունի լիարժեք կերակրելու ո՛չ միայն իր բնակչությանը: Բացի այդ, այստեղ կան սննդամթերքների արտադրության ավելացման շատ հնարավորություններ: Սակայն, ցավոք, դեռևս վատ են ուսումնասիրված արևադարձային երկրագործության հիմնական օրենքները (հողի մշակություն, պարարտացում, ցանքաշրջանառություն և այլն):

Ի վերջո, հեղինակը հանգում է այն հուսադրող հետևության, որ գյուղատնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ռացիոնալ արմատավորմամբ բերքատվությունը կարելի է այնքան բարձրացնել, որ ներկա ցանքատարածությունների հաշվին կերակրվի մոտ 300 անգամ ավելի շատ մարդ, քան այսօր, այսինքն՝ 1 տրիլիոն բնակիչ:

Ինչպես արդեն ասացինք, մենք դեմ ենք վարելահողերի, ցանքատարածությունների պրոգրեսիվ ավելացմանը: Այդ, թերևս, կարելի է անել միայն անապատների ու կիսաանապատների նվաճման հաշվին, որը, ի դեպ, չափազանց մեծ կապիտալ ներդրումներ է պահանջում: Սակայն երբեք չպետք է ցանքատարածությունների ընդարձակման նպատակով հատել անտառները, ոչնչացնել տափաստաններն ու մարգագետինները, անգամ ճահիճները: «Չի կարելի չափից ավելի գայթակղվել բնության նկատմամբ տարած մեր հաղթանակներով,— գրում է Էնգելսը:— Նման յուրաքանչյուր հաղթանակի համար բնությունը մեզնից վրեժ է լուծում: Այդպիսի ամեն մի հաղթանակ, իհարկե, առաջին հերթին, ունի մեր կողմից կանխամտածված հետևանքները, սակայն երկրորդ և երրորդ հերթին դրսևորվում են բոլորովին այլ, չնախատեսված հետևանքներ, որոնք շատ հաճախ ի չիք են դարձնում առաջինի նշանակությունը»:

Իսկ բնության պահպանության մեծ գիտակ, շվեյցարացի գիտնական Ժ. Դորստը այդ առթիվ գրում է. «Մարդուն ավելի ձեռնտու է չխախտել բնության հավասարակշռությունը, այն միշտ պահպանել բնական մակարդակի վրա: Չի կարելի ամենուրեք վերափոխել բնությունը, ոչնչացնել նրա բնական հարստություններն միայն ու միայն արեգակի էներգիան ցորենի, բրնձի կամ բամբակի վերածելու համար»:

Այդ տեսակետին են նաև սովետական ակադեմիկոսներ Ի. Պ. Գերասիմովը և Ե. Կ. Ֆյոդորովը, որոնք 1963 թ. փետրվարին ՄԱԿ-ի տեխնիկայի և գիտության կոնֆերանսում հայտարարեցին, որ ներկայումս երկրագնդի՝ էրոզիայի ենթարկված հողերն արդեն կազմում են 600—700 միլիոն հեկտար, այսինքն՝ մշակվող ամբողջ վարելահողերի կեսը: Դրանց մի մասն արդեն «մեռյալ» է համարվում և դուրս է մնացել գյուղատնտեսական օգտագործման բնագավառից:

Սովի դեմ պայքարի մյուս ուղին սննդի նոր աղբյուրների որոնումն է: Ներկայումս գիտնականների ուշադրությունը բևեռված է օվկիանոսային ջրիմուռների վրա: Միաբջիջ ջրիմուռ կանաչուկի (խլորելա) վրա կատարված փորձը ցույց է տալիս, որ մարդկության սննդի հուսալի ռեզերվներից է այն: Լավ լուսավորված ջրում խլորելան արագ կիսվում է 4, 8, 16 մասերի: Մեկ լիտր ջրից օրական ստացվում է մինչև 55 գրամ չոր մթերք: Մարդու օրական սննդի համար բավական է դրա 500 գրամ չոր մասսան: Մյուս կողմից՝ այս ջրիմուռը պարունակում է մարդու օրգանիզմին անհրաժեշտ համարյա բոլոր սննդանյութերը: Բավական է նշել, որ սպիտակուցների պարունակությամբ խլորելայի 1 հեկտարի բերքը հավասարազոր է 25 հեկտար ցորենի բերքին: Ամերիկայում և Ճապոնիայում արդեն ստեղծվել են հատուկ գործարաններ, որոնք մեծ քանակությամբ կանաչուկի մասսա են արտադրում: Ավելի մեծ գործարան է կառուցվում Միսիսիպի գետի դելտայում, այն օրական կարտադրի 300 տոննա խլորելա, որը կպարունակի 50 տոկոս սպիտակուց: Գործարանի տարեկան արտադրանքը համարժեք է 35 հազար տոննա տավարի մսի: Դա կապահովի 3 միլիոն մարդու սպիտակուցի պահանջմունքը: Խլորելայի մյուս առավելությունն այն է, որ հումքի արտադրության գործարաններ կարելի է հիմնել բաց ծովերում և օվկիանոսներում, բերքատու դարձնելով նույնիսկ այդ անօգտագործելի տարածությունները:

Սակայն խլորելան այս տեսակետից միակ նորույթը չէ: Ֆրանսիացի քիմիկոսներն ուսումնասիրել են Աֆրիկայի Չադ լճում աճող կապտականաչ մի ջրիմուռ, որը պարունակում է ածխաջրեր, սպիտակուցներ, ճարպեր, $A_1$, $B_{12}$ և C վիտամինները, այսինքն՝ սննդի համար անհրաժեշտ բոլոր բաղադրամասերը: Ընդ որում, այս ջրիմուռը ևս բարձր բերքատու է. մեկ տարում մեկ հեկտար ջրային մակերեսը կարող է տալ 42 տոննա սննդարար զանգված (ցորենի բերքատվությունը կազմում է 2,5—3,0 տոննա): Չադ լճի սահմանակից աֆրիկական պետությունների բնակիչները դեռ հնուց այս ջրիմուռներն օգտագործել են իբրև սնունդ:

Վերջին տարիներին երկրագնդի սննդային ռեսուրսները շարունակում են համալրվել նոր նյութերով: Պարզվել է, որ մի շարք լճերի հատակին տիղմի փոխարեն աստիճանաբար կուտակվում է չափազանց արժեքավոր և սննդարար օրգանական նյութ՝ սապրոպելը, որը կազմված է ածխաջրերից, ճարպերից և սպիտակուցներից: Ճապոնիայում սապրոպելի բարձրորակ տեսակներն օգտագործվում են որպես սնունդ, համեմատաբար ցածրորակները՝ անասնակեր, իսկ անորակները՝ օրգանական պարարտանյութ: Մի շարք երկրներում սապրոպելն օգտագործում են հրուշակեղենի արտադրության մեջ՝ որպես ժելատինին և ագարին փոխարինող նյութ: Առայժմ մարդկությունն աննշան չափով է օգտագործում սապրոպելը, սակայն հսկայական պաշարների շնորհիվ այն մեծ ապագա է խոստանում (տե՛ս Н. Тимофеев-Ресовский, Биосфера и человечество, «Курьер Юнеско», январь, М., 1973):

Որոնումները շարունակվում են: Կասկածից վեր է, որ մոտ ժամանակներս ականատես կլինենք նոր հայտնագործումների, որոնք հուսալի ռեզերվ կլինեն մարդկության սննդի համար:

Մեծ հույս է ներշնչում նաև սինթետիկ սընունդը: Ամենամոտ ժամանակներում նավթից և այլ նյութերից ստացված արհեստական միսը, խավիարը, կաթը և մյուս սննդամթերքները կարևոր տեղ կգրավեն մարդու սննդի օրաբաժնում: Այս տեսակետից, հատկապես, ուշագրավ են սովետական քիմիկոս-գիտնականների նվաճումները:

* * *

Մեր երկրում, ժողովրդական տնտեսության անշեղ վերելքի, գիտատեխնիկական հեղափոխության ծավալման, սովետական ժողովրդի նյութական ու կուլտուրական պահանջմունքների անման պայմաններում, համապետական կարևորագույն խնդիրներից են բնության պահպանությունը, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը: Դրանով է պայմանավորված ժողովրդատնտեսական պլանների հաջող կատարումը, ներկա և ապագա սերունդների բարեկեցությունը: Սոցիալիստական սիստեմը ՍՍՀՄ-ում, արտադրամիջոցների համաժողովրդական սեփականությունը բարենպաստ պայմաններ են ստեղծում բնական ռեսուրսնե-

րի արդյունավետ օգտագործման, բնության պահպանության ուժեղացման համար: Այդ հարցերը կարգավորված են ՍՍՀ Միության և Հայկական ՍՍՀ օրենսդրությամբ, ինչպես և բնության պահպանության և բնական հարստությունների ռացիոնալ օգտագործման վերաբերյալ կուսակցության ու կառավարության համապատասխան որոշումներով:

ՍՄԿԿ XXIV համագումարը մի շարք կոնկրետ խնդիրներ է նշել բնության պահպանության բարելավման և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման վերաբերյալ: ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների սովետը այդ հարցին նվիրված որոշում են ընդունել 1972 թ. դեկտեմբերին՝ «Բնության պահպանությունն ուժեղացնելու և բնական ռեսուրսների օգտագործումը բարելավելու մասին»:

Հայկական ՍՍՀ-ում բնության պահպանության ու հետագա բարելավման և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման միջոցառումներին էր նվիրված այս տարվա մայիսին կայացած ՀՍՍՀ ութերորդ գումարման գերագույն սովետի հինգերորդ սեսիան: Վեր հանելով այդ մարզում ձեռք բերված նվաճումները, բացահայտվեցին թերություններն ու թերացումները, դրանց վերացման ուղիները, տարբեր կազմակերպությունների անելիքները: Այստեղ հանգամանորեն անդրադարձան հողերն էրոզիայից պահպանելու, մաքրման հատուկ հարմարանքների ստեղծմամբ օդային ու ջրային ավազանների աղտոտումը կանխելու, ջրօգտագործման, ջրամատակարարման հարցերին. մեծ են անելիքները և անտառների վերարտադրության, դրանց ջրապաշտպան ու դաշտապաշտպան ֆունկցիաների ընդլայնման, բուսական ու կենդանական աշխարհի պահպանման, վերարտադրության մարզում. հարկ է մշակել մթնոլորտի աղտոտումը կանխող արդյունավետ միջոցներ, հսկել քիմիկատների ճիշտ օգտագործմանը, փոխարինելով դրանք կենսաբանական պայքարի նոր մեթոդներով: Այս ամենին հասնելու համար անհրաժեշտ է գիտնականների, ինժեներա-տեխնիկական աշխատողների, քիմիայի, գունավոր մետալուրգիայի, ավտոտրանսպորտի, էներգետիկայի և հանրապետության արդյունաբերության մյուս ճյուղերի ինստիտուտների ու ձեռնարկությունների կոլեկտիվների համատեղ աշխատանքը:

Առաջնահերթ են գիտությունների ակադեմիայի բնության պահպանության գիտական խորհրդի անելիքները, քանի որ այն դարձել է այդ ասպարեզում ծավալվող գիտական հետազոտությունների կոորդինացման, գիտականորեն հիմնավորված պայքարի կազմակերպման կենտրոն:

Մեծ է և մի շարք հասարակական կազմակերպությունների, մամուլի, հեռուստատեսության դերը հանրապետության բնական ռեսուրսների պահպանման, բնության նկատմամբ հոգատար վերաբերմունքի արմատավորման, բուսական, կենդանական աշխարհի պահպանման, խելացի օգտագործման, ողջ ժողովրդի շահերին ծառայեցնելու գործում: Այդ խնդիրների, կուսակցության ու կառավարության որոշումների կենսագործմամբ զգալիորեն կբարելավվեն բնության պահպանությունն ու բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը: Դրա հետ մեկտեղ նշանակալիորեն կավելանա նաև տարբեր էկոսիստեմների կենսաբանական մթերատվությունը:

Սակայն բավարարվել այդքանով չենք կարող: Մեր հանրապետության տարածքը շատ փոքր է, իսկ ազգաբնակչության խտությունը՝ մեծ (որոշ շրջաններում այն կազմում է 350—360 մարդ մեկ քառակուսի կիլոմետրի վրա): Մեծ է նաև բնակչության բնական աճը: Հայկական ՍՍՀ-ն երկրագնդի այն շրջաններից է, որտեղ, բնակչության ինտենսիվ աճից ելնելով, լրջորեն պետք է մտածել մոտ ապագայի մասին:

Հայկական լեռնաշխարհի աշխարհագրական դիրքը և բնա-պատմական պայմանները բացառիկ նպաստավոր են բնական ռեսուրսների արդյունավետ օգտագործման համար: Սակայն արդյունաբերական ձեռնարկությունների և տրանսպորտի կողմից օդ արտանետվող գազերը, փոշին, ծուխը այստեղ ստեղծել են այնպիսի վիճակ, որ նկատելիորեն նվազել է արեգակնային ճառագայթման ինտենսիվությունը: Դրա հետևանքով պակասել է նաև բույսերի ֆոտոսինթետիկ ակտիվությունը: Հաճախ կարելի է ականատես լինել, թե ինչպես բույսերի տերևները ծածկվում են արդյունաբերական փոշով, որը նվազեցնում է ասիմիլյացիոն մակերեսը, պակասեցնում բույսերի բերքատվությունը:

Բացի դրանից, ինչպես հայտնի է, ներկայումս Հայկական ՍՍՀ-ի բնական լանդշաֆտներն ուժեղ դեգրադացիայի են ենթարկված, որի հետևանքով խիստ պակասել է բուսածածկույթի ընդհանուր խտությունը: Ներկայումս մեր հանրապետությունում անտառները զբաղեցնում են ընդհանուր տարածքի ընդամենը 9,5 տոկոսը: Սակայն անհրաժեշտ է նշել, որ դրանք լիարժեք անտառներ չեն. անխնա հատումների հետևանքով դրանց մեծ մասը վեր է ածվել նոսր անտառների: Մոտավորապես նույն վիճակում են նաև մարգագետիններն ու տափաստանները:

Անձրևներից, հեղեղներից, ձնհալից առաջացած ջրային հոսանքներն ամեն տարի մեզ մոտ ողողում են մոտ 20 միլիոն տոննա հող: Եթե 1952 թ. մեր վարելահողերը կազմում էին 648 հազար հեկտար, ապա 1969 թ. դրանք կրճատվելով հասան 450 հազարի (տե՛ս Մ. Մ. Սիմոնյան, **Հողի էրոզիայի դեմ պայքարի մի քանի ագրոտեխնիկական միջոցառումների մասին,** «Հայաստանի բնություն», պրակ. 17—18, 1971, Երևան): Ահա այս հարցն է, որ պետք է անհանգստացնի մեզ: Եթե մեզ հաջողվի նորից մշակովի դարձնել դրանք, ապա երկրագնդի բնակչությունը կստանա սննդամթերքի արտադրության հզոր բազա, ինչպես նաև կլուծվեն բնության պահպանության խիստ այժմեական ու կարևոր մի շարք հարցեր:

Միաժամանակ չպետք է մոռանալ, որ երկրագնդի վրա կան հողատարածություններ, որոնք պիտանի չեն երկրագործության համար: Դրանք, այսպես կոչված՝ մարգինալ գոտիներ են: Հայաստանում ևս կան այդպիսի հողեր. դրանք գտնվում են թեք լանջերում կամ ծածկված են մարգագետնային ու անտառային բուսականությամբ: Այդ գոտիները խնամքի, պահպանության խիստ կարիք ունեն:

Հայկական ՍՍՀ-ի կոլտնտեսություններին ու սովխոզներին պատկանող 1.3 միլիոն հեկտար հողատեսքերից մոտ 800 հազարը այս կամ այն աստիճանի էրոզիայի է ենթարկված, այդ թվում 250 հազար հեկտար վարելահող: Եվ դա այն դեպքում, երբ մեր հանրապետությունում բնակչության մեկ շնչին ՍՍՀՄ-ի միջին ցուցանիշներից 4 անգամ պակաս վարելահող է բաժին ընկնում: Հաշվարկները ցույց են տըվել, որ էրոզիայի ենթարկված վարելահողերից ստացվում է գյուղատնտեսական կուլտուրաների խիստ ցածր բերք: Այսպես՝ հացահատիկային կուլտուրաների միջին բերքը չի գերազանցում 5—8 ցենտներից, իսկ խոտհարքներում ու մարգագետիններում խոտի մեկ հեկտարինը չի անցնում 2—5 ցենտներից, որը 5—6 անգամ պակաս է էրոզիայի չենթարկված արտերից ստացված բերքից (տե՛ս Ս. Ապատյան, **Էրոզիայի դեմ պայքարը կարևորագույն պետական խնդիր է,** «Հայաստանի բնություն», պրակ 17—18, 1971): Ցածր է բերքատվությունը նաև էրոզիայի չենթարկված հողամասերում. այն հազիվ կազմում է 12—13 ցենտներ (տե՛ս Ежегодник Большой советской энциклопедии, М., 1968), մինչդեռ առաջավոր տնտեսություններն ստանում են 60—62 ցենտներ, իսկ մի շարք տնտեսություններ (Վրացական ՍՍՀ-ի հարևան շրջաններում)՝ մինչև 86 ցենտներ աշնանացանի բերք:

Ներկայումս ամենակարևորը բույսերի կենսաբանական մթերատվության բարձրացման խնդիրն է: Ինչպես հայտնի է, ՍՍՀՄ-ում արեգակնային ճառագայթումն ամենաբարձրն է մեզ մոտ: Այսպես՝ Երևանում, այն կազմում է 1,46 **կալ/սմ²** մեկ րոպեում, այն ժամանակ, երբ Թբիլիսիում 1,32 է, Տաշքենդում՝ 1,34 **կալ/սմ²**: Այս հանգամանքը չափազանց մեծ հնարավորություններ է ընձեռում արեգակնային էներգիան ռացիոնալ կերպով ի սպաս դնելու բույսերի կենսաբանական մթերատվության բարձրացմանը:

Եթե այս եղանակով 4—5 անգամ մեծացնենք բույսերի կողմից կլանվող արեգակնային էներգիան, ինչպես և ֆոտոսինթեզի օգտակար գործողության գործակիցը, իսկ մեծ կենսաոլորտային շրջանառության արդյունավետությունը մեծացնենք ևս 3—4 անգամ, ապա մեր հանրապետության էկոսիստեմների ընդհանուր մթերատվությունը մոտ ապագայում կավելանա տասնյակ անգամ: Դրան կարելի է ավելացնել նաև մեր հարուստ ֆլորայի նորանոր տեսակների ընդգրկումը սննդի մեջ, ներկայումս անօգտագործելի հողերի յուրացումը, գյուղատնտեսության համար ոչ պիտանի հողատեսքերի վրա հիդրոպոնիկ ու ջերմատնային խոշոր տնտեսությունների հիմնումը և այլն: Այս բոլորը հիմք են տալիս հուսալու, որ նույնիսկ մեր փոքրիկ հանրապետությունը, իր սահմանափակ հնարավորություններով, ի վիճակի է կերակրելու ավելի մեծ թվով մարդկանց, քան ներկայումս:

Ինչպես ցույց են տվել մեր հաշվարկները, գիտության զարգացման ներկա մակարդակում իսկ հնարավոր է մեր հանրապետության բուսականության խտությունն ավելացնել 2—3 անգամ: Դրանով իսկ մեծապես կավելանա բուսածածկույթի կենսաբանական արտադրողականությունը: Եթե ամենուրեք տարբեր էկոսիստեմներում աճեցնենք միայն բարձր մթերատու բույսեր, ապա այդ թիվը կարելի է և կրկնապատկել ու եռապատկել: Դրա հետ մեկտեղ կաճի ու կբազմանա նաև կենդանական աշխարհը, որն ավելի շատ սնունդ ստանալով՝ կդառնա առավել մթերատու:

Ինչպես տեսնում ենք, բնակչության հետագա աճը և մարդկության ապահովումը սննդամթերքով՝ սերտորեն կապված են բնության պահպանության կարևորագույն խնդիրների հետ: Մարդը, որպես բնության բարձրագույն բանական էակ, բանիմաց, խելացի համագործակցելով բնության ուժերի հետ, չանտեսելով նրա օրենքները, կապահովի իր տեսակի պահպանումը, ծաղկումն ու բարգավաճումը:

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋՄՂԻՉ ՈՒԺԸ

**Հ. Ս. ՀԱԿՈԲՅԱՆ**
ՀԿԿ Արագածի շրջկոմի առաջին քարտուղար

Արագածի շրջանը բարձր լեռնային է։ Նրա էկոնոմիկայի հիմքը գյուղա-
տնտեսությունն է, հիմնական առաջատար ճյուղը՝ անասնապահությունը։ Ար-
տադրության մյուս ճյուղերը ծառայում են վերջինիս զարգացմանը։ Այդ նպա-
տակով շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում գործնական քայլեր
են արվում բուսաբուծության արտադրության ճիշտ կազմակերպման, հողերի
ռացիոնալ օգտագործման ու պարարտացման, ցանքաշրջանառության հետևո-
ղական կիրառման, աշխատատար բոլոր պրոցեսների մեքենայացման հա-
մար։ Տնտեսությունների կազմակերպական ամրապնդումը, գյուղատնտեսա-
կան տեխնիկայի ու պարարտանյութերի անխափան մատակարարումը կապա-
հովեն հանրային անասնաբուծության արագ աճը։

Այսօրվա դրությամբ բնակչության մեկ շնչին ընկնող գյուղատնտեսական
արտադրանքի քանակով շրջանը հանրապետությունում գրավում է առաջնակարգ
տեղերից մեկը։ Մեր տնտեսությունները դարձել են մեքենայացված գյուղա-
տնտեսական ձեռնարկություններ։ Սովխոզներում և Վարդաբլուրի կոլտնտե-
սությունում լիովին մեքենայացվել են վարը, հողի նախացանքային մշակու-
թյունը, հացահատիկային և սիլոսային կուլտուրաների բերքահավաքը և այլ
աշխատանքներ։ Արտադրության աճը հնարավորություն է ընձեռում փոխել
բնակավայրերի կուլտուրական դեմքը։

Ուրախալի է, որ շրջանի աշխատավորության առօրյան հարուստ է հայրե-
նանվեր գործերով ու լավ նախաձեռնություններով։ Մեր մարդիկ խանդավա-
ռությամբ ընդունեցին ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված ՍՄԿԿ
Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի հոբելյա-
նական հանդիսավոր նիստի ժամանակ Լ. Ի. Բրեժնևի արտասանած ջերմ խոս-
քերը՝ ուղղված երկրի գյուղատնտեսության բնագավառի աշխատողներին.
«...մենք լիակատար հիմունքով կարող ենք ասել, որ մեր երկրի կոլտնտեսու-
թյունների և սովխոզների աշխատավորները, խորապես հասկանալով ժողո-



վրդի կարիքները, կուսակցության կոչին պատասխանում են կոնկրետ գործերով, աշխատանքային սխրանքներով։ Եվ այդ սխրանքները բարձր են գնահատում կուսակցությունը, սովետական ժողովուրդը» («Լենինյան ուղիով», 1973 թ., № 1, էջ 42)։

Մեր շրջանի աշխատավորները ջերմորեն ընդունեցին իններորդ հնգամյակի երրորդ, վճռական տարվա առաջադրանքները կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին կուսակցության և կառավարության որոշումը։ Շրջանի կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպությունները, կոլտնտեսականներն ու սովխոզների բանվորները կոնկրետ սոցիալիստական գործարար մրցություն են ծավալել՝ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները հետևողականորեն կենսագործելու համար։ Դրանց վկայությունը կոլտնտեսությունների և սովխոզների 1973 թ. սոցիալիստական բարձր պարտավորություններն են և անցած ամիսների գոհացուցիչ արդյունքները։ Շրջանի գյուղատնտեսության աշխատողները, ընդգրկվելով սոցմրցման մեջ, խոստացել են այս տարի պլանից դուրս արտադրել 400 տոննա կաթ, 53 տոննա միս, գերակատարել անասունների գլխաքանակի ավելացման, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման առաջադրանքները, ժամկետից շուտ կատարել պետական մթերումների պլանները։ Նախատեսվում է պլանավորված 1.183-ի փոխարեն պետությանը վաճառել 2.100 տոննա հացահատիկ։

Հայրենասիրական նախաձեռնությամբ հանդես եկան Ախուլյայի սովխոզի աշխատողները։ Նրանք կոչով դիմեցին շրջանի սովխոզների բանվորներին, կոլտնտեսականներին և գյուղատնտեսության մասնագետներին ու պարտավորվեցին հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա առաջադրանքները կատարել 125—130 տոկոսով։

Կուսշրջկոմն իր գործունեության առաջին օրից անհետաձգելի խնդիրներից մեկը համարեց սոցիալիստական մրցության պատշաճ կազմակերպումը։ Մենք ամեն կերպ ձգտում ենք, որպեսզի այն լինի գործնական, դառնա նորաստեղծ շրջանի առջև ծառացած տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների լուծման վճռական գործոն, մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը խթանող անհրաժեշտ միջոց։ Կուսշրջկոմը սկզբնական կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրում է մրցության կազմակերպման գործում նկատված թերությունների, տեղ գտած ձևամոլությունների վրա, միջոցառումներ մշակում դրանք վերացնելու համար։

Մրցության կազմակերպման գլխավոր խնդիրներից մեկը նորի և առաջավորի հայտաբերումն ու տարածումն է։ Շրջանի տնտեսությունները որոշ փորձ են կուտակել առաջավոր փորձի պրոպագանդման ասպարեզում։ Այսօր աշխատանքի կազմակերպման առաջավոր փորձի այնպիսի օգտավետ մեթոդներ, ինչպիսիք են արտադրական խորհրդակցությունները, առաջավորների շրջանային հավաքները, սեմինարները, փորձառուների շեֆությունը երիտասարդների նկատմամբ, փոխայցելություն-հաշվետվությունները և այլն, դարձել են շրջանի կուսկազմակերպությունների սեփականությունը։

Կուսշրջկոմի պլենումում, բյուրոյի նիստերում, ակտիվի խորհրդակցություններում պարբերաբար քննության ենք առնում մրցությանն առնչվող, ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքին վերաբերող բազ-

մապիսի հարցեր, ընդհանրացնում մրցության ժամանակ կուտակված առաջա-
վոր փորձը։ Օրինակ, շրջկոմի բյուրոն, քննարկելով Ախուլայի սովխոզի կըթ-
վորուհի, ՍՄԿԿ անդամ Սոֆիկ Հովհաննիսյանի աշխատանքային փորձը, որո-
շեց այն մասսայականացնել շրջանի տնտեսություններում։ Գյուղատնտեսա-
կան վարչությունը հանձնարարվեց կազմակերպել փորձի փոխանակում Ախու-
լայի սովխոզում, ուր դրական շատ բան է արվում անասնապահության վերելքի
ապահովման, մասնավորապես կաթի արտադրության ավելացման համար։
Կթվորուհին արդեն եղել է շրջանի բազմաթիվ ֆերմաներում, պատմել իր փոր-
ձի մասին, նպաստել դրա տարածմանն ու արմատավորմանը։
ձի մասին, նպաստել դրա տարածմանն ու արմատավորմանը։

Անցյալ տարվա դեկտեմբերին կուսշրջկոմի պլենումը, քննության առնելով
«ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի պատվին ծավալված սոցմրցությամբ ըս-
տանձնած պարտավորությունների կատարման ընթացքի մասին» հարցը, նշեց,
որ ձեռնարկված կազմակերպական միջոցները տվել են իրենց դրական ար-
դյունքը. շրջանը հաջողություններ ունի պլան-պարտավորությունների կատար-
ման ասպարեզում։

Սոցիալիստական մրցությանը վերաբերող հարցեր են քննարկվել նաև
շրջանային կուսակտիվի ժողովում, շրջսովետի սեսիայում, սկզբնական կուս-
կազմակերպությունների ընդհանուր ժողովներում։

Շրջանի գյուղատնտեսության աշխատավորները կուսկազմակերպություն-
ների ղեկավարությամբ լայն մրցություն ծավալեցին ի պատիվ ՍՍՀՄ կազ-
մավորման 50-ամյակի։ Այդ մրցությունը տվեց գոհացուցիչ արդյունքներ։
Գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի և պետվաճառքի
պլանները շրջանը կատարեց դեկտեմբերի 5-ին, ժամկետից 25 օր շուտ։ Մեր
մարդկանց հայրենանվեր աշխատանքը գնահատվեց ըստ արժանվույն. 1972 թ.
երրորդ եռամսյակում անասնապահական մթերքների արտադրության և պե-
տությանը դրանց վաճառքի սոցիալիստական պարտավորությունների կատար-
ման գործում ձեռք բերած հաջողությունների համար շրջանն արժանացավ Հա-
յաստանի կոմկուսի Կենտկոմի, Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ
կարմիր դրոշին և առաջին կարգի դրամական պարգևի։
կարմիր դրոշին և առաջին կարգի դրամական պարգևի։

Սոցիալիստական մրցությունն ինքնանպատակ ու ինչ-որ կամպանիա չէ։
«Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին»
ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թ. որոշման մեջ, մրցությունը մշտապես նպատակա-
դրության և պետությանը դրանց վաճառքի ժողովրդատնտեսական պլաններն ու
սոցիալիստական պարտավորությունները գերակատարելու, լավագույն տնտե-
սական ցուցանիշների հասնելու համար։ Իսկ դրա գլխավոր ուղին եղած ռե-
զերվների ու հնարավորությունների պատշաճ օգտագործումն է։ Այդ նպատա-
կով կիրառում ենք զանազան միջոցներ։ Դրանցից մեկը սոցիալիստական
պարտավորությունների կատարման նկատմամբ հասարակական վերահսկո-
ղության իրականացումն է։ Տնտեսություններին անհրաժեշտ օգնություն ցույց
տալու համար անցյալ տարի ստեղծեցինք շրջանային երկու հանձնաժողով,
որոնք ստուգում են դաշտավարական ու անասնաբուծական մթերքների ար-



տադրության և պետությանը դրանց վաճառքի սոցիալիստական պարտավո-
րությունների կատարման արդյունքները։ Հանձնաժողովների կազմում ընդ-
գրկված են կուսակցական, սովետական և կոմերիտական ղեկավար աշխա-
տողներ, գյուղատնտեսության մասնագետներ։

Հանձնաժողովների գործունեությունը չի սահմանափակվում սոսկ ար-
դյունքների ամփոփմամբ։ Նրանք պարբերաբար ստուգում են սովխոզներում և
կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպման վիճակը, գյուղատըն-
տեսական աշխատանքի ամեն մի փուլում հետևում կազմակերպական, ագրո-
տեխնիկական, անասնաբուծական-անասնաբուժական միջոցառումների ժա-
մանակին կատարմանը, տեխնիկայի արդյունավետ օգտագործմանը, օգնում
խորհուրդներով ու առաջարկություններով, ընդհանրացնում աշխատանքի առա-
ջավոր փորձը և տարածում, գործնական հարցադրումներով հանդես գալիս
կուսակցության շրջանային կոմիտեի բյուրոյում։ Ինչպես շրջանի մասշտաբով,
այնպես էլ կոլտնտեսություններում ու սովխոզներում մրցության ընթացքն ու
արդյունքներն ամփոփվում են յուրաքանչյուր ամիս, իսկ առանձին ճյուղերի
աշխատողների համար, ինչպես օրինակ, կթվորների՝ յուրաքանչյուր տասն-
օրյակ։

Կուսկազմակերպությունների բյուրոներում, ժողովներում արդեն ավան-
դույթ են դառնում արտադրության զարգացման հետ կապված կենսական
հարցերի, սոցիալիստական մրցության արդյունքների քննարկումները։ Արտա-
դրության ոլորտում բացահայտված յուրաքանչյուր թերություն քննարկման
առարկա է դառնում կուսակցական ժողովներում։ Կոլեկտիվ կերպով լուծվում
են այս կամ այն բնագավառում ծագած դժվարությունները, մոբիլիզացվում
կոլեկտիվների ուժերը՝ սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավո-
րությունները կատարելու համար։

Շրջանային հանձնաժողովի առաջարկությամբ և տնտեսությունների ցան-
կությամբ կուսշրջկոմի բյուրոն հաստատեց միմյանց հետ սոցիալիստական
մրցության մեջ մտած տնտեսությունների կազմը և մրցության պայմանները։
Գոհունակությամբ պետք է նշել, որ մրցակից տնտեսությունները դառնում են
իսկական բարեկամներ, օգնում միմյանց ո՛չ միայն ստանձնած պարտավորու-
թյունների կատարման, այլև երբեմն առաջացող որոշ դժվարությունների հաղ-
թահարման գործում։ Նմանօրինակ փաստեր շատ կան ինչպես միջսովխոզային
և միջկոլտնտեսային, այնպես էլ միջֆերմային, միջբրիգադային և անհատա-
կան մրցության ասպարեզում։

1972 թ. գարնանը կուսշրջկոմը և շրջսովետի գործկոմը սահմանեցին երեք
փոխանցիկ դրոշներ՝ անասնապահության մթերքների արտադրության և պե-
տական վաճառքի ավելացման, հացահատիկի և կերի կուտակման առաջավոր-
ներին պարգևատրելու համար։ Դրանք համապատասխանաբար հանձնվեցին
Ծաղկահովտի, Ախուլայի և Ալագյազի սովխոզներին։ Ախուլայի սովխոզը,
սոցիալիստական պարտավորությունները կատարելու համար, 1972 թ. աշնանը
արժանացավ նաև ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի պատվին սահմանված
Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, ՀՍՍՀ Գերագույն սովետի, Մինիստրների
սովետի և ՀԱՄԽ-ի հոբելյանական պատվոգրի։

Սոցիալիստական մրցության կազմակերպման ուսանելի փորձ կա Ախու-
լայի, Հնաբերդի, Ալագյազի, Ծաղկահովտի և ուրիշ տնտեսություններում։ Կու-
սակցական ու արհմիութենական կազմակերպությունները, մրցության ար-

դյունքները ամփոփելուց հետո, հրավիրում են արտադրական խորհրդակցություններ, կոլեկտիվների ժողովներ, ուր հրապարակվում են այդ արդյունքները և հանդիսավոր պայմաններում հաղթողներին հանձնվում փոխանցիկ դրոշներ ու հուշադրոշներ, դրամական պարգևներ։ Բարոյական խրախուսանքը սոցմրցության արդյունավետության բարձրացման, արտադրության զարգացման կարևոր գործոն է։ Հաշվի առնելով դրա կարևորությունը, կուսշրջկոմը և շրջսովետի գործկոմը սահմանել են շրջանային պատվոգիրք, ուր գրանցվում են արտադրության ամենաառաջավոր մարդկանց, անբասիր աշխատողների անունները, արտադրության առաջավորների լուսանկարները փակցվում են շրջանային պատվո տախտակին։ Արդեն այսօր կարող ենք թվարկել շրջանի սոցիալիստական մրցության առաջամարտիկներից մի քանիսին, որոնք իրենց ակտիվ աշխատանքով արժանացել են համընդհանուր ճանաչման։ Դրանք են՝ կթվորուհիներ Սոֆիկ Հովհաննիսյանը, Նվարդ Գրիգորյանը, Թուրկե Ունեյանը, Զալիխա Սադոյանը, Էմմա Մանուկյանը, հովիվներ Սամվել Հովակիմյանը, Ջիվան Մուրադյանը, Հովհաննես Եղիկյանը, Ջամալ Խուդոյանը, անասնապահներ Բինբաշ Սադոյանը, Իգրուշ Խաչատրյանը, Անուշկա Մարտիրոսյանը, մեխանիզատորներ Հայկազ Մարկոսյանը, Ալիխան Ուսոյանը, Հայկազ Գալըստյանը և ուրիշներ։

Գյուղատնտեսական արտադրության մեջ աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացումը սոցիալիստական մրցության հաջող ծավալման պայմաններից է։ Ուստի, ճիշտ են վարվում մեր շրջանի այն տնտեսությունների ղեկավարները, կուսկազմակերպությունների քարտուղարները, որոնք յուրաքանչյուր 10 օրը մեկ, որոշելով լավագույն կթվորուհուն, նախապես սահմանած չափի դրամական պարգև են տալիս նրան։ Իհարկե, այս միջոցառումն ինքնանպատակ չէ, շեշտը հիմնականում դրվում է բարոյական խթանման՝ իրենց արդարացրած ձևերի ու մեթոդների վրա։ Հնաբերդի սովխոզն աշխատողներին խրախուսելու համար միայն ընթացիկ տարվա առաջին չորս ամիսների ընթացքում ծախսել է 250 ռուբլի։ Նյութական ու բարոյական խրախուսանքի ներգործման ձևեր են կիրառվում նաև Նորաշենում, Գեղարոտում, Ջամուշլուում և այլ տնտեսություններում։

Աշխատավորության շրջանում մրցությունը ծավալելիս մենք օգտվում ենք ինչպես Միությունում, այնպես էլ մեր հանրապետությունում նախկինում և այսօր լայն տարածում ստացած այնպիսի ձևերից, ինչպիսիք են շաբաթօրյակները, հարվածայինների շարժումը, պայքարը սոցիալիստական և կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների ու հարվածայինի կոչման համար։ Այս տարվա ապրիլի 21-ին շրջանում անցկացված կոմունիստական շաբաթօրյակին մասնակցեց 4.950 մարդ կամ շրջանի բնակչության մոտ 30 տոկոսը, որոնց ջանքերով կատարվեց մոտ 6.000 ռուբլու պայմանական աշխատանք։ Հարկավոր էր տեսնել, թե ինչպիսի խանդավառությամբ էին գործի կպել ծաղկահովտցիներն ու ալագյազցիները, հնաբերդցիներն ու գեղարոտցիները, արդեն 40—45 տարվա կուսակցական ստաժ ունեցող կոմունիստներն ու 20 տարեկան պատանիները։ Դա կարելի է համարել մեր մարդկանց հիմնական հատկանիշներից, մեր այսօրվա խոշոր նվաճումներից մեկը։

Սոցիալիստական մրցության ծավալման ժամանակ մեծ է աշխատավորների գիտակցության և ստեղծագործական ակտիվության նշանակությունը։ Սակայն դա իր արդյունավետությունը կարող է կորցնել, եթե նրանց ցույց



չտրվի անհրաժեշտ ղեկավարություն և ուղղություն։ Ահա թե ինչու շրջանային կուսկազմակերպությունը, նրա սկզբնական օղակները կատարելագործում են այն խթանները, որոնք կարող են ակտիվ աշխատանքի մղել մարդկանց, կազմակերպում, ուղղություն են տալիս նրանց հայրենասիրական նախաձեռնություններին, պրոպագանդում և մասսայականացնում առաջավոր փորձը։

Սոցիալիստական մրցության գործնականությունը նրա մասսայականության, առաջավոր փորձի տարածման, պարտավորությունների սոցիալ-տնտեսական և բարոյական նշանակության պրոպագանդման, աշխատանքի արդյունքների նկատմամբ շահագրգռվածություն ստեղծելու մեջ է։ Սակայն մեզ մոտ նկատվում են դեպքեր, երբ որոշ տնտեսություններում սոցիալիստական մրցության նկատմամբ ցուցաբերում են ձևական մոտեցում, որի պատճառով այն ոչ միայն ինչպես հարկն է չի ծառայում իր նպատակին, այլև ինչ-որ չափով խոչընդոտում է աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը։

Այս տարվա ապրիլին տեղի ունեցած հանրապետական կուսակցական ակտիվի ժողովում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Ե. Քոչինյանը նշեց. «Պետք է մեկընդմիշտ հիշել, որ սոցիալիստական մըրցությունը կազմակերպվում է ո՛չ թե այն բանի համար, որ ստուգումների պահին վերադաս կազմակերպությանը թղթեր հրամցվեն։ Սոցիալիստական մրցությունը միշտ եղել և մնում է աշխատավորների նախաձեռնության զարգացման, արտադրության ռեզերվների հայտաբերման և օգտագործման արդյունավետ միջոց։ Դա մասսաների կենդանի ստեղծագործությունն է և պետք է իրապես լինի մասսաների սեփականությունը»։

Համոզված պետք է ասել՝ որտեղ սոցմրցությունն ամուր հիմքեր ունի և արժանանում է ամենօրյա ուշադրության, այնտեղ ցուցանիշները բարձր են։ Եվ ընդհակառակը, արտադրական պլանների չկատարելը պարզորոշ վկայությունն է այն բանի, որ տվյալ տնտեսության ղեկավարները, կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները ձևական մոտեցում են դրսևորում սոցիալիստական մրցության կազմակերպման նկատմամբ, ըստ էության չեն ըմբռնում դրա մեծ նշանակությունը մեր ընդհանուր առաջընթացի, մեր մարդկանց կենսամակարդակի բարձրացման գործում։ Խոսենք կոնկրետ փաստերով։ Անցյալ տարի Ախուլայի սովխոզը մեկ հեկտարից ստացավ 18,7 ցենտներ հացահատիկի միջին բերք, մինչդեռ նրա հարևան Մելիքգյուղի սովխոզը՝ 8,6 ցենտներ։ Կամ նույն Ախուլայում աշնանացան ցորենի մեկ հեկտարի բերքատվությունը կազմեց 31, իսկ Գեղարոտում, Ծիլքարում, Ջամուշլուում՝ ընդամենը 7,8 ցենտներ։ Ի դեպ, այս երեք տնտեսություններն իրենց հողատարածություններով սահմանակից են Ախուլայի սովխոզին։ Սա, ինչ խոսք, ցածր պատասխանատվության, ագրոտեխնիկական միջոցառումների անբավարար կիրառման, հանքային և օրգանական պարարտանյութերի վատ օգտագործման հետևանք է։

Կամ վերցնենք անասնապահության բնագավառը։ Շրջանն այս տարվա առաջին կիսամյակի մսի արտադրության պլանը կատարել է 132, կաթինը՝ 107,3, ձվինը՝ 150,4 տոկոսով։ Ձեռք բերած հաջողություններն ուրախացնող են և ոգևորող։ Ցուցանիշներն ավելի բարձր կլինեին, եթե բավարար չափով աշխատեին նաև Մելիքգյուղի, Քարվանսարայի սովխոզների մարդիկ, որոնք թերակատարել են իրենց առաջադրանքները, իսկ կուսկազմակերպությունները

սոցիալիստական մրցության մասին հիշում են միայն հաշվետվություններ
ներկայացնելու ժամանակ։ Եվ ահա հետևանքը. Մելիքգյուղի սովխոզը, 1.884
ցենտների փոխարեն, կիսամյակի ընթացքում պետությանն է հանձնել 1.543
ցենտներ կաթ, կամ պլանը կատարել է 82 տոկոսով, իսկ Քարվանսարայինը՝
ընդամենը 20 ցենտներ միս, նախատեսված 61-ի փոխարեն՝ պլանը կատարե-
լով 34 տոկոսով։
Իսկ սոցպարտավորությունն՞երը։ Միայն մրցության նկատմամբ ցուցա-
բերվող անտարբեր վերաբերմունքն է պատճառը, որ վերոհիշյալ տնտեսու-
թյունների ղեկավարները, ինչպես նաև կուսակցական, արհմիութենական,
կոմերիտական կազմակերպությունները կազմակերպչական, քաղաքական-
դաստիարակչական աշխատանքով չեն ապահովել ստանձնած պարտավորու-
թյունների կատարումը։ Այս և մի քանի այլ տնտեսություններում նյութական և
բարոյական խթանները չեն ծառայեցվում սոցիալիստական մրցության ծա-
վալմանը, խախտվում են աշխատանքի արդյունքների նկատմամբ անձնական
շահագրգռվածության սկզբունքները։ Քարվանսարայում, Մելիքգյուղում ու
Գեղաձորում նախատեսված դրամական պարգևները կթվորուհիներին սկսել են
տալ միայն ապրիլին, այն դեպքում, երբ որոշված է եղել պարգևատրել յուրա-
քանչյուր տասնօրյակի արդյունքների համար, այն էլ հանդիսավոր պայման-
ներում։ Պարզ է, որ այս հանգամանքը չէր կարող բացասաբար չանդրադառնալ
բանվորների սոեղծագործական ակտիվության բարձրացման, նրանց ստանձ-
նած պարտավորությունների ժամանակին կատարման վրա։
ՍՄԿԿ Կենտկոմը «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա
բարելավման մասին» որոշմամբ կուսակցական, սովետական, արհմիութենա-
կան, կոմերիտական ու տնտեսական օրգանների առջև խնդիր դրեց՝ «...մրցու-
թյան կազմակերպման ու ղեկավարման պրակտիկայից վճռականորեն արմա-
տախիլ անել ձևամոլություն, բյուրոկրատական աղավաղումների տարրերը,
ըստ ամենայնի բարձրացնել աշխատանքային կոլեկտիվների դերը մրցության
հարցերի լուծման գործում, անշեղորեն իրագործել դրա կազմակերպման լե-
նինյան սկզբունքները՝ հրապարակայնությունը, արդյունքների համեմատումը,
փորձի գործնական կրկնման հնարավորությունը»։
Մեր շրջանի արտադրության մարդկանց լավագույն աշխատանքի օրինակ-
ները հույս են ներշնչում ասելու, որ սովխոզների բանվորները, կոլտնտեսա-
կանները, մեխանիզատորներն ակտիվորեն կծավալեն սոցիալիստական մըր-
ցությունը և հնգամյակի երրորդ՝ վճռական տարում զգալի հաջողությունների
կհասնեն գյուղատնտեսական մթերքների արտադրության, սոցիալիստական
պարտավորությունները պատվով կատարելու ասպարեզում։

# ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾՈՆԸ

Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ

## 1. ՀՅՈՒՍՎՈՒՄ Է ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

«Կիրովականի քիմիական մանրաթելի գործարան»։ Կարդում եմ ռուֆակերտ շենքի ճակատին ու մտնում ներս։ Երկրորդ հարկի ճեմասրահը զարդարված է ցուցադրական բազում միջոցներով։ Մեծադիր վահանակին ագուցված են 1973 թ. սոցիալիստական պարտավորությունները։ Ծանրակշիռ թվեր են։ Հետո ուշադրությունս գրավում են դիագրամները, որոնք պատկերացում են տալիս արտադրանքի ծավալի, աշխատանքի արտադրողականության, ինքնարժեքի, որակի և տեխնիկատնտեսական մյուս կարևոր ցուցանիշների մասին։ 1963 թվականի դիմաց 100 տոկոս է, այսինքն՝ համեմատությունն արված է մեկ տասնյակ տարեկան գործարանի նկատմամբ։ Ու բոլոր ասպարեզներում դինամիկ աճել են թվերը։ 1972-ին ձեռնարկությունն իր նախագծային կարողությունը գերազանցել է 63,7 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում օգուտներն աճել են 81,3, ծավալային թելի համախառն արտադրությունը՝ 110, առաջին տեսակի արտադրանքի քանակը՝ 56,5 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը՝ 2, շահութաբերությունը՝ 2,8 անգամ, ինքնարժեքը իջել է 30 տոկոսով։

Արտաքուստ չոր թվեր են, բայց մեծ խորհուրդ ունեն, հյուսում են ձեռնարկության պատմությունը, պատմում նրա մարդկանց լավ գործերի մասին։

Եվ այսպես, մեկ տասնամյակի ընթացքում քիմիական մանրաթելի գործարանը հասակ է առել, ահագնացել, դարձել ո՛չ միայն հանրապետության, այլև Միության առաջատար ձեռնարկություններից մեկը։ Վեց գույնի ու չորս տարբեր համարի քիմիական մանրաթելեր են թողարկվում այստեղ ու առաքվում Սովետական Միության 125 քաղաքների և արտասահմանյան մի քանի երկրների հասցեով։

## 2. ՋԵՎԵՐԸ ԲԱԶՄԱԶԱՆ ԵՆ

Աշխատանքային լավագույն ավանդույթներ ունի ձեռնարկության կոլեկտիվը. քանիցս մրցանակներ է շահել, աչքի ընկել իր արդյունավետ գործունեությամբ։ Ակնառու հաջողությունների հասնելու գործում հսկայական դեր է խաղացել սոցիալիստական մրցությունը, որն այստեղ համարվում է որպես առաջընթացի կարևոր գործոն։ ՍՄԿԿ XXIV համագումարից հետո այն, ինչպես ամե-

նուրեք, այստեղ ևս ստացավ նոր որակ ու բովանդակություն. դրանում երևան
եկան նոր դրական երանգներ։ Սոցիալիստական մրցության զարգացման ու
կատարելագործման պրոցեսն այժմ էլ շարունակվում է։

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո գործարանի կուսկոմիտեն, արհմիու-
թյան կոմիտեի նախագահությունը և դիրեկցիան մշակեցին սոցիալիստական
մրցության նոր պայմաններ, որտեղ ասվում է. «ՍՄԿԿ XXIV համագումարի
կողմից քիմիական արդյունաբերության աշխատողների առջև դրված խնդիրնե-
րի առավել հաջող լուծման վճռական պայմանը սոցիալիստական մրցության
հետագա զարգացումն է և նրա կազմակերպման կատարելագործումը»։ Հարա-
զատ մնալով այս դրույթին, նրանք կիրառում են մրցության նոր, առաջավոր
ձևեր ու մեթոդներ, մշտապես կատարելագործում դրանք, ծնունդ տալիս նորե-
րին։

Հիմնականը կոլեկտիվ մրցությունն է, որն արտահայտվում է ընդհանուր
գործարանային, միջարտադրամասային, միջհերթափոխային, միջբրիգադային
ձևերով։ Ներգործարանային կոլեկտիվ մրցության մեջ ընդգրկվում են բոլոր
հիմնական ու օժանդակ արտադրամասերը, բաժիններն ու ծառայությունները։
Նրանց միջև մրցությունն անցկացվում է ըստ աշխատանքի բնույթի, տեխնի-
կական հզորության ու սարքավորումների քանակի։ Ըստ այդմ էլ մրցող կոլեկ-
տիվները բաժանվել են երեք խմբի։Առաջին խմբի մեջ մտնում են քիմիական,
մանող, ոլորող, տեսակավորման-փաթեթավորման և ծավալային թելերի ար-
տադրամասերը, երկրորդի մեջ՝ կենտրոնական գործարանային լաբորատորիան,
կենտրոնական նորոգման արհեստանոցը, էլեկտրական, ջրի գոլորշու, սառ-
ցող-չափող սարքերի արտադրամասերը, երրորդի մեջ՝ տարաների, տրանսպոր-
տի, թափոնների վերամշակման փորձնական-փորձարարական արտադրամա-
սերը, տեխնիկական վերահսկողության բաժինը, սարքավորումների մաքրման
կայանը, բակային տնտեսությունը և պահակային ծառայությունը։ Ընդ որում,
տարբեր են նաև այդ խմբերին ներկայացվող պահանջները, պարտավորություն-
ների ցանկն ու ցուցանիշների ծավալը։ Արտադրության բնույթն ինքն է պա-
հանջում որոշակի տարբերակում մտցնել դրանց միջև։ Այսպես, առաջին խմբի
հաղթողից պահանջվում է 17, երկրորդինից՝ 11, երրորդինից՝ 8 ցուցանիշների
անթերի կատարում։

Ըստ արտադրության բնույթի կոլեկտիվ մրցության առավելությունն այն
է, որ յուրաքանչյուր արտադրամաս, բաժին ու ծառայություն սոցիալիստական
պարտավորությունները ստանձնում է իր հնարավորություններին համապա-
տասխան, շահագրգռվածություն հանդես բերում մրցության մեջ, գործնականո-
րեն նպաստում ձեռնարկության ընդհանուր պարտավորությունների կատար-
մանը։

Ներգործարանային կոլեկտիվ մրցությունը հիմք է ծառայում ներարտա-
դրամասային և անհատական մրցության համար։ Համագործարանային մրցու-
թյան պայմաններից ելնելով, արտադրամասերը ևս մշակել են իրենց պայման-
ները։ Ընդ որում, յուրաքանչյուր արտադրամասում մրցությունը յուրատիպ է և
բխում է նրա արտադրության բնույթից, արտադրական օղակների պայմաննե-
րից ու կարողությունից։ Արտադրամասերում ևս մրցությունն անցկացվում է
համանման հերթափոխությունների ու բրիգադաների միջև։ Այսպես, մանող
արտադրամասում մրցությունը կազմակերպվում է երկու խմբով։ Առաջին խմ-
բի մեջ մտնում են մանողների չորս հերթափոխությունները, երկրորդի մեջ՝



բաբինային և ֆիլիերային բաժանմունքները և մեխանիկական ծառայությունը։

Կոլեկտիվ մրցության կարևոր ձև է միջգործարանային մրցությունը։ Առա-
ջատար այս գործարանը մրցման մեջ է Միության համասեռ ձեռնարկություն-
ների հետ։ Նրա մրցակիցներն են Սերպուխովի, Կաունասի, Ֆերգանայի քիմիա-
կան մանրաթելի գործարանները, Կիևի Ռ. Լյուքսեմբուրգի անվան տրիկոտաժի
ֆաբրիկան։ Ընդ որում, միմյանց հետ մրցում են նաև այդ ձեռնարկությունների
մի քանի համասեռ արտադրամասեր ու հերթափոխություններ։

Սոցիալիստական մրցության հաջողությունը պայմանավորված է նրա
մասսայականությամբ։ Կուսակցությունը պահանջում է աշխատավորական լայն
զանգվածներին ներգրավել մրցության մեջ, լայնորեն տարածել ոչ միայն կո-
լեկտիվ, այլև անհատական հանդիպական պլանների ու պարտավորություննե-
րի մշակումը։ Գործարանում մրցության անհատական պայմանագրեր ունեն
1.850 բանվորներ կամ բոլոր նրանք, ովքեր աշխատում են գործավարձի սիս-
տեմով։ Դիրեկցիան նրանց յուրաքանչյուրի համար բացել է «Անձնական հա-
շիվ», ուր ըստ հնգօրյակների գրանցվում են պլան-պարտավորությունների կա-
տարման, ըստ ամիսների՝ աշխատանքի արտադրողականության, արտադրան-
քի որակի, հումքի ու նյութերի խնայողության արդյունքները։

Հանրային արտադրության արդյունավետության բարձրացման շահերը
պահանջում են բազմազանություն մտցնել մրցության մեջ, ընդլայնել բանվոր-
ների արտադրական հետաքրքրությունների շրջանակը, մրցության նոր ձևերի
կիրառմամբ նպաստել նրանց բարձրարտադրողական աշխատանքին, մասնա-
գիտական հմտությունների և որակավորման բարձրացմանը։ Կուսակցական և
արհմիութենական կազմակերպությունները և դիրեկցիան այս առումով խրա-
խուսելի ու շնորհակալ շատ բան են արել։ Նրանք անընդհատ որոնում և կիրա-
ռում են մրցության նոր, առաջնակարգ, ժամանակի պահանջներից բխող ար-
դյունավետ ձևեր, դրանք ծառայեցնում կոլեկտիվի անդամների դաստիարա-
կությանն ու ձեռնարկության ընդհանուր արտադրական վերելքին։

Սոցիալիստական մրցության զարգացման տեսակետից առանձնահատուկ
էր հոբելյանական տարին՝ 1972 թվականը։ Կուսկոմիտեն և արտադրամասային
կուսկազմակերպությունները բազմիցս անդրադարձան ՍՍՀՄ կազմավորման
50-ամյակի պատվին ծավալված մրցության կազմակերպման և այդ առիթով
ստանձնած պարտավորությունների կատարման հարցերին, մշակեցին մրցու-
թյան նոր ձև։ Քանի որ ձեռնարկության կոլեկտիվն ինտերնացիոնալ կազմ ու-
նի,— հայերի հետ ուս-ուսի աշխատում են տասնյակ ռուսներ, ուկրաինացիներ,
բելոռուսներ, ադրբեջանցիներ և այլ ազգությունների ներկայացուցիչներ,—
կուսկոմիտեն որոշեց յուրաքանչյուր ամիս սոցմրցություն ծավալել միութենա-
կան որևէ հանրապետության պատվին։ Ապրիլին, օրինակ, մրցությունը նվիր-
վեց ՌՍՖՍՀ-ին, մայիսին՝ Բելոռուսիային, հունիսին՝ Ուկրաինային, հուլիսին՝
Միջին Ասիային, օգոստոսին՝ Մերձբալթիկային, սեպտեմբերին՝ Անդրկովկասի
հանրապետություններին։ Հոկտեմբերին քննարկելով ՍՍՀՄ կազմավորման 50-
ամյակի առթիվ միջոցառումների կատարման ընթացքը՝ կուսկոմիտեն նշեց, որ
բոլոր հանրապետությունների պատվին ծավալված սոցիալիստական մրցու-
թյունը տվել է լավ արդյունքներ, բարձր ցուցանիշներով կատարվել են արտա-
դրական պլանները և ստանձնած պարտավորությունները, աճել է աշխատանքի
արտադրողականությունը։

Ձեռնարկության ներքին ռեզերվների հայտնաբերմանն ու օգտագործմանը

բանվորների մասնակցության, նրանց անձնական կարողությունների դրսևոր-
ման առաջավոր ձևեր են Հոկտեմբերյան հեղափոխության դափնեկրի և տվյալ
մասնագիտության լավագույն բանվորի կոչման համար անցկացվող մրցու-
թյունները: Ամեն տարի, Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության
տարելիցի նախօրյակին ամփոփվում են այս մրցույթի արդյունքները և դափ-
նեկրի կոչումը շնորհվում է հինգական մարդու, երկարատև և անբասիր աշխա-
տող այն բանվորներին, որոնք հասել են արտադրական նշանակալից հաջողու-
թյան, աչքի ընկել նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցույթի մեջ, ան-
ընդմեջ գերակատարել նախորդ բոլոր ամիսների պլան-պարտավորությունները:
«Տվյալ մասնագիտության լավագույն բանվորի համար» մրցույթը մի
քանի տարվա պատմություն ունի: Այն բանվորի մոտ ամրապնդում է սերը իր
ընտրած մասնագիտության նկատմամբ, նրան օժտում արտադրական հմտու-
թյամբ ու հնարանքներով: Այս մրցույթին մասնակցում են 16 հիմնական
մասնագիտությունների տեր բանվոր-բանվորուհիներ: Ընդհանուր գործարա-
նային պայմաններից զատ, յուրաքանչյուր արտադրամաս ունի իր արտադրու-
թյանը յուրահատուկ մրցության պայմաններ, որոնք ևս բխում են աշխատանքի
բնույթից: Յուրաքանչյուր մասնագիտության ներկայացվում են բնորոշ պա-
հանջներ: Այսպես, այս մրցույթին մասնակցող նախնական ոլորքի ոլորողից
պահանջվում է պլանը կատարել 113 տոկոսով, իսկ պիտանի արտադրանքի քա-
նակը հասցնել 99,8 տոկոսի, մինչդեռ մանող բանվորից համապատասխանա-
բար՝ 105,9 և 99,6 և այլն:

Կուսկոմիտեն, անցած տարվա ապրիլին քննարկելով ՍՍՀՄ արհմիություն-
ների XV համագումարի որոշումների լույսի տակ սոցիալիստական մրցության
հետագա բարելավման խնդիրը, հավուր պատշաճի արժեքավորեց ըստ մասնա-
գիտության լավագույն բանվորի և Հոկտեմբերյան հեղափոխության դափնեկրի
կոչումների համար ծավալված մրցությունները ու մշակեց դրանց կազմակեր-
պումը բարելավելու միջոցառումներ: Մասնավորապես որոշվեց, սոցիալիստա-
կան մրցության արդյունավետությունը բարձրացնելու նպատակով, կազմակեր-
պել առաջավոր փորձի փոխանակում, ուսումնասիրել ուսանելին ու լավը, խո-
րությամբ վերլուծել կատարածի արդյունքները: Դրանք ժամանակին չքննարկե-
լու համար կուսկոմիտեն պարսավեց ստուգող-չափող-կարգավորող սարքերի
և տրանսպորտի արտադրամասերի կուսակցական ու արհմիութենական կազ-
մակերպություններին:

Մրցության ու մրցույթների բոլոր ձևերը բխում են ՍՄԿԿ XXIV համագու-
մարի որոշումներից, ուղղված են դրանց իրականացմանը, հիններորդ հնգամ-
յակի խնդիրների լուծմանը: Հատկանշական են հումքի, էլեկտրաէներգիայի,
ջրի գոլորշու խնայողության, բարձրորակ արտադրանքի, աշխատաժամանակի
ռացիոնալ օգտագործման, արտադրության կուլտուրայի և տեխնիկայի ան-
վտանգության ներգործարանային մրցույթները, քաղաքային ու հանրապետա-
կան ստուգատեսները: Դրանց ընթացքում ձեռնարկության մարդիկ դրսևորում
են աշխատանքի կազմակերպման լավագույն հատկություններ, հայտաբերում
և գործողության մեջ են դնում նոր հնարավորություններ ու ռեզերվներ, որոնում
հանրային արտադրության բարձրացման նոր ուղիներ: Այս և ուրիշ մրցույթնե-
րի ու ստուգատեսների ընթացքում ռացիոնալիզատորները 1972-ին արտադրու-
թյան մեջ արմատավորել են 130 առաջարկություն, որոնց տված տնտեսական
օգուտը հասնում է 299.268 ռուբլու:



## 3. ՄՐՑՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՁԵՎԸ

«ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները,— նշված է «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— առաջ բերեցին ուժերի ու եռանդի նոր հորդում, աշխատավորների ստեղծագործական ակտիվության հզոր վերելք»: Այս դրական պրոցեսը, որ ծավալվել է երկրի բոլոր անկյուններում, ուրույն ձևով է դրսևորվել նաև մանրաթելագործների կոլեկտիվում: Այստեղ ևս սոցիալիստական մրցությունը դարձել է մարդկանց աշխատանքային դաստիարակության կարևոր միջոց, առաջ քաշել բազում առաջավորների ու նորարարների: Առաջատար այս ձեռնարկությունում մրցությունը թևակոխել է իր բարձրագույն աստիճանը: Այն արտահայտվում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական շարժման մեջ:

Գործարանային սոցիալիստական մրցության պայմանները պահանջում են, մրցության արդյունքները ամփոփելիս, հաղթողներին որոշելու համար, տեխնիկատնտեսական ցուցանիշներից զատ, երեք խմբում էլ հաշվի առնել նաև կոլեկտիվին և նրա անդամներին դրականորեն բնութագրող մյուս գործոնները՝ պայքար կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի և հարվածայինի կոչման համար, աշխատանքային կարգապահություն, կոմունիստական կենցաղավարություն, արտադրական կուլտուրայի, էսթետիկայի և աշխատատեղի մաքրության բարձր մակարդակ, ակտիվ մասնակցություն կանաչապատմանն ու ծառապատմանը, ֆիզկուլտուրային ու սպորտին, գեղարվեստական ինքնագործունեությանը, քաղաքական ու հասարակական աշխատանքներին, հանգստի լավագույն կազմակերպում, պետական ունեցվածքի անկորուստ պահպանում, կոլեկտիվի անդամների մասնագիտական ու հանրակրթական մակարդակի բարձրացում: Եթե կոլեկտիվը թերացավ այս ցուցանիշներից որևէ մեկի կատարման մեջ, ապա նա զրկվում է մրցանակային տեղից:

Կուսակցությունը խնդիր է դնում կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների, սովետական ու տնտեսական մարմինների առջև՝ չթերագնահատել սոցիալիստական մրցության սոցիալական ու դաստիարակչական դերը, նրա նշանակությունը աշխատավորների նախաձեռնությունը զարգացնելու և գիտակցականությունը բարձրացնելու գործում: Սրանք էլ ինքնին սոցիալիստական մրցության նոր բովանդակության, նոր որակի արտահայտություններն են: Կարևորն այն է, որ գործարանի կոմունիստները, աշխատավոր լայն զանգվածները համոզվում են այս իրողության մեջ, գիտակցում սոցիալիստական մրցության դաստիարակչական ու արտադրության առաջմղիչ մեծ դերը: Ահա մի օրինակ: Ընթացիկ տարվա մարտին տեղի ունեցավ մանող արտադրամասի կուսկազմակերպության (քարտուղար՝ Կ. Ջոհրաբյան) դռնբաց ժողովը, որը քննարկեց «Արհմիության կոմիտեի կատարած աշխատանքը սոցմրցության կազմակերպման ասպարեզում» հարցը: Անկուսակցական ենթավարպետ Ռ. Հովհաննիսյանն իր ելույթում ասաց. «Սոցմրցման մեջ տեղ գրավելու երաշխիքը համախմբված աշխատանքն է, պետք է բանենք բոլորը՝ մեկի, մեկը՝ բոլորի համար սկզբունքով, իսկ դրա համար կոլեկտիվը պետք է դաստիարակի մարդկանց, մեկ օրվա անհարգելի բացակայությունը, կարգապահության ու տեխնոլոգիական ռեժիմների խախտումները բացասական ազդեցություն են թողնում հերթափոխի արդյունքների և մրցությունում տեղ գրավելու վրա»: Ժողովականները բաժանեցին այս կարծիքը և որոշեցին

կոմունիստական վերաբերմունք ցուցաբերել աշխատանքի նկատմամբ, գործել
մեկը՝ բոլորի, բոլորը՝ մեկի համար նշանաբանով։
Կոմունիստական աշխատանքի շարժումը գործարանում մի քանի տարվա
պատմություն ունի, բայց այն առավել լայնորեն ծավալվեց ՍՄԿԿ XXIV հա-
մագումարից հետո և դարձավ արտադրական աննախադեպ վերելքի ու սոցիա-
լիստական կենցաղավարության հզոր խթանիչ։ Համագումարն այդ շարժումը
համարեց որպես մասսաների աշխատանքային խանդավառության հիանալի,
մարդկության պատմության մեջ նախկինում չտեսնված դրսևորում։
Ամեն տարի, քիմիագործի օրը կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի և
հարվածայինի կոչումը շնորհվում է լավագույններից լավագույնին։ Նրանց տըր-
վում է համապատասխան կրծքանշան, անունները գրանցվում են պատվո գըր-
քում։ 900 մանրաթելագործներ արդեն արժանացել են կոմունիստական աշխա-
տանքի հարվածայինի, ջրի գոլորշու արտադրամասը, ացետոնի վերականգըն-
ման բաժանմունքը, 18 բրիգադ ու հերթափոխություն՝ կոմունիստական աշ-
խատանքի կոլեկտիվի կոչման։ Դրանք այն մարդիկ են ու կոլեկտիվները, որոնք
տարվա բոլոր ամիսներին գերակատարել են արտադրական առաջադրանքները,
քայլել սոցիալիստական մրցության առաջին շարքերում, խստորեն կիրառել
սոցիալիստական համակեցության կանոնները, հարազատ մնացել կոմունիզմ
կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքներին։ Կոմունիստական կոչման
համար շարժումն այժմ ներառում է 18 արտադրամաս, 84 բրիգադա ու հերթա-
փոխություն, 1.800 բանվոր։ Մանող արտադրամասի 4 հերթափոխություններն
էլ կոմունիստական աշխատանքի մրցության մասնակիցներ են։ Ընդ որում, Ա
հերթափոխությունը ընթացիկ տարվա մայիսի 18-ին արժանացավ այդ կոչ-

մանը։
Կոմունիստական աշխատանքի շարժման, սոցիալիստական մրցության ըն-
թացքում գործարանում ծնվում, երևան են գալիս հայրենասիրական նոր նա-
խաձեռնություններ, որոնք զարկ են տալիս հանրային արտադրության բարձ-
րացմանը, դառնում ձեռնարկության ներքին ռեզերվների հայտաբերմանն ու
օգտագործմանը բանվորների մասնակցության արդյունավետ ձևեր։
Ծանոթանում եմ։ Նադեժդա Ջադորկինա, ոլորող բանվորուհի, Հայկա-
կան ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ։ Սոցիալիստական մրցության առա-
ջամարտիկներից է, «Հնգամյակը չորս տարում» նախաձեռնության հեղինակը։
Ն. Ջադորկինան ունեցավ բազմաթիվ հետևորդներ, նրա նախաձեռնու-
թյունը վերածվեց մասսայական հերոսական շարժման։ Առաջին իսկ ամիսնե-
րին այդ նախաձեռնությունից ծնունդ առած նոր մրցության մեջ ներգրավվեցին
հիմնական մասնագիտության 150-ից ավելի բանվորներ։ Հենց ծավալային
թելի արտադրամասում «Հնգամյակը չորս տարում» կատարելու պատրաս-
տակամություն հայտնեցին կոմունիստական աշխատանքի հարվածայիններ,
ՍՄԿԿ անդամ Նադեժդա Բոյկոն, Սեդա Ղազախեցյանը, Սոնյա Հարությունյա-
նը, Լյուդմիլա Մոտորինան, Յուրիկ Մարգարյանը և Աշվարդ Սաֆարյանը, ո-
րոնք այժմ աշխատում են 1974 թ. երկրորդ եռամսյակի հաշվին։
Կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները և դիրեկ-
ցիան պաշտպանեցին Ն. Ջադորկինայի նախաձեռնությունը և խրախուսեցին
նոր մրցության մասնակիցներին։ Նրանց յուրաքանչյուրի աշխատանքի ար-
դյունքները ենթարկվում են ամենօրյա հաշվառման։ Այդ մրցության ջատա-
գովներից մեկը տեսակավորման-փաթեթավորման արտադրամասի տնտեսա-



գետ Վարդուշ Բարխուդարյանն է։ Նա ամեն օր կարող է տեղեկացնել, թե զա-դորկինյան շարժման մասնակիցները ինչպիսի տեմպերով են քայլում։ Ըստ նրա հաշվարկի՝ ընթացիկ տարվա հունվարի 1-ի դրությամբ ծրարող Քնարիկ Մինասյանը, Անժիկ Պետրոսյանը, Անիչկա Թոթոլյանը, Սոֆիկ Հարությունյանը առաջ էին անցել 11 ամսով և արտադրանք էին թողարկում 1974 թ. հունիսի, իսկ Անիչկա Հարությունյանը, Նարգիզ Գրիգորյանը, Մարյա Ավետիսյանը՝ հուլիսի հաշվին։ Հաշվարկի այս ուրույն ձևը մեծապես խթանում է մրցությունը, զարգացնում նրա մասնակիցների ակտիվությունը, բարձրացնում պատասխանատվությունը։

«Հնգամյակը չորս տարում» զադորկինյան մրցության նախնական արդյունքները վկայում են, որ ձեռնարկության տասնյակ բանվոր-բանվորուհիներ հընգամյա պլանը կկատարեն ավելի վաղ՝ 3,5 տարում։ Բայց առաջավորների մեջ լինում են և ամենաառաջավորները։ Զադորկինյան մրցության 4 մասնակիցներ՝ փաթաթող Սուսաննա Խաչատրյանը, մանողներ Ռոբերտ Գյուլազյանը, Աղունիկ Պապոյանը և Սոնյա Հարությունյանը, հնգամյակը երեք տարում կատարելու հայտ են ներկայացրել։ Սուսաննան երկուսուկես տարում պլանից դուրս փաթաթել է 88 տոննա, իսկ Ռոբերտը, Աղունիկը և Սոնյան՝ մանել 23 տոննա թել։ Այդ նույն ժամանակամիջոցում մրցության այս չորս առաջամարտիկները երկրին տվել են 690 հազար ռուբլու օգուտ, որը հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա վերջում կհասնի 1 մլն 300 հազար ռուբլու։

Ոլորման արտադրամասի՝ Կ. Մեսրոպյանի ղեկավարած Վ հերթափոխության «Ոչ մի ետ մնացող» կոլեկտիվ նախաձեռնությունը մեծ չափերով խթանեց մանրաթելագործների կողմից արտադրական առաջադրանքների կատարմանը։ Միանգամայն օրինաչափ է, որ այս հերթափոխությունը ինչպես 1972-ին, այնպես էլ այս տարվա առաջին ամիսներին անընդմեջ գրավել է մրցանակային առաջին տեղերը։ Ոլորող արտադրամասի կուսկազմակերպության բյուրոն անցած տարվա ապրիլին, անդրադառնալով այդ նախաձեռնությանը, հավանություն տվեց դրան, խնդիր դրեց չունենալով ոչ մի ետ մնացող, արտադրական պլանները կատարել 105 տոկոսով և որոշեց սահմանել դրամական մրցանակ՝ հաղթողներին պարգևատրելու համար։

Այս նախաձեռնությունը լայն արձագանք գտավ նաև մյուս արտադրամասերում և դարձավ բարձրարտադրողական աշխատանքի կարևոր խթան։

«1973 թվականի ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը մեծ վերելք առաջացրեց երկրի ձեռնարկություններում, արտադրության մարդկանց մղեց նոր խիզախումների, խթանեց նրանց ստեղծագործական ակտիվության զարգացումը։ Մանրաթելագործների կոլեկտիվը, հանրապետության առաջավոր ձեռնարկությունների թվում, հանդես եկավ «Հնգամյակի երրորդ տարվան մեր հարվածային աշխատանքը» դիմումի նախաձեռնությամբ և խոստացավ ընթացիկ տարվա պլանը կատարել դեկտեմբերի 28-ին, պլանից դուրս թողարկելով 60 տոննա թել։ Գործարանի յուրաքանչյուր բանվոր և ենթավարպետ, ինժեներա-տեխնիկական աշխատող իր պարտքն է համարում արժանի ներդրում կատարել հարազատ ձեռնարկության 1973 թ. պլան-պարտավորությունների կատարման գործում, անձնուրաց պայքարել համամիութե-

նական սոցիալիստական մրցությունից պատվով դուրս գալու համար։ Ահա այդ
պայքարի կոնկրետ արտահայտություններից մեկը՝ ոլորող արտադրամասի հե-
նող բաժանմունքի բանվորուհի Դինա Նովիկովայի «Վճռական տարին 10 ամ-
սում» նախաձեռնությունը։
Նախնական արդյունքները վկայում են, որ Դինան հարազատ կմնա իր
խոսքին։ Ահա ապացույցը. նա այժմ օրական հենում է 108 կգ թել, մինչդեռ
արտադրական նորման 75 կգ է։
— «Վճռական տարվա պլանը 10 ամսում» շարժմանը,— անկեղծ հպարտու-
թյամբ ասում է աշխատանքի ու աշխատավարձի բաժնի վարիչ Վլ. Ակիմովը,—
այժմ մասնակցում է 160 մարդ։ Փաթաթողներ Ռոզա Կուրղինյանը, Արևիկ Քառ-
յանը, ոլորողներ Լարիսա Ջանաղյանը, Ջեմմա Գրատյանը և ուրիշներ տարին
կփակեն ավելի վաղ՝ 9,5 ամսում։
Այս նախաձեռնության օգտավետության արտահայտությունն իններորդ
հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա առաջին կիսամյակի բարձր արդյունք-
ներն են։ Վեց ամսում մանրաթելագործները երկրին տվել են 173 հազար ռուբ-
լու արտապլանային արտադրանք։

## 4. ՄՐՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՆՑՔԸ

Աշխատանքի արտադրողականության ու արտադրանքի որակի բարձրացու-
մը, խնայողության ռեժիմը կենսական նշանակություն ունեն յուրաքանչյուր
ձեռնարկության համար։ ՍՄԿԿ XXIV համագումարը դրանք համարեց հանրա-
յին արտադրության արդյունավետության կարևոր գործոններ։ Գործարանի
բակում փակցված կոչերը հիշեցնում են, որ արտադրողականության մեկ տոկոս
աճով տարվա ընթացքում կարելի է շահել 400 հազար, քիմիական մանրաթե-
լերի առաջին տեսակի քանակի մեկ տոկոսով բարձրացմամբ՝ 22 հազար, հում-
քի, էլեկտրաէներգիայի, ջերմաէներգիայի, ացետոնի մեկ տոկոս խնայողու-
թյամբ՝ 163.200 ռուբլի։ Բրիգադային, հերթափոխային, արտադրամասային ու
գործարանային սոցիալիստական պարտավորությունների մեջ դրանք համար-
վում են գլխավոր ցուցանիշներ։ Սոցիալիստական մրցությամբ գործարանի
կոլեկտիվը խոստացել է աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել
1,9, արտադրանքի տեսակայնությունը՝ 2,4 տոկոսով, տնտեսել 10 տոննա ա-
ցետիլ-ցելյուլոզա, 10 տոննա ացետոն, 3 տոննա կապրոն, 1 մլն 600 հազար
կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 6.500 Հ կալորիա ջերմաէներգիա։ Այս խնդիրների
պատշաճ լուծումը կուսկոմիտեի և սկզբնական կուսկազմակերպությունների
հոգացության առարկան է։ Նրանք օգնում են դիրեկցիային՝ աշխատանքի ար-
տադրողականության բարձրացման ու խնայողության նոր ռեզերվներ հայտա-
բերելու, արտադրանքի որակի բարելավման նոր ուղիներ մշակելու համար։
Այս տեսակետից բնորոշ է կուսկոմիտեի 1972 թ. հունիսի նիստում «Շչյոկինոյի
մեթոդով աշխատելու կապակցությամբ գործարանում անցկացվելիք միջոցա-
ռումների և կուսկազմակերպության խնդիրների մասին» հարցի քննարկումը։
Կուսկոմիտեն գտավ, որ առանց աշխատողների թվի ավելացման արտադրանքի
թողարկման ծավալը մեծանալու վերաբերյալ Շչյոկինոյի քիմիական կոմբինա-
տի կոլեկտիվի նախաձեռնության արմատավորմամբ հնարավոր կլինի աշխա-
տանքի արտադրողականությունը 1972 թ. բարձրացնել 2,3 տոկոսով, 1973-ին՝
4,5, 1974-ին՝ 10,1 և հնգամյակի վերջին տարում՝ 11,9 տոկոսով։ Անժխտելի է
շչյոկինցիների մեթոդի կիրառման բարձր արդյունավետությունը. ձեռնարկու-



թյունը մեկ ու կես տարում ստացավ տասնյակ հազարավոր ռուբլիների օգուտ։
Բ հերթափոխության փաթեթավորող Մարգո Ավետիսյանի «Ոչ մի բողոք
մեր հերթափոխության մեղքով» և ավագ տեսակավորող, ՍՄԿԿ անդամ Պայ-
ծառ Հովհաննիսյանի «Լիարժեք փաթեթավորման համար» նախաձեռնություն-
ները ծնվեցին հենց տեսակավորման-փաթեթավորման արտադրամասի
կուսկազմակերպության դռնբաց ժողովներում, երբ քննարկվում էին որակի
հարցերը։ Միայն վերջին առաջարկության արմատավորումից գործարանն
ստացավ 11.362 ռուբլու պայմանական օգուտ։
«Բանվորի խիղճը ամենալավ վերահսկիչն է»։ Այս լոզունգը փակցված է
մանող արտադրամասում։ Արտադրամասի բանվորների կոլեկտիվ նախաձեռ-
նությունն է, որը լայնորեն արմատավորվեց մյուս հիմնական արտադրամասե-
րում։ Բանվորների առաջարկությամբ վերացվեցին արտադրանքի որակը հըս-
կողների հաստիքները։ Դա նյութական և բարոյական նշանակություն ունեցավ.
կրճատվեցին ներարտադրամասային ծախսերը, բարձրացավ մարդկանց պա-
տասխանատվությունը։ Ոլորող արտադրամասի «Աշխատենք առանց խոտանի»
նախաձեռնությունը դարձավ հումքի, օժանդակ նյութերի ու էլեկտրաէներգիա-
յի խնայողության համար մղվող պայքարի ազդանշան։ Այդ շարժումը ներա-
ռեց բոլոր արտադրամասերը։ 1972 թ. բարձր արդյունքները այդ նախաձեռնու-
թյան արդյունավետության իսկական չափանիշն են։ Անցած տարի գործարանը
տնտեսեց ավելի քան 300 հազար ռուբլու հումք, էլեկտրական և ջերմային էներ-
գիա և օժանդակ նյութեր։ Մի ուրիշ կարևոր փաստ. ընթացիկ տարվա առաջին
կիսամյակում գործարանն առաջին տեսակի արտադրանքի քանակը, նախա-
տեսված 61,9-ի փոխարեն, հասցրեց 66,4 տոկոսի, որի տված տնտեսական օ-
գուտը կազմեց 43 հազար ռուբլի։

## 5. ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԻ ԿԻՐԱՌՈՒՄԸ

Սոցիալիստական մրցության բոլոր ձևերը, մրցույթներն ու հասարակական
ստուգատեսները, նախաձեռնություններն ու շարժումները կարող են շոշափելի
արդյունք տալ միայն այն դեպքում, երբ, ինչպես խնդիր է դնում ՍՄԿԿ Կենտ-
կոմն իր 1971 թ. «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բա-
րելավման մասին» որոշմամբ, բարձրացվի աշխատանքային կոլեկտիվի դերը
մրցության հարցերի լուծման գործում, անշեղորեն իրագործվեն «Դրա կազմա-
կերպման լենինյան սկզբունքները՝ հրապարակայնությունը, արդյունքների հա-
մեմատումը, փորձի գործնական կրկնման հնարավորությունը»։
Կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները հետևողակա-
նորեն իրագործում են այդ պահանջները, մրցությանը տալիս գործարար բնույթ,
ապահովում դրա արդյունավետությունը։ Մրցության ընթացքն ու արդյունքնե-
րը, ստանձնած պարտավորությունները քննարկվում են կուսակցական ու կո-
լեկտիվի ժողովներում, կուսկոմիտեի ու արհմիության կոմիտեի նախագահու-
թյան, արտադրամասային կուսբյուրոների ու արհմիության կոմիտեների նիս-
տերում, իսկ տարեկան արդյունքներն ու պարտավորությունները, ինչպես նաև
կոլեկտիվ պայմանագրերը՝ կուսակցական-տնտեսական ակտիվի կոնֆերան-
սում։ Դրանք դառնում են արտադրության կառավարմանը, սոցիալիստական
մրցության կազմակերպմանը, պարտավորությունների մշակմանն ու ընդուն-
մանը կոմունիստների, բանվորական զանգվածների մասնակցության, նրանց
ուժերի մոբիլիզացման կարևոր միջոցներ։

*Վ. Ի. Լենինը սոցիալիստական մրցության արդյունավետությունն ու մաս-
սայականությունը պայմանավորում էր դրա հրապարակայնությամբ։ Կուսկո-
միտեն ու արհմիության նախագահությունը անուրանալի գործ են կատարում
այս ասպարեզում։ Նրանց նախաձեռնությամբ բոլոր արտադրամասերն ունեն
սոցիալիստական մրցությանը նվիրված անկյուններ ու ցուցադրական բազմա-
զան միջոցներ։ Ամենուրեք ցուցադրված են սոցիալիստական մրցության և
մրցույթների պայմանները, հերթափոխությունների, բրիգադների ու բան-
վորների պարտավորություններն ու դրանց կատարման արդյունքները։*

## 6. ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԽԹԱՆԻՉԸ

*Սոցիալիստական մրցության հաջողությունը պայմանավորված է նաև դրա
մասնակիցների նյութական շահագրգռվածության բարձրացմամբ ու բարոյա-
կան խրախուսմամբ։ Այս խնդիրը մշտապես գտնվում է կուսկազմակերպության
ու դիրեկցիայի տեսադաշտում։ Ներգործարանային կոլեկտիվ մրցության
մեջ ներգրավված երեք խմբերի համար էլ սահմանվել են հաղթողների պար-
գևատրման երկուական մրցանակ։*

*Նյութապես շահագրգռվում են նաև սոցիալիստական մրցության ընթաց-
քում բարձրորակ արտադրանք թողարկող բանվորները, ռացիոնալիզատորները,
Հոկտեմբերյան հեղափոխության դափնեկիրները, ըստ մասնագիտության լա-
վագույն բանվորի կոչում ստացածները, մյուս մրցույթների մասնակիցները։*

*Առաջավորների համար նախատեսված են բարոյական խրախուսանքի նաև
այլ միջոցներ. նրանց անունները գրանցվում են պատվո գրքում, լուսա-
նկարները՝ փակցվում պատվո տախտակին, դափնեկիրների մեծադիր լուսա-
նկարները՝ նրանց նվիրված ծառուղում ու արտադրամասերի աչքի ընկնող տեղե-
րում։*

*Մրցության մասնակիցների նյութական ու բարոյական խրախուսման հար-
ցերը պարբերաբար քննարկվում են կուսկոմիտեի, արհմիության նախագահու-
թյան ու կոմիտեների, արտադրամասային կուսկազմակերպությունների ժողով-
ներում ու բյուրոների նիստերում։ Այս տեսակետից հատկանշական է կուս-
կոմիտեի 1972 թ. նոյեմբերի 25-ի նիստը։ Այն հաստատեց հոբելյանական
տարվա մրցության հաղթողներին պարգևատրելու կարգը, հուշանվերներ հանձ-
նող հանձնաժողովների կազմը, մշակեց մրցության արդյունքների ամփոփման
ու ժողովների անցկացման գրաֆիկը, որոշեց աչքի ընկնող կոլեկտիվներին
առհավետ պահպանման հանձնել «50-ամյակի առաջավոր» հուշադրոշներ։*

* * *

*Այո՛, սոցիալիստական մրցության կազմակերպման, մրցության ձևերի
խելացի զուգակցման հարուստ ու ուսանելի փորձ է կուտակվել քիմիական
մանրաթելի գործարանում։ Սակայն, այնուամենայնիվ, այս ասպարեզում այս-
տեղ կան նաև որոշ թերություններ։ Արտադրության առանձին օղակներ (էլեկ-
տրաարտադրամաս) վատ են օգտվում սոցմրցության ցուցադրական միջոցնե-
րից, կամ մրցության արդյունքները ներկայացնում են ուշացումով (տրանս-
պորտի արտադրամաս)։ ՍՄԿԿ XXIV համագումարը, ՍՄԿԿ Կենտկոմը հետհա-
մագումարյան իր որոշումներով պահանջում են լավ պայմաններ ստեղծել մըր-
ցողների, սոցիալիստական պարտավորությունների կատարման համար։ Այս
պահանջը ոչ միշտ է հետևողականորեն իրագործվում։ Օրինակ, մատակարար-
ման ոչ հստակ կազմակերպման հետևանքով սոցիալիստական պարտավորու-
թյունների առանձին ցուցանիշներ չեն կատարվում։*

# ԳՈՀԱՑՈՒՑԻՉ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ

**Ռ. Բ. ԿՈՍՏԱՆՅԱՆ**
Երևանի կաբելի գործարանի կուսբյուրոյի քարտուղար

*Իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա խնդիրները հաջողու-
թյամբ կատարելու համար «Արդյունաբերության, տրանսպորտի, շինարարու-
թյան աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցություն ծա-
վալելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի ՀԱՄԿԽ-ի և
ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը արտադրական չտեսնված վերելք առաջացրեց
Երևանի կաբելի գործարանում, աշխատանքային խանդավառությամբ համա-
կեց նրա մարդկանց։ Այդ որոշումը լայնորեն քննարկվեց կուսկազմակերպու-
թյան ժողովում, ապա՝ արտադրամասերի, հերթափոխությունների ու բրիգա-
դաների կոլեկտիվներում։ Հաշվի առնելով ունեցած հնարավորություններն ու
ռեզերվները՝ ամենուրեք ստանձնեցին նոր, անհատական, բրիգադային, հեր-
թափոխային, արտադրամասային և համագործարանային պարտավորություն-
ներ, որոնք զգալիորեն գերազանցում են պլանային առաջադրանքները։ Կուս-
կազմակերպության ժողովը, հավանություն տալով ձեռնարկության կոլեկտի-
վի ընդհանուր պարտավորություններին, մշակեց գործնական միջոցառում-
ներ՝ դրանց կատարումն ապահովելու համար։ Մասնավորապես շոշափվեցին
գործարանի համաչափ գործունեությունն ապահովելու, աշխատանքի ար-
տադրողականությունը բարձրացնելու և արտադրական վերելքի համար կոմու-
նիստների ուժերն արդյունավետ օգտագործելու խնդիրները։*

*Հենց տարեսկզբից նոր թափով ծավալվեց անհատական և միջբրիգադա-
յին, միջհերթափոխային և միջարտադրամասային կոլեկտիվ սոցիալիստական
մրցությունը։ Այն մեզ մոտ դիտվում է որպես արտադրության ռեզերվների
հայտաբերման ու օգտագործման, պետական պլանների կատարման ու գերա-
կատարման արդյունավետ միջոց։ Դրա կոնկրետ վկայությունն ընթացիկ
տարվա մեր սոցիալիստական պարտավորություններն են և առաջին կիսամյա-
կի գործնական արդյունքները։ Մեր կոլեկտիվը խոստացել է հնգամյակի եր-
րորդ՝ վճռական տարվա արտադրական ծրագիրը կատարել դեկտեմբերի 28-
ին, պլանից դուրս թողարկել 500 հազար ռուբլու արտադրանք, աշխատանքի
արտադրողականությունը բարձրացնել 3,6 տոկոսով, տալ 62 հազար ռուբլու
հումքի, էլեկտրաէներգիայի և օժանդակ նյութերի խնայողություն։*

*Այժմ մեր ձեռնարկությունը թողարկում է մոտ հարյուր մակնիշի պղնձե
և ալյումինե հաղորդալարեր, որոնք, մեր հանրապետության պահանջները բա-*

վարարելուց բացի, առաքվում են Միության բազմաթիվ պատվիրատուների հասցեներով: Էլեկտրատեխնիկական տարբեր բնագավառներում օգտագործվող ռետինով մեկուսացված ուժային ու խողովակային կաբելները, մերկ պղնձե, ալյումինե և թույլ հոսանքի հաղորդալարերը, էլեկտրամեքենաների փաթաթալարերը, պղնձե գլանվածքը, արտադրանքի բազմաթիվ այլ տեսակներ հայտնի են իրենց բարձր որակով ու հուսալիությամբ, կլիմայական տարբեր պայմաններում անվթար մնալու ունակությամբ, ինչպես նաև երկարադիմացկունությամբ: Տեխնիկական այսպիսի բարձր տվյալների շնորհիվ գործարանի թողարկած արտադրանքը մեծ պահանջարկ ունի նաև միջազգային շուկայում: Ձեռնարկության արտադրած տարբեր տեսակի հաղորդալարերը և կաբելները, հազարավոր կիլոմետրեր անցնելով, հասնում են հեռավոր Վիետնամ, Իրաք, Լեհաստան, ԳԴՀ, Բուլղարիա և շատ ու շատ երկրներ: Պատվիրատուների օրավուր աճող պահանջները բավարարելու և նրանց բարձրորակ կաբելով ապահովելու համար՝ դիրեկցիան, կուսակցական ու հասարակական կազմակերպությունները իրենց ամենօրյա ուշադրության կենտրոնում են պահում արտադրական նորանոր ռեզերվների հայտաբերումը, պլանների ու պարտավորությունների կատարումը, մշակում են աշխատանքային առաջավոր ձևեր ու մեթոդներ:

Գործարանային կուսբյուրոն, հենվելով արտադրամասային կուսկազմակերպությունների վրա, կոմունիստների ուժերը տեղաբաշխելով արտադրության կարևորագույն բնագավառներում, կարողացել է մոբիլիզացնել կաբելագործներին՝ արտադրական բարձր ցուցանիշների հասնելու համար: Կուսկազմակերպությունը իր հիմնական խնդիրն է համարում՝ գաղափարական և կազմակերպչական աշխատանքով բարելավել գործերի վիճակը արտադրության յուրաքանչյուր օղակում, բարձրացնել կոլեկտիվի բոլոր անդամների պատասխանատվությունը:

Ու եթե այսօր մեր գործարանն ընթանում է առաջավոր ձեռնարկությունների շարքերում, պատվով է կատարում պլանային առաջադրանքները, մրցությամբ ստանձնած պարտավորությունները, ապա դա նաև կուսկազմակերպության արդյունավետ գործունեության, դիրեկցիայի, կուսակցական ու հասարակական կազմակերպությունների սերտ համագործակցության արդյունք է: Կուսկազմակերպությունն ու նրա բյուրոն դիրեկցիայի հետ հոգում են, որպեսզի արտադրության տարբեր օղակները ղեկավարող կադրերը լինեն իրենց տեղում, օգնում են արտադրության երիտասարդ կազմակերպիչներին ու մասնագետներին:

Մեր ձեռնարկությունում իրենց գործը սիրող, հմուտ ու բարեխիղճ աշխատողները շատ են: Նրանք փորձն ու հմտությունը ձեռք են բերել տարիների ընթացքում: Կուսկազմակերպությունն ու դիրեկցիան, ըստ արժանվույն գնահատելով նրանց աշխատանքը, նրանց վստահում են ամենավճռական տեղամասերի ղեկավարումը: Երիտասարդ կադրերի ընտրության ու դաստիարակության նկատմամբ մեր հոգատարությունը բխում է նրանից, որ մենք սեփական փորձով համոզվել ենք, որ մեզ մոտ գործերի վիճակը հատկապես լավացել է այն բանից հետո, երբ արտադրության առանձին օղակներ համալրեցինք գործարանում աճած ու դաստիարակված մասնագետներով: Արտադրամասի պետեր Վ. Թովմասյանը (ռետինապատման), Հր. Ստեփանյանը (ձգման), Է. Սասունցյանը (հյուսման), Գ. Սմբատյանը (փաթաթման), Հ. Մխիթարյանը



(էմալապատման), Հր. Հովիվյանը (էներգո) և շատ ուրիշներ երիտասարդ կոմունիստներ են ու բարձր պատասխանատվությամբ են կատարում ղեկավարի իրենց պարտականությունները, ակտիվորեն մասնակցում կուսակցական ու հասարակական աշխատանքներին: Բուն արտադրության ոլորտում ընդգրկված առաջավոր կոմունիստներ Ջ. Մուրադյանը, Հր. Համբարձումյանը, Վ. Վարդանյանը, Հ. Շահբազյանը, Մանյա Վարդանյանը, Ա. Զաքարյանը և շատ ուրիշներ միշտ քայլում են մրցության առաջին շարքերում, աչքի ընկնում բարձրարտադրողական աշխատանքով, հանդես գալիս լավ նախաձեռնություններով:

Գործարանի արտադրական նվաճումների մեջ շատ-շատերի հետ իր արժանի ներդրումն ունի Ջիվան Մուրադյանը: Նա արտադրություն է եկել 1967 թ.: Այդ ժամանակից ի վեր Ջիվանը ոչ միայն հմտացել է իր մասնագիտության մեջ, այլև իր գիտելիքներն ու փորձն է հաղորդել տասնյակ աշակերտների: Ներկայումս նա աշխատում է փաթաթման արտադրամասի հաղորդալարերը ապակե թելերով մեկուսացնող տեղամասում որպես փաթաթող: Ի դեպ, էլեկտրամեքենաների մեջ օգտագործվող ՊՍԴ մակնիշի ուղղանկյունաձև փաթաթալարերի մեկուսացումը կատարվում է տեխնոլոգիական բավականին բարդ եղանակով: Մուրադյանի գործի առանձնահատկությունը ցույց տալու համար բավական է ասել, որ նրա սպասարկած հաստոցը միաժամանակ կատարում է հաղորդալարերի լաքապատման, թելապատման և չորացման գործողություններ: Եթե հաշվի առնենք, որ մինչև պատրաստի արտադրանք ստանալը այդ գործողությունները կրկնվում են մի քանի անգամ, ապա պարզ կդառնա այն բարդ ու աչալուրջ աշխատանքը, որ հերթափոխի ընթացքում կատարում է առաջավոր կոմունիստ փաթաթողը: Չնայած տեխնոլոգիական այդ բարդությանը՝ Ջ. Մուրադյանը, նախատեսված 2-ի փոխարեն, սպասարկում է 3 մեքենա և պլանային առաջադրանքը կատարում 120—125 տոկոսով: Բարձր արդյունքի հասնելու համար նա կարևոր ուշադրություն է նվիրում աշխատանքի ճիշտ կազմակերպմանը և մեքենաների արդյունավետ սպասարկմանը: Նրա աշխատանքի առաջավոր մեթոդները դարձել են արտադրամասի ողջ կոլեկտիվի սեփականությունը:

Ինչպես Ջ. Մուրադյանի, այնպես էլ Ժ. Շահբազյանի, Ա. Մարկոսյանի առաջավոր փորձը ընդհանրացվել է հանրապետության պետպլանի կենտրոնական նորմատիվային հետազոտական կայանի կողմից և տարածվել Միության էլեկտրատեխնիկական արդյունաբերության բոլոր աշխատողների շրջանում:

Սովետական Միության արդյունաբերական բազմաթիվ ձեռնարկություններում ջերմ արձագանք գտավ և լայնորեն տարածվեց նաև «Հնգամյակը չորս տարում» շարժումը, որի նախաձեռնությամբ հանդես եկավ մեր գործարանի մամլող, կոմունիստ Հրանտ Համբարձումյանը: Նախնական հաշվումները ցույց են տալիս, որ մեր հարյուրավոր բանվորներ հնգամյակի հետ հաշիվները կփակեն մեկ տարի առաջ:

Ուշագրավ է նաև ֆրեզերագործ Անուշավան Կիրակոսյանի նախաձեռնությունը հնգամյակի վճռական տարվա ամենօրյա և ամենամսյա պլանները 125—130 տոկոսով կատարելու վերաբերյալ: Այս նախաձեռնությունը ևս ունեցավ հարյուրավոր հետևորդներ:

Իններորդ հնգամյակի երրորդ տարվա պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար՝ գործարանային

կուսկազմակերպությունը, կուսբյուրոն, արտադրամասային կուսկազմակերպություններն ու կուսխմբերը անցած ամիսներին ուսումնասիրել և քննության են առել արտադրության արդյունավետության բարձրացման հետ առնչվող բազմաթիվ ու բազմապիսի հարցեր, ընդունել գործնական որոշումներ ու հետևողականորեն իրականացրել դրանք։

Մեր կուսկազմակերպության և արտադրական կոլեկտիվի արդյունավետ գործունեության ու ջանքերի չափանիշն ընթացիկ տարվա առաջին կիսամյակի արդյունքներն են։ Ձեռնարկությունը իրացման 6 ամսվա պլանը կատարեց 101,3 տոկոսով՝ պլանից ավելի թողարկելով 352 հազար ռուբլու արտադրանք։ Անցած տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ արտադրանքի ծավալը մեծացել է 2 տոկոսով։ Կատարվել ու գերակատարվել են արտադրանքի բոլոր տեսակների առաջադրանքները։ Հաջողությամբ են կատարվել արտադրության արդյունավետությունը բնորոշող այնպիսի ցուցանիշների պլանները, ինչպիսիք են՝ աշխատանքի արտադրողականությունը, օգուտները, շահութաբերությունը, արտադրանքի որակը և այլն։ Նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունը աճել է 4,1 տոկոսով, տրվել է 199 հազար ռուբլու արտապլանային օգուտ, բարձր կարգի որակավորման արտադրանքի տեսակարար կշիռը կազմել է 9,8 տոկոս, պլանով նախատեսված 4,5 տոկոսի փոխարեն, խնայված հումքի հաշվին թողարկվել է 31 հազար ռուբլու արտապլանային արտադրանք, տնտեսվել է 550 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 16,5 տոննա պայմանական վառելիք և այլն։

Արտադրության հետագա առաջընթացն ապահովելու համար կուսկազմակերպությունը և դիրեկցիան հիմնական շեշտը դնում են գործարանի տեխնիկական վերազինման վրա, նպաստում ու կատարելագործում են եղած մեքենաները, տեխնոլոգիական պրոցեսները։ Նորերն, անշուշտ, ավելի բարձր արտադրողական են և ապահովում են ավելի բարձրորակ ու հուսալի արտադրանքի թողարկումը։ Դեռևս հնգամյակի սկզբին կազմվեց գործարանի տեխնիկական վերազինման պլանը, որն այժմ հաջողությամբ իրագործվում է, ստեղծվում են անհրաժեշտ պայմաններ՝ հնգամյակի առաջադրանքները ժամանակին կատարելու և գերակատարելու համար։ Բազմաթիվ տեխնոլոգիական պրոցեսներ են կատարելագործվել ձգման, էմալապատման, ռետինապատման, հյուսման, փաթաթման, գլանման և այլ արտադրամասերում։ Դրանք հնարավորություն են ստեղծում իններորդ հնգամյակում ապրանքային արտադրանքն ավելացնել 37,2 տոկոսով, ընդ որում, բացառապես միայն արտադրության ինտենսիվացման և արտադրողականության բարձրացման հաշվին, համարյա առանց նոր լրացուցիչ արտադրական հզորությունների գործարկման և բանվորական ուժի ավելացման։

Մեր ելակետն է կուսակցության այն պահանջը, որ մրցողների համար պետք է ստեղծել լավագույն պայմաններ, մոբիլիզացնել բոլոր հնարավորությունները՝ստանձնած պարտավորությունները կատարելու համար։



# ՀԱՇՎԻ ԱՌՆԵԼ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՊԱՀԱՆՋԱՐԿԸ

**Հ. Ս. ԻԿԻԼԻԿՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի առևտրի, պլանավորման և
ֆինանսական մարմինների բաժնի վարիչ

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների համաձայն կուսակցության Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ կառավարությունը վերջին տարիներին մի շարք միջոցառումներ իրականացրին սովետական առևտուրը զարգացնելու, բնակչությանը արդյունաբերական ապրանքներ և սննդամթերքներ մատակարարելու գործը բարելավելու համար։ ՀՍՍՀ-ում հետհամագումարյան ժամանակաշրջանում շահագործման են հանձնվել բազմաթիվ խանութներ, հանրախանութներ և առևտրի այլ օբյեկտներ։ Հնգամյակի անցած երկուսուկես տարում մանրածախ առևտրի օբյեկտներն ավելացել են 346-ով, իսկ հասարակական սննդի ձեռնարկությունները՝ 463-ով։

Մեր հանրապետությունում 1971 թ. պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը կազմել է 1.371 մլն, իսկ անցյալ տարի մոտ 1.487 մլն ռուբլի։ Այս տարվա առաջին կիսամյակում, նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը աճել է 9,1 տոկոսով։ Հատկանշական է, որ զգալիորեն աճել է ավելի երկար ժամանակամիջոցում օգտագործվող ապրանքների՝ սառնարանների, կահույքի, հեռուստացույցների, մարդատար ավտոմեքենաների, հախճապակե-ճենապակե և ապակե ամանեղենների ու այլ իրերի վաճառքը։

Ընթացիկ հնգամյակի անցած ժամանակաշրջանում նկատելիորեն աճել են բնակչության սննդամթերքների պահանջմունքներն ու դրանց վաճառքի (քանակական) ծավալը, մասնավորապես ավելի սննդարար մթերքների վաճառքը։ 1972 թ., 1970 թ. համեմատությամբ, մսի և մսամթերքի վաճառքը ավելացել է 141,4, կաթինը և կաթնամթերքինը՝ 110,9, այդ թվում կենդանական յուղինը՝ 114,8, ձվինը՝ 131,6 տոկոսով։

Վերջին տարիներին հանրապետությունում խոշոր աշխատանք կատարվեց բանջարեղենի և կարտոֆիլի արտադրությունն ավելացնելու, ինչպես նաև բնակչության պահանջարկը բարելավելու համար։ 1972 թ. վաճառվեց 99.909

տոննա բանջարեղեն, որը, 1970 թ. համեմատությամբ, 119,3 տոկոսով ավելի էր։ Վերջին տարիներին ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրությունը և Արարատյան դաշտավայրի շրջանների կուսակցական և սովետական կազմակերպությունները մեծ գործ կատարեցին կոլտնտեսություններում և սովխոզներում վաղահաս կարտոֆիլի և կաղամբի ցանքը արմատավորելու նպատակով։ Այդ միջոցառմամբ բավարարվեց (ամառվա ամիսներին) բնակչության պահանջարկը։ 1973 թ. հանրապետության բնակչությանը կվաճառվի մոտ 11 հազար տոննա վաղահաս կարտոֆիլ և գրեթե նույնքան կաղամբ։ Բանջարեղենի, կարտոֆիլի և պտղի նկատմամբ ձմռան ամիսներին և վաղ գարնանը շուկայի պահանջարկը բավարարելու նպատակով՝ կառուցվել և շահագործման են հանձնվել պահպանության խոշոր տնտեսություններ և սառցարաններ։

ՍՄԿԿ XXIV համագումարն, անդրադառնալով սովետական առևտրի զարգացման հարցին, նշեց. «Խնդիրը միայն այն չէ, որ միագումար կերպով ծածկվի գնողական պահանջարկը, այլև գլխավորն այն է, թե գնորդը ինչ ապրանք կգտնի խանութում, որքանով նա գոհ կմնա դրա բազմազանությունից ու որակից։ Սա բարձրացնում է արդյունաբերությանը և առևտրին ներկայացվող պահանջները, որոնք պետք է օպերատիվորեն արձագանքեն պահանջարկի բոլոր փոփոխություններին» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 234—235)։

Ժամանակակից արտադրության հսկայական մասշտաբների պայմաններում ընթացիկ պահանջարկի և հեռանկարային հաշվեկշռի համար անհրաժեշտ են տնտեսագիտական խոր վերլուծություն և պահանջարկի վրա ազդող հիմնական գործոնների հաշվարկ։ Այդ նպատակով ժողովրդական սպառման ապրանքների բնակչության պահանջարկի և առևտրի կոնյունկտուրայի ուսումնասիրման համար ՍՍՀՄ առևտրի մինիստրությանը կից ստեղծված է համամիութենական գիտահետազոտական ինստիտուտ (ՎՆԻԻԿՍ), որը 1967 թվականից ունի հայկական մասնաճյուղ։ Վերջինս շոշափելի գործ է կատարել բնակչության պահանջարկի ուսումնասիրման մեթոդիկայի մշակման, առանձին ապրանքների շուկաների հետազոտման, պահանջարկի կառուցվածքի և ծավալի հեռանկարային կանխատեսման ասպարեզում։ Սակայն, ինչպես նշեց ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևը, «Առևտրական կազմակերպությունները շատ դեպքերում պատշաճ օպերատիվություն չեն ցուցաբերում, դեռևս չեն սովորել ինչպես հարկն է ուսումնասիրել շուկայի պահանջարկը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 70)։

Հիրավի, շուկայի պահանջարկի ուսումնասիրությունը ժողովրդական տնտեսության զարգացման ներկա պայմաններում դարձել է տնտեսական զարգացման կարևոր գործոն։ Չէ՞ որ հարկավոր է կանխորոշել ի՞նչ և որքա՞ն արտադրել՝ ըստ քանակի, տեսակի, չափի, ձևի, ճաշակի ու այլ որակական հատկանիշների։ Այդ հարցը որոշելիս թույլ տրված նույնիսկ աննշան անճշտությունները կարող են պատճառել նյութական, աշխատանքային և դրամական հսկայական վնասներ։ Հասարակական արտադրության բարձր արդյունավետության երաշխիքը արտադրության և սպառման համաչափ զարգացումն է, որը հնարավոր է իրականացնել միայն պահանջարկի ճիշտ իմացությամբ։ Մեր հանրապետությունում շուկայի պահանջարկի ուսումնասիրության ընդհանուր մակարդակը դեռևս ցածր է և չի համապատասխանում սպառման ապրանք-



ների աննախընթաց աճին, ինչպես նաև բնակչության գնողունակության բարձրացման ներկա մակարդակին։

Ինչպես ՀՍՍՀ առևտրի մինիստրությունում, այնպես էլ Հայկոոպում բնակչության պահանջարկի և առևտրի կոնյունկտուրային ուսումնասիրման հստակ, միասնական սիստեմ չի ստեղծված։ Առևտրական ոչ բոլոր կազմակերպությունների ու ձեռնարկություններն են մասնակցում պահանջարկի ուսումնասիրման գործին։ Առանձին դեպքերում նրանք, խորամուխ չլինելով գործերի վիճակի մեջ, նախապես, ինչպես հարկն է չուսումնասիրելով և հաշվի չառնելով շուկայի պահանջարկը, արդյունաբերությանը չհիմնավորված պատվերներ են տալիս։ Հայկոոպի մեծածախ բազաներում ստեղծված պահանջարկի և առևտրի կոնյունկտուրայի ուսումնասիրման ծառայությունները գործնականում չեն մասնակցում մեծածախ բազաների պատվերների ու հայտերի կազմմանը և ապրանքների ներկրման կազմակերպմանը։

Թեպետ ՀՍՍՀ առևտրի մինիստրության մեծածախ բազաները զգալի գործ են անում արդյունաբերությանը տրվող հայտերի ու պատվերների կազմման և ժամանակին ներկայացման համար, սակայն նրանք համապատասխան հաշվառում չեն կատարում, չգիտեն, թե արդյունաբերությունը ինչպես է իրականացնում տեսակաշարի կառուցվածքի, ձևի, չափերի և այլ որակական ցուցանիշների վերաբերյալ ներկայացված պահանջները։ Այդ պատճառով էլ արդյունաբերական ձեռնարկությունները հաճախ տոնավաճառներում կնքված պայմանագրերով կամ տարեկան ֆոնդերով նախատեսված ապրանքները հետագայում փոխարինում են ուրիշներով։

Ներկայումս ժողովրդական սպառման ապրանքների պահանջարկի վրա ազդում է արտադրանքի որակական բնութագիրը։ Այժմ բնակչությունը պահանջարկ է ներկայացնում հիմնականում բարձրորակ, գեղեցիկ, մոդայիկ և նոր ապրանքների համար։

Լայն սպառման ապրանքներ թողարկող այն ձեռնարկությունները, որոնց տնտեսական ղեկավարները և կուսկազմակերպությունները լրջորեն ուսումնասիրում են գնորդների պահանջմունքները, հաշվի են առնում նրանց ցանկությունները, առաջարկությունները և դիտողությունները, հետևում արտադրանքի որակի բարելավմանը, տեսակաշարի ընդլայնմանը, չափերի պահպանմանը, հասել են զգալի հաջողությունների։ Արժանի է նշել Երևանի ծխախոտի փորձարարական կոմբինատի ու կոշիկի վերանորոգման և անհատական պատվերների «Նաիրի» ֆաբրիկայի, ժամացույցի գործարանի, Կիրովականի մուշտակների ֆաբրիկայի դրական աշխատանքները։

Սակայն հանրապետությունում առաջարկի և պահանջարկի անհամապատասխանության հետևանքով ստեղծվել է անցանկալի վիճակ։ Առևտրական կազմակերպություններում և արտադրական ձեռնարկություններում կուտակվել են մեծաքանակ ապրանքներ, որոնք ցածրորակության և այլ պատճառներով չեն սպառվում։ 1973 թ. հուլիսի 1-ի դրությամբ, գերնորմատիվային ապրանքների պաշարները կազմում են 40 մլն ռուբլի։

Լայն սպառման ապրանքների գերնորմատիվային մնացորդների առաջացման հիմնական պատճառը, իհարկե, առևտրի անբավարար կազմակերպումն է։ Առևտրական կազմակերպությունները հաճախ միութենական տոնավաճառներում չիմանալով բնակչության պահանջարկը ներկրում են այնպիսի ապրանքներ, որոնք չեն սպառվում, հաշվի չեն առնվում ապրանքների սեզոնայ-

նությունը, բնակչության ազգային սովորությունները։ Սխալներ են թույլ տըրվում ապրանքներն ըստ շրջանների և բնակավայրերի բաշխման գործում։

Լայն սպառման ապրանքների գերնորմատիվային մնացորդների առաջացման համար պատասխանատու են նաև արդյունաբերական մինիստրությունները և գերատեսչությունները։ Արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական ղեկավարները, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները գործնական միջոցառումներ չեն մշակում և իրագործում թողարկվող արտադրանքի որակը բարելավելու համար։

Ահա թե ինչու Սովետական Միության, ինչպես նաև մեր հանրապետության շատ առևտրական կազմակերպություններ արտադրությանը ետ են վերադարձրել ՀՍՍՀ արտադրած մեծ քանակությամբ պատրաստի հագուստեղեն, գուլպաներ, կոշկեղեն և տրիկոտաժեղեն։ Միայն այս տարվա անցած յոթ ամիսներում մեր հանրապետության առևտրական կազմակերպությունները արդյունաբերական ձեռնարկություններին վերադարձրել են (անորակության համար) գուլպեղեն ավելի քան 42 հազար, տրիկոտաժեղեն՝ կես միլիոն, պատրաստի հագուստեղեն՝ 28 հազար ռուբլու։

Ապրանքների ցածրորակության պատճառով արդյունաբերական ձեռնարկությունները տնտեսական մեծ վնասներ են կրում, իսկ արտադրված ապրանքը կուտակվում է ձեռնարկության պահեստներում։ Օրինակ. Լենինականի տրիկոտաժի ֆաբրիկան միայն ընթացիկ տարվա առաջին 5 ամսում առևտրական կազմակերպություններից ետ է ստացել մոտ 600 հազար ռուբլու արտադրանք, որի համար վճարել է ավելի քան 37 հազար ռուբլու տուգանք։

Ժողովրդական լայն սպառման ապրանքներ արտադրող մինիստրությունները թույլ աշխատանք են տանում տեսակաշարի նորացման, արտաքին տեսքի և որակի բարելավման համար։ Վատ են ուսումնասիրում շուկայի պահանջարկը։ Ավելին, ՀՍՍՀ սննդարդյունաբերության, մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունները մինչև օրս իրենց սիստեմում գործող գիտահետազոտական ինստիտուտներում չեն կազմակերպել բյուրո կամ լաբորատորիա՝ ժողովրդական սպառման ապրանքների պահանջարկի ուսումնասիրման համար։ Իրենց ենթակա արտադրական ձեռնարկություններում չեն կազմակերպել պահանջարկի ուսումնասիրման ծառայություն։ Այդպիսի ստորաբաժանումներ չկան նաև ՀՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրությունում։ Այդ աշխատանքները լրիվ անուշադրության են մատնված ստեղծագործական միություններին կից գործող արտադրական ձեռնարկություններում։

Գովելի է ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության նախաձեռնությունը։ Մինիստրությունը գծագրական կոնստրուկտորական բյուրոյին կից ստեղծել է պահանջարկի ուսումնասիրության և առևտրի կոնյունկտուրայի սեկտոր, որն արդեն սկսել է իր գիտահետազոտական աշխատանքները։

Հայտնի է, որ վերջին տարիներին հանրապետությունում վիթխարի աշխատանք է կատարված լայն սպառման ապրանքների արտադրության զարգացման նպատակով։ Կառուցվել և շահագործման են հանձնվել արտադրական նոր կարողություններ։ Ներկայումս հանրապետությունում տարեկան թողարկվում են ավելի քան մեկ միլիարդ ռուբլու լայն սպառման ապրանքներ։ Առանձին ապրանքների արտադրությունը զգալի չափով գերազանցում է ներքին շուկայի պահանջները։ Օրինակ, կոշիկի ձեռնարկությունները տարեկան թողարկում են 70.810 հազար ռուբլու արտադրանք, որից հանրապետությունում ի-



րացվում է 35.800 հազար, իսկ հանրապետությունում արտադրվող 103 մլն ռուբլու պատրաստի հագուստեղենից՝ 58 մլն ռուբլու և այլն։ Սակայն հանրապետության արդյունաբերությունը և, առաջին հերթին, թեթև արդյունաբերությունը բնակչությանը չեն ապահովում բարձրորակ և համապատասխան տեսակաշարի ապրանքներ, որի հետևանքով փաստորեն չի լուծվում այդ ապրանքների պահանջմունքների ապահովման հարցը։

Այսպես, հանրապետության կոշիկի ֆաբրիկաները շարունակում են արտադրանք թողարկել տեսակաշարի, մոդելների, չափերի սանդղակների և գույնի զգալի խախտումներով։ Մասսայական արտադրության մի շարք մոդելներ չեն համապատասխանում հաստատված օրինակներին։ Ֆաբրիկաները համարյա չեն արտադրում կանացի 40, 41, 42 և տղամարդու 43, 44, 45 և 46 չափերի կոշիկներ։ Ցածրորակ ապրանքներ արտադրելու և պետական ստանդարտների պահանջները խախտելու համար 1972 թ. «Մասիս» ֆիրման ընդունել է 586 վնասապահանջներ և վճարել 423,2 հազար ռուբլու տուգանք։ 1972 թ. հանրապետության առևտրական կազմակերպությունները կոշիկի ֆաբրիկաներից չեն ստացել 5 մլն ռուբլու սեզոնային պահանջարկի կոշիկներ։ Պայմանագրերով նախատեսված կոշիկներ չարտադրելու պատճառով 1972 թ. «Մասիս» ֆիրման «Հայկոշիկառ» բազային վճարել է 106,6 հազար ռուբլու տուգանք։ Չնայած շուկան հագեցված է կարի արտադրանքով՝ բնակչության պահանջարկը այդ ապրանքների նկատմամբ նորից նույն պատճառով չի բավարարվում։ Կարի մասսայական արտադրանքը շատ հաճախ տարբերվում է գեղարվեստական խորհրդի հաստատած նմուշներից, որոնք առևտրական կազմակերպությունները գնել են տոնավաճառների ժամանակ։ Այդ պատճառով առևտրական կազմակերպությունները ստիպված հրաժարվում են ապրանքն ընդունելուց։ Այսպես, 1972 թ. և 1973 թ. անցած 6 ամիսներում կարի արտադրանքի ֆոնդերը չեն իրացվել 8.363 հազար ռուբլով։ Որակի պետական տեսչության 1972 թ. ստուգումներով անորակ է համարվել (իջեցվել է տեսակը) տրիկոտաժեղենի ստուգված արտադրանքի 13,9 տոկոսը։ Երևանի գլխավոր ֆաբրիկայի ստուգված արտադրանքի 22—42, Կիրովականի ֆաբրիկայի արտադրանքի 62 տոկոսը իջեցված է երկրորդ տեսակի։ Խախտվում է տրիկոտաժեղենի չափերի սանդղակը (բացակայում են մեծ չափերը՝ 54—57), որը լուրջ դժգոհություններ է առաջացնում։ Հանրապետության արդյունաբերությունը քիչ է արտադրում կանացի ներքնազգեստի գարնիտուրներ, վերնաշապիկներ, տղամարդկանց և մանկական սպիտակեղեն (սպիտակ գույնի) և այլն։ Չնայած վերջին ժամանակներս զգալի չափով բարելավվել է բամբակե, մետաքսե և բրդե գործվածքեղենի արտադրությունը, բայց լրիվ չի բավարարվում հատկապես չթի, սատինի, սպիտակեղենի և բրդե գործվածքեղենի, կանացի վերնազգեստի պահանջարկը։ Դրա գլխավոր պատճառը Երևանի բրդե գործվածքների և Լենինականի տեքստիլ կոմբինատների արտադրական պլանների թերակատարումն է։ Անցած մեկ և կես տարում նշված ձեռնարկությունները մատակարարներին պակաս են տվել 10.547 հազար ռուբլու արտադրանք։

Մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները վերջին տարիներին խոշոր աշխատանք են կատարել տնտեսական և կուլտուր-կենցաղային ապրանքների նոր տեսակաշարեր արտադրելու համար։ Սակայն այդ բնագավառում բնակչության պահանջարկը չի բավարարվում։ Այսպես, ամանեղեն-տնտեսական ապրանքները բարձր պահանջարկ ունեն, բայց տեղական

արդյունաբերության թողարկած արտադրանքի ծավալը և կառուցվածքը չեն բավարարում շուկայի պահանջները։

Բնակչության եկամուտների և գնողականության աճի շնորհիվ կահույքի մեծ պահանջ կա։ Սակայն ՀՍՍՀ անտառային և փայտամշակման արդյունաբերության մինիստրության կահույքի ֆաբրիկաները չեն կատարում կահույքի մատակարարման պայմանագրային պարտավորությունները։ Արտադրվող կահույքի տեսակաշարը չի համընկնում առևտրական կազմակերպությունների պատվերներին։ Միայն 1972 թ. առևտրական կազմակերպություններին չի մատակարարվել 5.895 հազար, իսկ ընթացիկ տարվա 6 ամսում՝ 2.995 հազար ռուբլու կահույք։ Խիստ ցածր է արտադրվող կահույքի որակը։

Կահույք արտադրող ձեռնարկությունների տնտեսական ղեկավարները և կուսկազմակերպությունները պարտավոր են բարձրացնել պետական և աշխատանքային կարգապահությունը, ապահովել պայմանագրային պարտավորությունները, արտադրանքի որակը դիտել իբրև հիմնական հարց։ Արդյունաբերական որոշ ձեռնարկություններ (Երևանի Ալմաղ, կոմպրեսորների, էլեկտրաճշգրիտ սարքերի գործարանները և այլն), հաշվի չառնելով բնակչության պահանջարկը, առանց առևտրական կազմակերպությունների պատվերների, արտադրում են օգտագործման համար շատ դեպքերում ոչ պիտանի ապրանքներ՝ մանյակներ, ականջօղեր, մոմեր, մոմակալներ, լուսամփոփներ և այլն։

Ստեղծագործական միությունների և ոչ արդյունաբերական մինիստրությունների ձեռնարկությունների արտադրանքը միշտ չէ, որ համապատասխանում է առևտրի պատվերներին։ Ի դեպ, այդ ապրանքային մասսան ժողովրդատնտեսական պլաններում հաշվի է առնվում որպես ապրանքային ծածկույթ, որը բացասաբար է անդրադառնում ապրանքաշրջանառության պլանների կատարման վրա։ Այստեղ թույլ է տրվում թեթև և տեղական արդյունաբերության արտադրանքի տեսակաշարի կրկնօրինակում, ըստ որում, այդ կազմակերպությունների արտադրանքի մեծ մասի որակը ցածր է՝ արտադրական կուլտուրայի բացակայության և համապատասխան սարքավորումներ չունենալու հետևանքով։ Որակի պետական տեսչության ստուգումից պարզվել է, որ 27 տարբեր կազմակերպություններում արտադրվող ոչ մթերային ստուգված արտադրանքների 69 տոկոսը չի համապատասխանում ստանդարտին, Թատերական ընկերության ստեղծագործական տան հուշակեղենի արտադրամասի արտադրանքը լրիվ խոտանվել է։ Ահա թե ինչու ՀՍՍՀ Մինիստրների սովետը վերջերս քննության առնելով այդ հարցը, որոշեց լուծարքի ենթարկել ոչ արդյունաբերական մինիստրություններին կից գործող ձեռնարկությունները։

Պարենային ապրանքների որոշ տեսակների բաշխման և վաճառքի հարցում երբեմն նկատվում են պլանավորման սխալներ, որոնք պահանջարկի և առևտրի կոնյունկտուրան վատ իմանալու հետևանք են։ Օրինակ, 1972 թ. հանրապետության քաղաքային բնակչության մեկ շնչի հաշվով սպառվել են 4,3 կգ ձուկ և ձկնամթերքներ, մինչդեռ ՀՍՍՀ բնակչության մեկ շնչի ֆիզիոլոգիական նորման նախատեսված է 11 կգ։ Այս վիճակի գլխավոր պատճառը առևտրի վատ կազմակերպումն է։ Ներկայացվող հայտերը մոտավոր տվյալներ են, որոնց հիմքում ընկած են անցած տարվա փաստացի վաճառքը և ոչ թե բնակչության իրական պահանջարկը։

ՀՍՍՀ համար ֆիզիոլոգիական նորմաններով նախատեսված է բնակչության մեկ շնչի հաշվով 319 կգ կաթ և կաթնամթերք, 142 կգ հաց և հացամթերք։



Փաստացի 1972 թ. օգտագործված է 382,5 կգ կաթ ու կաթնամթերք կամ, նորմայի համեմատությամբ, այն կազմում է 119,9 տոկոս և 156,5 կգ հաց և հացամթերք կամ, նորմայի համեմատությամբ, 110,2 տոկոս։ Այստեղ հետաքրքրականն այն է, որ օգտագործված կաթի ու կաթնամթերքի 70 տոկոսը բաժին է ընկնում կենդանական յուղին, իսկ հացի և հացամթերքների մեջ՝ 70 տոկոսը հացին։

ՀՍՍՀ առևտրի մինիստրությունը և Հայկոոպի վարչությունը պարտավոր են ընդլայնել կաթի և կաթնեղենի վաճառքի ցանցը, հասարակական սննդում բարելավել կաթի և կաթնամթերքների վաճառքը, խոշոր խանութներում և հանրախանութներում կազմակերպել գնորդների կաֆետերիաներ։ ՀՍՍՀ սննդարդյունաբերության, մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունները պետք է մտահոգվեն կաթի և կաթնամթերքների, հացի ու հացամթերքների տեսակաշարն ընդլայնելու, որակը բարելավելու հարցերով։

Շատ կարևոր է բնակչության պահանջմունքների ուսումնասիրության գործի բարելավումը բանջարեղենի բնագավառում։ Թեպետ վերջին երեք տարում ամբողջությամբ կատարվել և գերակատարվել է բանջարեղենի հանձնումների և վաճառքի պետական առաջադրանքը, սակայն դա տեղի է ունեցել հիմնականում լոլիկի, կաղամբի և վարունգի հանձնման պլանների գերակատարման հաշվին։

Վերջերս ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, քննության առնելով ժողովրդական սպառման ապրանքների պահանջարկի ուսումնասիրության վիճակը, այդ գործը բարելավելու միջոցներ մշակեց։ ՀԿԿ Կենտկոմը պահանջեց ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող միութենական-հանրապետական մինիստրություններից և գերատեսչություններից, որպեսզի նրանք միութենական մինիստրությունների հետ որոշեն իրենց սիստեմում գոյություն ունեցող գիտահետազոտական ինստիտուտներում բնակչության պահանջարկի ուսումնասիրման բաժիններ և լաբորատորիաներ ստեղծելու հարցը, նրանց պարտավորեցրեց՝ իրենց ենթակա կազմակերպություններում և ձեռնարկություններում ըստեղծել պահանջարկի ուսումնասիրության ծառայությունների ստորաբաժանումներ։

ՀՍՍՀ առևտրի մինիստրությանը և Հայկոոպի վարչությանը հանձնարարվեց՝ կարճ ժամկետում արմատապես բարելավել պահանջարկի ուսումնասիրման աշխատանքը բոլոր օղակներում։ Հանձնարարվեց ՀՍՍՀ պետպլանին կից բնակչության պահանջարկի և կոնյունկտուրայի ուսումնասիրության միջճյուղային խորհրդին՝ կոորդինացնել արդյունաբերության, առևտրի, պլանային օրգանների և գիտահետազոտական հիմնարկությունների պահանջարկի ուսումնասիրության աշխատանքները,

Այս միջոցառումների կենսագործումը բազմակողմանիորեն կբարելավի շուկայի պահանջարկի ուսումնասիրության գործը, որպեսզի մեր հանրապետությունում հստակ լուծվի առաջարկի և պահանջարկի հարաբերակցության հարցը։

# ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ԱՌՈՂՋՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՒՄԸ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Յ. Դ. ՄԿՐՏՉՅԱՆ
Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի կրտսեր գիտաշխատող

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը մեծ նշանակություն են տալիս արտադրության մեջ աշխատանքի պաշտպանությանը: Դա բխում է ՍՄԿԿ ծրագրի այն դրույթից, ըստ որի՝ «Բոլոր ձեռնարկություններում կարմատավորվեն անվտանգության տեխնիկայի ժամանակակից միջոցներ և կապահովվեն սանիտարական առողջապահական պայմաններ, որոնք վերացնում են արտադրական տրավմատիզմը և պրոֆեսիոնալ հիվանդությունները» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 517): Արտադրական տրավմատիզմը և պրոֆեսիոնալ հիվանդություններն անմիջական և էական վնաս են պատճառում ինչպես տուժող աշխատողին, այնպես էլ պետությանը:

Միայն աշխատանքային խեղման հետևանքով առաջացած աշխատաժամանակի կորուստը վիթխարի վնաս է հասցնում ժողովրդական տնտեսությանը: Հետևաբար, միանգամայն գործուն բնույթ պիտի կրի պայքարն աշխատանքի պաշտպանության և աշխատավորների առողջության պահպանման ասպարեզում եղած խախտումների դեմ:

Արտադրության մեջ իրավախախտումների դեմ ճիշտ և ակտիվ պայքար մղելու համար (քանի որ հանրապետության որոշ ձեռնարկություններում կարևոր տրավմատիզմը ո՛չ թե նվազում, այլ երբեմն նույնիսկ ավելանում է) կարևոր են ո՛չ միայն տեխնիկա-տնտեսական, այլև իրավական միջոցները, որոնք ավելի արդյունավետ կլինեն, եթե կոմպլեքսային բնույթ կրեն և փոխադարձաբար լրացնեն միմյանց: Ուստի, կարևոր նշանակություն ունեն արտադրության մեջ աշխատանքի պաշտպանության իրավական հարցերը, որոնք կարգավորվում են մեր հանրապետության Գերագույն սովետի ընդունած՝ Հայկական ՍՍՀ աշխատանքային նոր օրենսգրքով: Այդ օրենսգրքում կարգավորված են արդյունաբերության մեջ աշխատանքի պաշտպանության հարցերին վերաբերող և աշխատավորների առողջության պահպանմանը, աշխատանքի անվտանգ պայմանների ստեղծմանը, պրոֆեսիոնալ հիվանդությունների, արտադրական տրավմատիզմի վերացմանը և արտադրության մեջ աշխատավորների առողջությանը պատճառող վնասի փոխհատուցմանը վերաբերող հիմնական նորմաները:



Աշխատանքի պաշտպանության օրենսգրքի 156—183, ինչպես նաև կանանց ու երիտասարդների աշխատանքին վերաբերող մյուս հոդվածներում օրինական հիմնավորվել են աշխատանքի պաշտպանության սովետական իրավապաշտպանական նորմաները: Հայկական ՍՍՀ աշխատանքի նոր օրենսգիրքը պարզ ու խստիվ կարգ ու կանոն է սահմանում, որպեսզի բոլոր ձեռնարկություններում լինեն աշխատանքի բարենպաստ ու անվտանգ պայմաններ, որոնց ապահովումը հանձնարարվում է ադմինիստրացիային, որը պարտավոր է արմատավորել անվտանգության տեխնիկայի ոլորտում այն ամենը, ինչը կանխում է արտադրական տրավմատիզմը և ապահովում սանիտարա-հիգիենիկ այնպիսի պայմաններ, որոնք խափանեն բանվորների ու ծառայողների պրոֆեսիոնալ հիվանդությունների առաջացումը:

Արտադրական շենքերը, կառուցվածքները, սարքավորումը, տեխնոլոգիական պրոցեսները պետք է համապատասխանեն մարդկանց առողջությանն ու աշխատանքի անվտանգ պայմաններն ապահովող պահանջներին: Իսկ դա նշանակում է ճիշտ շահագործել սարքավորումները, բանիմաց կազմակերպել տեխնոլոգիական պրոցեսներն ու վնասազերծել աշխատանքի պայմանները, արտադրական շենքերն ու աշխատատեղերը պահել սանիտարա-հիգիենիկ նորմաներին ու կանոններին համապատասխան, սանիտարա-կենցաղային շենքերը մշտապես պահել բարվոք վիճակում:

Արտադրական շենքերի և կառուցվածքների նախագծման, շինարարության ու շահագործման ժամանակ պետք է պահպանվեն աշխատանքի պաշտպանության կանոններն ու նորմաները, իսկ մեքենաների, հաստոցների և արտադրական մյուս սարքավորման նախագծերը պետք է համապատասխանեն անվտանգության տեխնիկայի ու արտադրական սանիտարիայի պահանջներին, հակառակ դեպքում, այդ նախագծերը չեն կարող ընդունվել, արտադրության մեջ արմատավորվել և շահագործման հանձնվել: Օրենքը կտրականապես արգելում է արտադրական նշանակության նոր և վերակառուցված օբյեկտները գործարկել առանց պետական սանիտարական ու տեխնիկական հսկողությունն իրականացնող մարմինների, արհեստակցական միությունների տեխնիկական տեսչության և օբյեկտը շահագործման հանձնող ձեռնարկությանն առընթեր արհմիության ֆաբգործկոմի թույլտվության: Նոր մեքենայի, մեխանիզմի և այլ արտադրական սարքավորման ոչ մի նմուշ չի կարող արտադրության հանձնվել, եթե չի համապատասխանում աշխատանքի պաշտպանության պահանջներին:

Ձեռնարկության ադմինիստրացիան պարտավոր է ապահովել հնարավոր բոլոր միջոցները, որպեսզի իրականացվեն արտադրապրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը, օդային միջավայրի փոշու, գազի, աղմուկի, վիբրացիայի, ճառագայթման և արտադրության վնասակար այլ երևույթների նվազեցմամբ ու վերացմամբ դյուրացնի և առողջարար դարձնի բանվոր-ծառայողների աշխատանքային պայմանները, ինչպես նաև կիրառի պրոֆեսիոնալ և այլ հիվանդությունների կանխման միջոցներ:

Հայկական ՍՍՀ աշխատանքային օրենսգիրքը սահմանել է աշխատանքի պաշտպանության հրահանգը մշակելու և հաստատելու կարգը: Սրան համապատասխան աշխատանքի պաշտպանության հրահանգները մշակում և հաս-

տատում է բձեռնարկության ադմինիստրացիան արհմիության կոմիտեի հետ համատեղ: Միաժամանակ օրենքը սահմանում է, որ մինիստրություններն ու գերատեսչությունները, համաձայնեցնելով արհեստակցական միությունների կենտրոնական կոմիտեների, իսկ անհրաժեշտ դեպքում նաև պետական հսկողության համապատասխան մարմինների հետ, կարող են հաստատել հիմնական պրոֆեսիաների բանվորների աշխատանքի պաշտպանության տիպային հրահանգներ:

Անվտանգության տեխնիկայի, արտադրական սանիտարիայի, հրշեջ պահպանության և աշխատանքի պաշտպանության մյուս կանոնները կիրառող բանվորների հրահանգման, նրանց աշխատանքի անվտանգ եղանակների սովորեցման պարտականությունները, ինչպես նաև աշխատանքային օրենսդրության վերաբերյալ ղեկավար ու ինժեներա-տեխնիկական աշխատողների գիտելիքների ստուգման պարտականությունները դրվում են ձեռնարկության ադմինիստրացիայի վրա:

Մինչդեռ պրակտիկան ցույց է տալիս, որ դեռևս հանրապետության բոլոր ձեռնարկություններում չէ, որ ադմինիստրացիան պատշաճ ուշադրություն է նվիրում այդ գործին: Այսպես, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը 1972 թ. հոկտեմբերի 25-ի նիստում լսելով հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրի հաղորդումը՝ մինիստրության ձեռնարկություններում աշխատանքային օրենսդրության կատարման վիճակի մասին, նշեց, որ չնայած այդ նպատակով կատարված որոշ աշխատանքին, մինիստրության ձեռնարկություններում դեռևս քիչ չեն աշխատանքային օրենսդրության խախտման դեպքերը: Մի շարք ձեռնարկություններում չեն ստեղծվել աշխատանքի նորմալ պայմաններ, հաճախ են խախտվում անվտանգության տեխնիկայի և հրշեջ պահպանության կանոնները, չեն ապահովվել օդի սահմանված պարամետրերը: Այս և այլ պատճառներով շատ են արտադրական տրավմատիզմի դեպքերը: Նախագահությունը կոնկրետ մատնանշեց մեծ թվով ձեռնարկություններ, որտեղ աշխատանքային օրենսդրության և մասնավորապես աշխատանքի պաշտպանության նորմաների նկատմամբ ղեկավարների անփույթ վերաբերմունքի հետևանքով կոպիտ կերպով խախտվել են բանվորների ու ծառայողների իրավունքներն աշխատանքի պաշտպանության բնագավառում, որ հաճախ արտադրական տրավմատիզմի բազմաթիվ դեպքերի պատճառ է դարձել: Ուստի, գործող օրենսդրությունը ո՛չ միայն ձեռնարկությունների ադմինիստրացիայի վրա է դնում աշխատանքի պաշտպանության պահանջների կատարման վերահսկողությունը, այլև նախատեսում է, որ այդ օրենսդրության պահանջները չկատարող ղեկավարները ենթակա են կարգապահական, վարչական, նյութական և քրեական պատասխանատվության:

Ընդ որում, օրենսգիրքը ո՛չ միայն նախատեսում է ադմինիստրացիայի պարտականությունը՝ խստիվ կատարել արդյունաբերության մեջ աշխատանքի պաշտպանության կանոնները, այլև բանվորներին ու ծառայողներին պարտավորեցնում է իրագործել աշխատանքի պաշտպանության հրահանգները, որոնք սահմանում են արտադրական շենքերում և շինհրապարակներում աշխատանքի կատարման ու վարվեցողության կանոնները: Նրանք պարտավոր են նաև կատարել մեքենաների ու մեխանիզմների հետ վարվելու պահանջները, օգտվել իրենց հատկացվող անհատական պաշտպանության միջոցներից:

Հայկական ՍՍՀ աշխատանքային օրենսգիրքը. ձեռնարկության ադմի-



նիստրացիայի վրա արտադրության մեջ դժբախտ դեպքերի պատճառների հետազոտման և հաշվառման պարտականություններ դնելու հետ մեկտեղ, հանրապետության աշխատանքային օրենսդրության մեջ առաջին անգամ նախատեսում է ձեռնարկությունների նյութական պատասխանատվությունը՝ բանվորների ու ծառայողների առողջությանը պատճառած այնպիսի վնասի փոխհատուցման համար, որը կապված է նրանց աշխատանքային պարտականությունների կատարման հետ: Ինչպես հայտնի է, քննարկվող դեպքերի պատճառած վնասի փոխհատուցումը կարգավորում են բանվորների ու ծառայողների առողջության խեղմամբ կամ այլ պատճառով հասցված վնասը ձեռնարկությունների, հիմնարկությունների, կազմակերպությունների կողմից փոխհատուցվելու կանոնները, որոնք հաստատված են ՍՍՀՄ Մինիստրների սովետի աշխատանքի ու աշխատավարձի հարցերով պետական կոմիտեի և ՀԱՄԿԽ-ի նախագահության 1961 թ. դեկտեմբերի 22-ի որոշմամբ:

Հիշյալ կանոնները կիրառում են վնասի հատուցման դիֆերենցման սկզբունքը, ելնելով աշխատունակության կորստի աստիճանից և ընդհանուր վաստակի չափից: Տվյալ սկզբունքը բանվորներին ու ծառայողներին պատճառած վնասի փոխհատուցման ժամանակ կիրառվող հիմնական սկզբունքներից մեկն է: Կանոնների 11-րդ կետում նշված է, որ բանվորի կամ ծառայողի առողջության խեղմամբ կամ այլ պատճառով հասցված վնասի փոխհատուցման չափը որոշվում է, ելնելով աշխատողի կողմից պրոֆեսիոնալ աշխատունակության (իր մասնագիտությամբ աշխատելու ունակության), իսկ համապատասխան դեպքում՝ ընդհանուր աշխատունակության (ոչ որակյալ աշխատանքի ունակության) կորստի աստիճանից, ինչպես նաև միջին ամսական վաստակի և տվյալ խեղման կամ առողջությանը պատճառած այլ վնասի կապակցությամբ նշանակված թոշակի չափից:

Սակայն ներկայումս հետագա կատարելագործման կարիք է զգում վնասի հատուցման չափի դիֆերենցման սկզբունքը՝ ելնելով աշխատունակության կորստի աստիճանից և ընդհանուր վաստակի չափից:

Վնասի հատուցմամբ պետք է վերականգնվի տուժողի գույքային այն վիճակը, որը նա կարող էր ունենալ, եթե վնաս հասցված չլիներ առողջությանը: Փոխհատուցման չափի որոշման գործող սիստեմում խախտվում է լրիվ հատուցման սկզբունքը, քանի որ գալիք վճարումների չափը որոշելիս հաշվի է առնվում տուժողի վաստակը անցած ժամանակի համար: Մինչդեռ առողջության վնասման հետևանքով տեղի է ունենում բանվորների ու ծառայողների ոչ թե նախորդ, այլ ապագա վաստակի կորուստը: Նկատի ունենալով այդ հանգամանքը, ցանկալի կլիներ փոխել գործող կանոնները, որպեսզի դրանք նախատեսեին տուժողների իրավունքը՝ պահանջելու վնասի հատուցումը լրիվ ծավալով, հաշվի առնելով աշխատավարձի մակարդակի փոփոխումը:

Բանվորների ու ծառայողների վնասվածքի համար ձեռնարկությունների պատասխանատվության հարցը հանրապետության աշխատանքային օրենսգրքում մտցնելը ցույց է տալիս իրավահարաբերությունների էությունից ծագող այդ հարաբերությունների կարևորությունը և, որ ամենագլխավորն է, մեծ չափով ուժեղացնում է աշխատանքի պաշտպանության երաշխիքը:

Աշխատանքային օրենսգիրքն աշխատանքի պաշտպանությանը նվիրված գլխում մանրամասն սահմանում է ձեռնարկության, հիմնարկության, կազմակերպության բանվորին կամ ծառայողին պատճառված վնասվածքի հատուց-

ման վերաբերյալ վեճերի լուծման (182 հոդված), ինչպես նաև խեղմամբ կամ առողջության այլ վնասվածքով բանվորին կամ ծառայողին պատճառած վնասի հատուցման վերաբերյալ վեճի առթիվ արհեստակցական միության կոմիտեի որոշման հարկադրական կատարման կարգը (183 հոդված)։ Այս ամենը ցույց է տալիս, որ Հայկական ՍՍՀ աշխատանքային նոր օրենսգիրքը, աշխատանքային իրավահարաբերություններից բխող մյուս հարցերի հետ մեկտեղ, բավականին մանրամասն կարգավորում է արդյունաբերության մեջ աշխատանքի պաշտպանության իրավական հարցերը և հանրապետության աշխատանքային օրենսդրության կատարելագործման մի նոր փուլ է։ Սակայն, որքան էլ կատարյալ լինեն գործող օրենսդրության աշխատանքի պաշտպանության նորմանները, դրական արդյունք չի ստացվի, եթե պրակտիկայում դրանք անտեսեն առանձին ղեկավարներ։ Անհրաժեշտ է ապահովել գործող աշխատանքային օրենսդրության խստիվ ու անշեղ կատարումը։

Այժմ, երբ վիթխարի չափերի է հասել արդյունաբերական արտադրության աճը հանրապետությունում և առավել մեծ չափերի կհասնի ընթացիկ հնգամյակում, մեր կարծիքով, ժամանակն է ո՛չ միայն ավելի զարգացնելու և կատարելագործելու արդյունաբերության մեջ աշխատանքի պաշտպանության գործող նորմանները, այլև փոխելու արտադրությունում այդ հարցերով զբաղվող մարմինների կառուցվածքը։

Պրակտիկան ցույց է տալիս, որ այսօր արդեն այնքան էլ արդյունավետ չէ անվտանգության տեխնիկայի այն անձնակազմերի աշխատանքը, որոնք անմիջականորեն գտնվում են ձեռնարկությունների ղեկավարության ենթակայության ներքո, մանավանդ փոքր ձեռնարկություններում կամ այնտեղ, ուր ցածր է աշխատանքային կարգապահությունը։

Թվում է, թե աշխատանքի պաշտպանության հարցերը անհրաժեշտ է լուծվել ամբողջ հանրապետության մասշտաբով։ Այդ դեպքում անվտանգության տեխնիկայի նույն անձնակազմերը, մնալով տեղերում, բոլոր հարցերով կհրահանգավորվեն կենտրոնական մարմինների կողմից և անմիջականորեն կենթարկվեն նրանց։ Դա կնշանակի, որ անվտանգության տեխնիկայի բնագավառում աշխատողների հաստիքները ձեռնարկություններում պետք է կրճատվեն և հանձնվեն աշխատանքի պաշտպանության նոր ստեղծվելիք կենտրոնական մարմիններին։ Կառուցվածքային այդ փոփոխությունները ֆինանսական լրացուցիչ հատկացումներ գրեթե չեն պահանջի, սակայն նոր, ավելի արդյունավետ մոտեցման շնորհիվ զգալիորեն կնվազեն աշխատանքային խեղման և պրոֆեսիոնալ հիվանդությունների թիվը, աշխատանքի պաշտպանության միջոցառումների ծախսերը և կբարձրանա պաշտոնատար անձանց պատասխանատվությունը հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում։



# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՎԱԼՅՈՒՏԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԻ ԱՐԴԻ ՃԳՆԱԺԱՄԸ

Ինչպես առանձին երկրի, այնպես և կապիտալիզմի համաշխարհային էկոնոմիկայի պրոբլեմների կոմպլեքսը վերլուծվում է երեք մոտեցմամբ՝ արդյունաբերական պոտենցիալի, ապրանքաշրջանառության և ֆինանսա-վալյուտային իրավիճակի տեսանկյունից։ Այդ երեք ոլորտները գտնվում են սերտ կապի և փոխազդեցության մեջ. որոշիչը, առաջնայինը, իհարկե, արդյունաբերությունն է, նյութական բարիքների արտադրությունն ընդհանրապես։ Սակայն, հայտնի է, որ շրջանառությունը հետադարձ նշանակալի ներգործություն է ունենում արտադրության վրա։ Իսկ ֆինանսավալյուտային ոլորտը ոչ միայն ուղղակիորեն ներգործում է ամբողջությամբ վերցրած էկոնոմիկայի վրա, այլև մի հայտարարի է բերում տարբեր բնագավառների գործերի վիճակը, սինթեզում է ինչպես առանձին երկրի, այնպես և կապիտալիզմի համաշխարհային էկոնոմիկայի տարբեր կողմերի զարգացման ընթացքը։ Ինչպես արտադրության, այնպես և առևտրի տենդենցները իրենց անմիջական արտացոլումն են գտնում ֆինանսա-վալյուտային հայելու մեջ։

Կապիտալիզմի ֆինանսա-վալյուտային սիստեմը ներկայումս խոր ճգնաժամ է ապրում։ Թեև պետք է ասել, որ ֆինանսա-վալյուտային անկայունությունը և այս բնագավառում միջազգային հակասությունները հատուկ են առհասարակ XX դարի կապիտալիզմին։ Դրանք պայմանավորված են տնտեսական անհամապայմանավորված զարգացման օրենքի գործողությամբ՝ արդյունաբերական արտադրության աճի տեմպերի, համաշխարհային առևտրում առանձին երկրների բաժինների և, անմիջականորեն՝ ոսկու պաշարների անհամաչափ փոփոխություններով։ Սակայն այս բնագավառում կապիտալիստական աշխարհում սրվող հակասության, ֆինանսա-վալյուտային արդի ճգնաժամի առանձնահատկությունն այն է, որ այն մշտական է դարձել և վերջին տարիներին գնալով խորանում է։ Կարելի է վստահորեն ասել, որ այդ երևույթները կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երրորդ էտապի բնորոշ դրսևորումներից են։

Իսկ որո՞նք են այն ախտանիշերը, այն հիմնական արտաքին նշանները, որոնք ֆինանսա-վալյուտային սիստեմի ճգնաժամային վիճակն են ազդարարում այսօր։ Դրանցից գլխավորներն են՝ վալյուտային պարիտետներից վալյուտային կուրսերի մեծ շեղումները, ոսկու գնի բարձրացումը, վալյուտային բորսաների պարբերաբար փակվելը, վալյուտաների դևալվացիաները (թղթադրամի մեջ ոսկու պարունակության իջեցումը պետության կողմից), օտարերկրյա պետությունների ճնշմամբ այլ ազգային վալյուտաների ռևալվացիաները (թղթադրամի մեջ ոսկու պարունակության բարձրացումը պետության կողմից), միջազգային կազմակերպությունների պայմանագրային պահանջների ոտնահարման և միակողմանի շրջանցման կրկնվող դեպքերը և այլն։

Թվարկված երևույթները ֆինանսա-վալյուտային ճգնաժամի դրսևորումների օրինակներ են ընդհանրապես։ Արդի ճգնաժամի առանձնահատկությունը ոչ միայն այն է, որ այդ երևույթները ուժեղ են արտահայտվում, այլև տեղի է ունենում «թափառող», այսինքն՝ չփոխանակվող դոլարների գումարների արագ աճ, դոլարի դևալվացիա։ Բավական է ասել, որ

1934 թվականից հետո առաջին անգամ՝ 1971 թ. դեկտեմբերին և ապա 14 ամիս անց՝ 1973 թ. փետրվարին, ամերիկյան դոլարը դևալվացիայի ենթարկվեց: Այդ ճգնաժամի մասին պատկերացում կազմելու համար անհրաժեշտ է բնութագրել միջազգային վալյուտային ֆոնդը, այն մեխանիզմը, որը կոչված է կարգավորելու ֆինանսա-վալյուտային հարաբերությունները կապիտալիստական աշխարհում:

Միջազգային վալյուտային ֆոնդը հիմնադրվեց 1944 թ. և սկսեց գործել 1947-ին: Նրանում ներկայումս ընդգրկված են 124 անդամ-պետություններ: Ֆոնդը ոչ թե սովորական վարկավորող է, այլ մի կազմակերպություն, որն անդամ երկրի ազգային վալյուտան առք ու վաճառքի ձևով փոխանակում է այլ անդամ պետության վալյուտայի հետ՝ սահմանված կուրսով: Ամեն մի անդամ-պետություն ունի 250 ձայն, գումարած 1 ձայն յուրաքանչյուր 100 հազար դոլար ներդրման համար: Եվ որովհետև այդ մասնորդների (քվոտաների) գումարները պարբերաբար փոփոխվում են, համապատասխանաբար փոխվում են նաև տարբեր անդամ-պետությունների ձայները: Այսպես, միջազգային վալյուտային ֆոնդի հիմնադրման ժամանակ ԱՄՆ-ը ուներ բոլոր ձայների 30 տոկոսը, իսկ այժմ՝ 21,1: Անգլիայի բաժինը իջավ համապատասխանաբար 14-ից 8,9 տոկոսի և այլն:

Միջազգային վալյուտային ֆոնդի կարևորագույն սկզբունքները հետևյալներն են. առաջին, այն, որ անդամ-պետությունների ազգային վալյուտաների պարիտետները (ոսկու բովանդակությունը) սահմանվում է ոչ թե անմիջապես ոսկու միջոցով, այլ ամերիկյան դոլարի հետ նրանց պարիտետային կուրսին համապատասխան: Այսպիսով, դոլարն ընդունվեց որպես մի տեսակ էտալոն, մյուս պետությունների վալյուտաների ոսկու պարունակությունը չափակցելու համար: Ինչ վերաբերում է դոլարին, ապա 1 ունցիա ոսկին հավասարված էր 35 դոլարի, այսինքն՝ մեկ դոլարի ոսկու բովանդակությունը ընդունված էր 0,888671 գրամ ոսկի: Այսպիսով, ոսկու պաշտոնական գինը ածանցյալ է դոլարի պարիտետից, այսինքն՝ դոլարի ոսկու բովանդակությունից: Երկրորդ, անդամ-երկրների բանկերը և միջազգային վալյուտային ֆոնդը ազգային վալյուտաների փոխանակումը կատարում են կայուն կուրսով, իսկ շեղումները, ինչպես այն ժամանակ սահմանվեց, չպետք է անցնեն ±1 տոկոսից. երրորդ, անդամ-երկրների կենտրոնական բանկերը պետք է սատարեն ազգային վալյուտաների, մասնավորապես ամերիկյան դոլարի կայունությունը. այդ նպատակով նրանք պարտավորվում են գնել ավելորդ դոլարները, եթե քանակի ավելացման հետևանքով կուրսը ընկել է և վաճառել դոլարներ, եթե քանակի պակասեցման հետևանքով կուրսը բարձրացել է: Չորրորդ, անդամ-պետությունները միմյանց միջև փոխադարձ հաշվարկներում իրավունք ունեն վճարումների բալանսների դեֆիցիտը ծածկել դոլարներով: Եվ, վերջապես, անդամ-երկրների կենտրոնական բանկերը իրավունք ունեն իրենց տրամադրության տակ եղած դոլարները ցանկացած ժամանակ ոսկով փոխանակել ԱՄՆ-ում: Այս վերջին սկզբունքը փաստորեն նշանակում է, որ ստեղծվեց ոսկե-դոլարային ստանդարտը, որը և պետությունների՝ ֆոնդին միանալու կարևոր շարժառիթներից էր:

Դոլարի պաշտոնական պարիտետը, այլ կերպ ասած՝ ոսկու պաշտոնական գինը արտահայտած դոլարներով, ըստ միջազգային վալյուտային ֆոնդի սկզբունքների, սահմանված կայուն մեծություն է: Սակայն կապիտալիստական աշխարհում կան նաև ոսկու շուկաներ, որտեղ գները սահմանվում են պահանջի և առաջարկի հարաբերակցության հիման վրա՝ տարերայնության քմահաճությամբ: Այս պայմաններում ոսկու շուկաները դառնում են դոլարի փաստացի դրության իրական արտահայտիչները, երբ ոսկու շուկայական գինը արտահայտած դոլարներով բարձրանում է պաշտոնական գնից, դա դոլարի նկատմամբ անվստահության արտահայտությունն է, դոլարի հեղինակության և փաստացի գնողունակության անկման վկայությունը:

Երբ վալյուտաների, մասնավորապես՝ ռեզերվային վալյուտաների անկայունությունը մեծ չափերի է հասնում և ճգնաժամային վիճակ է ընդունում, սկսվում է այդ վալյուտաների փոխանակումը ոսկով, այսինքն՝ ոսկու անհագ առքը ինչպես դրամի, այնպես և պերճանքի առարկաների ու ձուլակների ձևով: Նման գնումները ոսկու շուկաներում եղել են կապիտալիզմի զարգացման բոլոր աստիճաններում և անվանվում են ոսկու թեզավրացիա: Սակայն չափազանց մեծ մասշտաբների դեպքում այդ պրոցեսը ընդունում է ոսկու տենդի բնույթ:

Սկզբնական շրջանում միջազգային վալյուտային ֆոնդը համեմատաբար հաջող էր գործում: Դրա հիմնական պատճառն այն էր, որ ռեզերվային վալյուտան՝ ամերիկյան դոլարը, համեմատաբար կայուն էր. դա էլ իր հերթին պայմանավորված էր նրանով, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ամերիկյան իմպերիալիզմը լուրջ դիրքեր էր նվաճել կապիտալիզմի համաշխարհային էկոնոմիկայում ինչպես արդյունաբերական արտադրանքի, այնպես և արտաքին առևտրի, մանավանդ



արտահանումների տեսակարար կշռով: ԱՄՆ-ի վճարումների բալանսը շարունակ ակտիվ էր. մոնետար ոսկու կապիտալիստական համաշխարհային պաշարների 70 տոկոսը կենտրոնացված էր ԱՄՆ-ում: Այդ է պատճառը, որ իր պատմության առաջին էտապում՝ 1947—1959 թթ., միջազգային վալյուտային ֆոնդը բավական հաջող էր գործում: Սա ամենևին չի նշանակում, թե այդ ժամանակաշրջանում կապիտալի աշխարհում ֆինանսա-վալյուտային հակասություններ կամ անկայունության երևույթներ չկային: Հենց այդ տարիներին է, որ արևմտաեվրոպական մի շարք ազգային վալյուտաներ դևալվացիայի ենթարկվեցին: Ինչ վերաբերում է դոլարին, ապա դրա կուրսը պատշաճ մակարդակի պահելու այլ պետությունների ջանքերն ավելորդ էին. զգացվում էր «դոլարի սով»:

Միջազգային վալյուտային ֆոնդի զարգացման երկրորդ էտապը, կապիտալիստական աշխարհում ֆինանսա-վալյուտային հակասությունների սրման և ճգնաժամային վիճակի ծավալման սկիզբը ընդգրկում է 1959—1967 թվականները: Ամերիկյան դոլարը սկսեց դժվարությամբ կատարել ռեզերվային վալյուտայի իրեն վերապահված դերը: Դոլարի նկատմամբ անվստահության առաջին լուրջ ահազանգը հնչեց 1960 թվականին, երբ շուկաներում ոսկու մեկ ունցիայի գինը բարձրացավ 40 դոլարի՝ պաշտոնական 35 դոլարի դիմաց: Եվ, վերջապես, երրորդ էտապը ընդգրկում է 1967 թվականից մինչև մեր օրերը, երբ կապիտալիզմի ֆինանսա-վալյուտային ոլորտը դուրս չի գալիս խոր ճգնաժամային վիճակից, կրախի է մատնվել միջազգային վալյուտային ֆոնդի ամբողջ մեխանիզմը, ամերիկյան դոլարը արդեն իսպառ կորցրել է իր երբեմնի կայունությունը, հեղինակությունն ու ռեզերվային վալյուտային ֆունկցիան կատարելու հնարավորությունները: Այս բոլորի հիմքում ընկած է տնտեսական զարգացման անհամաչափության ուժեղացումը և առաջին հերթին, ԱՄՆ-ի դիրքերի խախտումը համաշխարհային էկոնոմիկայում: Այսպես, եթե կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրանքի մեջ ԱՄՆ-ի բաժինը 1950 թ. կազմել է 52,8 տոկոս, ապա 1970 թ. իջել է 39,5 տոկոսի: Նույն ժամանակաշրջանում նրա բաժինը կապիտալիստական արտահանումների մեջ 32 տոկոսից իջել է 15-ի:

Ֆինանսական անկայունության և դոլարի դիրքերի խախտման երկրորդ պատճառը ռազմական ծախսերի արագ աճն ու պետական բյուջեի խրոնիկական դեֆիցիտն է: Բավական է ասել, որ 1961—1970 թթ. ԱՄՆ-ի ռազմական ծախսերն աճել են $^2/_3$-ով և կազմում են բյուջետային հատկացումների 70 տոկոսը: Վերջին ֆինանսական տարում ԱՄՆ-ի ռազմական ծախսերը կազմել են մոտ 80 միլիարդ դոլար: Պետական բյուջեի դեֆիցիտների ընդհանուր գումարը 1961—1970 թթ. կազմել է 60 միլիարդ դոլար, իսկ միայն մեկ՝ 1970/71 ֆինանսական տարում՝ 23,2 միլիարդ դոլար: Նման պայմաններում բնական է, որ պետք է ավելի ինտենսիվ գործեր էմիսիոն մեքենան, որի անխուսափելի հետևանքը ինֆլյացիան է: Եվ, իրոք, եթե 1961—1970 թթ. արդյունաբերական արտադրանքի ծավալը ԱՄՆ-ում աճել է 49 տոկոսով, ապա շրջանառության մեջ առկա դրամի քանակը նույն ժամանակամիջոցում աճել է 65 տոկոսով: 1959—1968 թթ. ժամանակաշրջանում ամերիկյան դոլարի գնողունակությունը տարեկան իջել է 2,2 տոկոսով, իսկ 1968-ից մինչև 1971 թվականը՝ տարեկան 5,5 տոկոսով, մինչդեռ մինչև 1971 թ. դեկտեմբերը դոլարի պաշտոնական պարիտետը արհեստականորեն պահպանվել է 1 ունցիա ոսկին = 35 դոլար մակարդակի վրա: Ինֆլյացիայի հետևանքն էր, որ 1968 թ. ԱՄՆ-ում վերացվեց ներքին դրամաշրջանառության 25 տոկոսի ոսկով ապահովվածության սահմանված կարգը:

Չնայած կիրառվող հակաինֆլյացիոն քաղաքականությանը, շրջանառության ոլորտներում գտնվող դրամական մասսան արագորեն ավելանում էր նաև կապիտալիստական մյուս երկրներում անհամեմատ ավելի արագ, քան ազգային համախառն արտադրանքը: Այսպես, 1972 թ. ընթացքում դրամական մասսան աճեց Ճապոնիայում 13 տոկոսով, ԳՖՀ-ում՝ 14,3, Իտալիայում՝ 18,9, Ֆրանսիայում՝ 20 տոկոսով: Դրա հետևանքով արագորեն բարձրանում են ապրանքագները:

Դոլարի անկայունության ուժեղացման երրորդ պատճառը ԱՄՆ-ի վճարումների բալանսի դեֆիցիտն է: Ճիշտ է, դեֆիցիտայնությունը հատուկ է եղել ԱՄՆ-ի վճարումների բալանսին նաև նախորդ էտապում, սակայն վերջին շրջանում այն ձեռք է բերել սուր արտահայտված խրոնիկական բնույթ: Այսպես, եթե 1958—1970 թթ. ընկած ժամանակամիջոցում վճարումների բալանսների դեֆիցիտների ընդհանուր գումարը կազմել է 38,3 միլիարդ դոլար, ապա միայն մեկ ֆինանսական տարում՝ 1970/1971-ին կազմել է 10,7 միլիարդ, իսկ 1971/1972-ին՝ 23,2 միլիարդ և 1972/1973 ֆինանսական տարում՝ 27 միլիարդ դոլար: Իր հերթին, վճարումների բալանսների դեֆիցիտի արագ աճի հիմնական պատճառները երկուսն են. նախ՝ արտասահմանյան երկրներում ռազմա-քաղաքական վիթխարի ծախսերը, որոնք 1960—1969 թթ. կազմել են 93,4 միլիարդ դո-

լար, երկրորդ՝ կապիտալի մեծ չափերի հասնող արտահանումները. բավական է ասել, որ վերջին տարում ամերիկյան մասնավոր կապիտալի գումարը արտասահմանում հասել է 90 միլիարդ դոլարի:

Դոլարի անկայունության ուժեղացման չորրորդ պատճառը այլ, մասնավորապես, արևմտաեվրոպական երկրների կենտրոնական բանկերում գտնվող դոլարների քանակի արագ մեծացումն է: Եթե եվրադոլարների գումարը 1958 թ. կազմել է 15,6 միլիարդ, 1970 թ.՝ 43,3 միլիարդ, ապա այժմ հասել է 80 միլիարդ դոլարի: Մինչդեռ ԱՄՆ-ի կարճատև պարտավորությունների մարման, այսինքն՝ «թափառող դոլարների» ոսկով հետգնման հնարավորությունները անհամեմատ փոքրացել են: Ահա և դոլարի անկայունության ուժեղացման հինգերորդ պատճառը՝ ԱՄՆ-ի ոսկու պաշարների կրճատումը: 1958 թվականից սկսվել է ԱՄՆ-ից ոսկու մշտական արտահոսքը. եթե Ֆորտ Նոկսում ամերիկյան ոսկու պաշարները 1949 թ. կազմել են 24,6 միլիարդ դոլար, 1960 թ.՝ 18, 1970 թ.՝ 11, ապա այժմ՝ ընդամենը շուրջ 9 միլիարդ դոլար: Իսկ չէ՞ որ, ինչպես ասվեց Եվրոպայում «թափառող դոլարների» գումարը հասել է 80 միլիարդի, որը ոսկով մարելու անհրաժեշտության դեպքում ԱՄՆ-ը պետք է գրեթե 9 անգամ ավելի շատ դեղին մետաղ ունենար, քան ունի այժմ:

Ահա, միասին վերցրած այս բոլոր հանգամանքները բացատրում են, թե ինչո՞ւ «դոլարի սովին» 1959 թվականից եկավ փոխարինելու «դոլարի ավելցուկը», «փախուստը դոլարից», իսկ դոլարի մասին սկսեցին խոսել որպես «էժան վալյուտա», «թափառող վալյուտա» և արագորեն բարձրացավ ոսկու գինը՝ արտահայտված դոլարներով:

Կապիտալիզմի ժամանակակից ֆինանսա-վալյուտային ճգնաժամի խորացումը, իհարկե, չի արտահայտվում միայն ամերիկյան դոլարի անկայունության ուժեղացման մեջ: 1967 թ. նոյեմբերին դևալվացվեց ֆունտ ստեռլինգը, 1969 թ. օգոստոսին՝ ֆրանսիական ֆրանկը, այնուհետև 18 այլ ազգային վալյուտաներ: Սակայն դոլարի անկայունության ուժեղացումը և, մանավանդ, նրա դևալվացիան կապիտալիստական աշխարհի ֆինանսա-վալյուտային ճգնաժամի գագաթնակետն էր: Չէ՞ որ ըստ միջազգային վալյուտային ֆոնդի պայմանների, ամերիկյան դոլարին վերապահված էր յուրահատուկ դեր: Եվ այդ ապահովելու համար պետությունները պարտավոր են պահպանել դոլարի կայունությունը՝ «թափառող» ավելորդ դոլարներն իրենց ազգային վալյուտաներով կամ ոսկով գնելու ձևով:

Դոլարը փրկելու ԱՄՆ-ի ջանքերը կարող են ուղղված լինել նաև վճարումների բալանսի վիճակը բարելավելու միջոցով ոսկու պաշարները մեծացնելու նպատակին: Սակայն ամերիկյան իմպերիալիզմը չի ուզում արտասահմանյան ռազմա-քաղաքական բնույթի ծախսերի կրճատման ուղիով բարելավել վճարումների բալանսը: Մնում է կարգավորել վճարումների բալանսի մյուս կարևոր բաղկացուցիչ մասը՝ առևտրի բալանսը: Սակայն միջազգային ապրանքաշրջանառության զարգացման ժամանակակից անհամաչափության պայմաններում արտահանումների ֆիզիկական ծավալը մեծացնելու միջոցով ԱՄՆ-ի դիրքերն ամրապնդելու հեռանկարները ոչ մի լավ բան չեն խոստանում: Միակ հնարավորությունը վալյուտային պատերազմ հայտարարելն է. այսինքն՝ ստեղծել վալյուտային այնպիսի կուրս, որպեսզի հնարավոր լինի արտահանումների նույն ֆիզիկական ծավալի պայմաններում առավել նպաստավոր արժեքային հարաբերություն ապահովել ԱՄՆ-ի համար: Դրան կարելի է հասնել այլ ազգային վալյուտաների ռևալվացիայի, այսինքն՝ ոսկու պարիտետի բարձրացման միջոցով, որը, միաժամանակ, կապահովի ամերիկյան ապրանքների մրցունակությունը շուկաներում: ԱՄՆ-ի տնտեսական ու քաղաքական բազմակողմանի ճնշմանը երկար դիմադրելուց հետո, վերջապես 1969 թ. հոկտեմբերին ռևալվացվեց, օրինակ, արևմտագերմանական մարկը:

Անշուշտ, ռևալվացիան ընդհանրապես կարող է իրականացվել համեմատաբար կայուն էկոնոմիկայի, ֆինանսական դրության, մասնավորապես նշանակալի և տևական ակտիվ վճարումների բալանսի պայմաններում միայն. այն ազգային վալյուտայի նկատմամբ վստահության բարձրացման, այլ երկրների կողմից տվյալ պետության հետ ֆինանսա-վարկային ու վալյուտային գործարքների ընդարձակման շահագրգռվածության հիմքն է: Սակայն, մյուս կողմից, ռևալվացիան բացասաբար է անդրադառնում տվյալ երկրի արտաքին առևտրի, ուստի և վճարումների բալանսի վրա: Իսկ վճարումների բալանսի դրության վատթարացումը այդ երկրի ազգային վալյուտայի համար ամենաապառնալի գործոնն է: Այսպիսով, առաջանում է մի փակ օղակ: Դևալվացիան, ընդհակառակը, որոշ բարելավում է ստեղծում արտաքին շուկաների հաշվին, սակայն ավելի խոր վերքեր է թողնում երկրի ներքին էկոնոմիկայի վրա, չխոսելով այն մասին, որ, առաջացնելով ապրանքագների բարձրացում և գործազրկության ուժեղացում, վատթարացնում է աշխատավորների դրությունը:



Իսկ ինչպե՞ս է, որ ազգային վալյուտայի ռևալվացիան (բացասական) և դևալվացիան (դրական) ներգործություն են ունենում տվյալ երկրի արտաքին առևտրի, հետևաբար և վճարումների բալանսի վրա:

Ենթադրենք արևմտագերմանական մարկի ոսկու բովանդակության մեծացման, այսինքն՝ ռևալվացիայի հետևանքով նրա կուրսը դոլարի նկատմամբ բարձրացել է 10 տոկոսով, 1 դոլար = 3,5 մարկից աճել է 1 դոլար = 3,15 մարկի: Այս փոփոխությունից հետո, դեպի ԱՄՆ կատարվող անփոփոխ ֆիզիկական ծավալի դիմաց, արևմտագերմանական արտահանողները կստանան դոլարներով արտահայտած 10 տոկոսով ավելի քիչ գումար (այլ հավասար պայմաններում), քանի որ մարկի «արժեքը» արտահայտած դոլարներով բարձրացել է 10 տոկոսով: Եթե նախկինում 100 դոլար գումարի վաճառք կատարելու համար անհրաժեշտ էր 28,6 մարկի (100 : 35 = 28,6) ապրանք իրացնել, ապա այժմ այդ նույն 100 դոլարի համար պետք է 31,4 մարկ (100 : 3,15 = 31,4) արժողությամբ: Ուրեմն, արտահանումների նույն ֆիզիկական ծավալի պայմաններում 10 տոկոսով կաճի արևմտագերմանական արտահանումների արժեքային գումարը: Սակայն սա դեռ բոլորը չէ: Ռևալվացիան, մյուս կողմից, կվատթարացնի արևմտագերմանական ապրանքների մրցունակությունը համաշխարհային շուկաներում, որովհետև 10 տոկոսով կբարձրանան դրանց գները՝ արտահայտած դոլարներով: Իսկ մրցակից պետությունները հնարավորություն կստանան մինչև 10 տոկոսի սահմանը բարձրացնել արտահանումների գները, այնուամենայնիվ, շահելով գների մեխանիզմով պայմանավորված մրցակցային պայքարում: Եվ, վերջապես, մարկի ռևալվացիան վատթարացնում է արևմտագերմանական մոնոպոլիաների վիճակը և նպաստավոր պայմաններ է ստեղծում այլ պետությունների համար հենց ԳՖՀ-ում: Օրինակ, ամերիկյան 1 դոլար գին ունեցող ապրանքը ԳՖՀ-ում արդեն կվաճառվի ոչ թե 3,5, այլ 3,15 մարկով:

Հասկանալի է, որ տրամաբանորեն հակադարձ դատողությամբ պետք է ըմբռնել ազգային վալյուտայի դևալվացիայի դրական ներգործությունը տվյալ երկրի արտաքին առևտրի դրության վրա:

1961 թվականին, այսինքն՝ այն ժամանակ, երբ կապիտալիզմի ֆինանսա-վալյուտային հարաբերությունները թևակոխել էին հետպատերազմյան պատմության երկրորդ փուլը, միջազգային վալյուտային ֆոնդի ներսում, ԱՄՆ-ի նախաձեռնությամբ ու գլխավորությամբ, ստեղծվեց «ոսկե պուլը»:

Այն կոչված էր կանխելու ոսկու թանկացումը կամ դոլարի արժեզրկումը: Օրինակ, միայն մեկ տարում՝ 1964 թվականին, ԳՖՀ պուլի անդամության իր պարտավորությունների կատարման ձևով 4 միլիարդ մարկի վալյուտա ձեռք բերեց: «Ոսկե պուլը» ժամանակավոր և կարճատև շնչառություն տվեց վալյուտային միջազգային մեխանիզմին, սակայն վերևում թվարկված ֆինանսական ցնցումների հիմնական շարժառիթները չվերացան: Չնայած դոլարի վիթխարի գնումներին, շարունակվում էր միջազգային վալյուտային կանալների հեղեղումը ամերիկյան դոլարով այն դեպքում, երբ, ինչպես նշվեց, արագորեն նվազում էին ԱՄՆ-ի ոսկու պաշարները: Եվ ահա ֆինանսական առաջին դեմարշը կատարեց Ֆրանսիան, դուրս գալով ոսկե դևիզային ստանդարտի սիստեմից և դոլարային ակտիվների զգալի մասը փոխանակեց ոսկով:

Հետպատերազմյան շրջանում կապիտալիստական աշխարհի ֆինանսա-վալյուտային հարաբերությունների զարգացման արդի՝ երրորդ էտապում հաճախակի են դարձել «ոսկու տենդի» սուր բռնկումները: Առաջին անգամ այն տեղի ունեցավ 1967 թ. աշնանը, ապա 1968 թ. գարնանը, 1971 և 1972 թվականների ամռանը և 1973 թ. մարտ ամսին:

«Ոսկու տենդը»՝ ոսկու ազատ շուկաներում գների հանկարծակի և կտրուկ բարձրացումն է, որպես հետևանք ոսկու նկատմամբ կոնյունկտուրային պահանջի մեծացման: Դա էլ, իր հերթին, պայմանավորված է արտասովոր չափերով ոսկու գնումներով, որը տարերայնորեն և օրինաչափորեն ծայր է առնում, երբ գլխավոր վալյուտաները կամ վալյուտան սկսում է ճգնաժամ ապրել:

Դոլարի հեղինակազրկման, մեկուսացման առաջին դրսևորումը շոշափելիորեն նկատվեց դեռ 1960 թվականին (և հենց այդ պատճառով էլ 1961 թ. կազմակերպվեց «ոսկե պուլը»), երբ ոսկու շուկաներում 1 ունցիա ոսկու գինը բարձրացավ 40 դոլարի, այսինքն՝ 5 դոլարով ավելի բարձր, քան պաշտոնական գինը:

1968 թ. գարնանը անգլիական ֆունտ ստեռլինգի դևալվացիայի և ամերիկյան դոլարի նկատմամբ անվստահության ուժեղացման հետևանքով ծավալված ոսկու տենդի ժամանակ «ոսկե պուլի» երկրները 5 ամսվա ընթացքում վաճառեցին 1,5 միլիարդ դոլար արժողությամբ ոսկի, որը, սակայն, կազդուրիչ ազդեցություն չունեցավ: Եվ ահա 1968 թ. մարտին, ոսկու նկատմամբ պահանջի աննախադեպ մեծացման հետևանքով, «ոսկե պուլը» տարրալուծվեց: Որոշվեց դադարեցնել գործարքները ոսկու մասնավոր շուկաներում. դրանով ոսկու

երկհարկանի գնագոյացում սահմանվեց, ըստ որում, ոսկու մասնավոր շուկաներում այն թողնվեց տարերայնության քմահաճույքին: Սա դոլարի փաստացի դևալվացիան էր ազատ շուկաներում: Դոլարի արագ դևալվացիան հավասարակշռելու համար ԱՄՆ-ը դիմեց ևս մի արտակարգ միջոցի՝ 1969 թ. դեկտեմբերին վետո դրվեց Հարավ-Աֆրիկյան Հանրապետության ոսկու պաշտոնական գնումներին՝ ոսկու ուտիլիտար առաջարկը արհեստականորեն մեծացնելու նպատակով: Ապա նույն արգելքը դրվեց նաև միջազգային վալյուտային ֆոնդի առաջ. դրանով ժամանակավորապես փակվեց ոսկու հոսքը դեպի պետական գանձարաններ և դրա հունը ամբողջովին շուռ տրվեց դեպի մասնավոր շուկաներ, որտեղ ոսկու քանակի աճը, բնականաբար, պետք է ժամանակավորապես իջեցներ դոլարով արտահայտված ոսկու գինը, այսինքն՝ որոշ չափով պարիտետին մոտեցներ դոլարի կուրսը: Սակայն այս արտակարգ քայլը ևս չէր կարող զգալի նշանակություն ունենալ ոչ միայն այն պատճառով, որ ոսկու պաշտոնական գնումների արգելքը չէր կարող երկարատև լինել, այլև այն պատճառով, որ այդ քայլի դրական ներգործությունը բուն դոլարի առողջացման արդյունքը չէր:

Միջազգային վալյուտային ֆոնդը փրկելու հերթական միջոցառումը եղավ միջազգային նոր վճարելամիջոցի՝ «փոխառության հատուկ իրավունքի» սիստեմի կազմակերպումը, որն սկսեց գործել 1970 թ. հունվարից: Այս վճարելամիջոցը, որը հաճախ անվանվում է «հատուկ վալյուտա», կամ «թղթե ոսկի» շոշափելի չէ, կուպյուրների ձև չունի: Այն սոսկ հաշվարկների սիստեմ է, սիմվոլ է, որի միավորը հավասարեցված է 0,888671 գրամ ոսկու, այսինքն՝ դոլարի ելակետային պարիտետին: Այն կազմված է ոսկու քվոտաներից և ծառայում է որպես պարտավորությունները ծածկելու լրացուցիչ միջոց: Նպատակն այն է, որպեսզի վճարումների ակտիվ բալանս ունեցող երկրները վարկավորեն պասսիվ բալանս ունեցողներին: Ըստ որում, միջոցների 70 տոկոսը մարման ենթակա չէ և օգտագործվում է ինչպես ոսկի: 1970—1972 թթ. բաշխվել է 9,5 միլիարդ միավոր փոխառության հատուկ իրավունք:

Այնուամենայնիվ տնտեսական օրինաչափությունները իրենց ուղին հարթում էին. վալյուտային հերթական ցնցումների հետևանքով 1971 թ. մայիսին ռևալվացիայի ենթարկվեցին ավստրիական և շվեյցարական վալյուտաները, իսկ ԳՖՀ-ն, Բելգիան, Անգլիան, Իտալիան, Հոլանդիան, Կանադան և ավելի ուշ Ճապոնիան անցան «լողացող կուրսի»: Այդ երկրները հրաժարվեցին վալյուտային կուրսի կայունությունը պահպանելուց, որը միջազգային վալյուտային ֆոնդի կարևորագույն պահանջներից է:

Նման խառնաշփոթ իրավիճակում և Լոնդոնի ու Փարիզի բորսաներում ոսկու գնի արագ բարձրացման ընթացքում վրա հասավ 1971 թ. օգոստոսի 15-ի կիրակին, որը անվանվեց «սև կիրակի»: Այդ օրը պրեզիդենտ Նիքսոնը հայտարարեց ԱՄՆ-ի կողմից նախատեսվող նոր միջոցառումների մասին: Դրանց թվում (աշխատավարձի սառեցում, արդյունաբերական ընկերությունների եկամտահարկերի փոքրացում, զարգացող երկրներին ցույց տրվող օգնության սահմանափակում, պետական ծառայողների թվի 3 տոկոսով կրճատում) կատարվեցին ևս երկու «նորամուծություններ», որոնց նկատմամբ իմպերիալիստական մյուս երկրների ռեակցիան չէր կարող փոթորկալի չլինել. դրանք՝ ներմուծման մաքսային տարիֆները 10 տոկոսով ավելացնելու և, մանավանդ, արտասահմանում «թափառող դոլարները» կենտրոնական բանկերի կանալներով ԱՄՆ-ում ոսկով փոխարինումը դադարեցնելու մասին որոշումներն էին: Հարցը այն չէր միայն, որ «թափառող դոլարները» իսպառ կորցնում էին ոսկով փոխանակվելու հեռանկարային հույսերը, որ դոլարը դադարում էր ռեզերվային վալյուտա լինելուց, այլ այն, որ հանվում էր միջազգային վալյուտային ֆոնդի հիմնաքարը, փաստորեն փլուզելով կապիտալիզմի ֆինանսա-վալյուտային համաշխարհային հարաբերությունների ընտեղծված ամբողջ սիստեմը:

Այդ անսպասելի քայլից հետո դրությունը ոչնչով չբարելավվեց: Ոչ մի ելք չկարողացան հուշել նաև միջազգային վալյուտային ֆոնդի սեպտեմբերի 27-ի և հոկտեմբերի 2-ի վաշինգտոնյան արտակարգ խորհրդակցությունները: Եվ ահա 1971 թ. դեկտեմբերին ամերիկյան դոլարն առաջին անգամ պաշտոնապես դևալվացիայի ենթարկվեց: Մեկ ունցիա ոսկու պաշտոնական գինը 35 դոլարից բարձրացավ 38 դոլարի, այսինքն՝ 8,67 տոկոսով: Դրա հետևանքով իջավ դոլարի ոսկու բովանդակությունը: Եթե նախկինում այն հավասար էր 0,888671 գրամ ոսկու, ապա այժմ հավասարվեց 0,818513 գրամի: Այլ կերպ ասած՝ դոլարը դևալվացվեց 7,89 տոկոսով: Նույն, 1971 թ. դեկտեմբերի 17—18-ի վաշինգտոնյան խորհրդակցությունում Անգլիան և Ֆրանսիան ստեռլինգի և ֆրանկի նոր կուրս սահմանեցին դոլարի նկատմամբ՝ առանց, սակայն, փոփոխություն մտցնելու իրենց ազգային վալյուտաների ոսկու բովանդակության մեջ: Մյուս կողմից, այդ օրվանից վալյուտաների առք ու վաճառքի գծով միջազգային վալյուտային ֆոնդի բոլոր գործարքները, ինչպես նաև վիճակագրական աշխատանքը սկսեցին հաշվել միայն «փոխառության հատուկ իրավունքի» միավորներով: Միաժամանակ մեծացվեցին միջազգային վալյուտային ֆոնդի կանոնադրությամբ տրված վալյուտաների կուրսի տատանումների սահմանները ±1 տոկոսից հասցվելով ±2,25 տոկոսի: Իսկ եթե որևէ պետություն չի կարողանում պահպանել ազգային վալյուտայի կուրսը այդ սահմաններում, ապա պետք է կատարի դևալվացիա, կամ ռևալվացիա:

Դոլարի դևալվացիան և արևմտյան վալյուտաների փոխանակային կուրսերի մեջ փոփոխություններ մտցնելու մասին 1971 թ. ձեռք բերված համաձայնությունները վալյուտային տենդի ապարեզում սոսկ ժամանակավոր, մի քանի ամսվա դադար առաջացրին: 1972 թ. գարնանը նորից ամեն ինչ շարունակվեց հին հունով: 1972 թ. երկրորդ կեսին նորից խախտվեց անգլիական ստեռլինգի և ճապոնական իենի վիճակը, իսկ 1973 թ. հենց սկզբից՝ իտալական լիրայինն ու շվեյցարական ֆրանկինը:

1973 թ. փետրվարի 1-ից սկսվեց դոլարի աննախադեպ ավելցուկը արևմտաեվրոպական շուկաներում: Միայն մեկ շաբաթվա ընթացքում ԳՖՀ-ի ֆեդերալ բանկը 20 միլիարդ ֆրանկի «ազատ» դոլարներ գնեց: Սակայն աներևույթ կանալներով ամերիկյան արժեզրկված վալյուտան, ինչպես անցանկալի հորդառատ անձրև, դարձյալ գալիս ու հեղեղում էր արևմտաեվրոպական երկրներն ու Ճապոնիան: Կանգնելով փակուղու առաջ, ամերիկյան կառավարությունը ստիպված եղավ 1973 թ. փետրվարի 12-ին նորից հայտարարել դոլարի 10 տոկոսով դևալվացիայի մասին: Այսինքն՝ 14 ամսվա ընթացքում երկու անգամ իջեցվեց դոլարի ոսկու պարիտետը. 1 ունցիա ոսկու պաշտոնական գինը սահմանվեց 42,22 դոլար:

Այսպիսով, հիմնովին խախտվել են կապիտալիստական աշխարհի երբեմնի ամենակայուն վալյուտայի՝ դոլարի դիրքերը: Այն արդեն անցել է դևալվացվող, վստահություն չներշնչող, անհեռանկար վալյուտաների շարքը: Ներկայումս կապիտալիստական աշխարհի ֆինանսա-վալյուտային սիստեմում լիակատար քաոս է: Ամերիկյան իմպերիալիզմը ձգտում է այդ վիճակը ժամանակավոր բարելավել այլ երկրների, առաջին հերթին արևմտագերմանական մարկի ու ճապոնական իենի նոր ռևալվացիայի միջոցով: Այսպես, 1973 թ. մարտի 19-ին արևմտագերմանական մարկը նորից ռևալվացվեց, այս անգամ 3 տոկոսով: Մյուս երկրները, իրենց հերթին, պահանջում են, որպեսզի դոլարի գործերը բարելավվեն հենց ԱՄՆ-ի հաշվին, այսինքն՝ «անտեր» դոլարները ոսկով հետ գնվեն ԱՄՆ-ի կողմից: «Ընդհանուր շուկայի» ծրագրով, նախատեսված է մինչև 1980 թվականը ստեղծել այդ խմբավորման ներքին ինքնուրույն և նոր վալյուտային սիստեմ, որի ամենահետևողական պաշտպաններից է Ֆրանսիան: Ճապոնիան, որի դիրքերը կապիտալիզմի համաշխարհային էկոնոմիկայում արագորեն ուժեղանում են, շահագրգռված չէ ոչ դոլարի և ոչ էլ արևմտաեվրոպական վալյուտաների ամրապնդմամբ: Սակայն տնտեսապես առավել սերտորեն կապված լինելով ԱՄՆ-ի հետ, Ճապոնիայի վրա ճնշում գործադրելու լծակներն ավելի գործուն են:

Դժվար է կռահել, թե որ երկրի կամ երկրների և որ ազգային վալյուտայի կամ վալյուտաների հաշվին կարող է համեմատաբար մեղմացվել ֆինանսա-վալյուտային ժամանակակից ճգնաժամի լարված վիճակը: Սակայն մի բան պարզ է, որ այդ ճգնաժամը ոչ միայն կազմալուծել է իմպերիալիզմի ֆինանսա-վալյուտային սիստեմը, ոչ միայն խախտում և սրում է ընդհանրապես տնտեսական հարաբերությունների ամբողջությունը, այլև սպառնում է քաղաքական դաշինքներին:

Վ. Մ. ԳԱԲՈՒՋՅԱՆ

չափազանց «ընդարձակ» և այն էլ բավական մշուշապատ ձևով պատմելու Կամենևի փորձը։ Ընդգծելով, որ ձեռնարկությունների ազգայնացումն այն ժամանակ մեծ մասամբ տեղի էր ունենում ոչ թե միասնական պլանով, այլ նրանց մոտ ստեղծված բարդ պայմանների հետևանքով, տարերայնորեն, գլխավորապես տեղական օրգանների որոշումներով, նա սկզբում շատ երկար խոսեց այն մասին, թե որքան շատ սխալներ են թույլ տվել այդ ընթացքում, իսկ հետո ապացուցում էր պարենհարկին անցնելու անհրաժեշտությունն ու ճշտությունը...

Այս բոլորը կազմեց նրա զեկուցման գրեթե կեսը։ Միաժամանակ այդ անհարկի էր, քանի որ Լենինը իր ելույթներում արդեն մանրամասն պարզաբանել էր, թե ռազմական կոմունիզմի քաղաքականությունը մեր վզին է փաթաթել ռազմական իրադրությունը և որ այդ քաղաքականությունն իրականացնելիս, անշուշտ, կատարվել են նաև որոշ սխալներ[1]...

Խոսելով վերջին կիսամյակի փորձի մասին, զեկուցողը հանգամանորեն անդրադարձավ շուկայական հարաբերությունների զարգացմանը։

Կուսակցական նախորդ, մայիսյան կոնֆերանսում ընդունվել էր, որ նոր տնտեսական քաղաքականության հիմնական լծակը պետք է դառնա պետական արդյունաբերության և գյուղատնտեսության միջև կատարվող ապրանքափոխանակությունը, որը կկազմակերպվի մենաշնորհի իրավունքով՝ կոոպերացիայի միջոցով, տեղական շրջանառության ազատության սահմաններում։

Սակայն այդպիսի ապրանքափոխանակությունը ձախողվեց և 1921 թվականի օգոստոսին սովետական կառավարությունը հարկադրված եղավ հանել այդ սահմանափակումը։ Պարենմասնատրման վերացմամբ երկրում լայնորեն զարգացավ ներքին շուկան։

Մի շարք քաղաքներում առաջացան ապրանքային բորսաներ։ Շուկայում հանդես գալու համար արդյունաբերական ապրանքների բավարար ֆոնդ չունենալով դեռևս չկարողացանք շուկան պետական վերահսկողության ենթարկել։ Մյուս կողմից պարենի և հումքի բացակայության պատճառով արդյունաբերությունը շատ դանդաղ էր վերականգնվում։ Շուկայական հարաբերությունների հետագա զարգացումը սուր կերպով հարուցեց փողի հարցը։ Պատերազմական քայքայման և երաշտի հետևանքով ստեղծված սովի պայմաններում պետության աղքատությունը կառավարությանը հարկադրում էր պետբյուջեի խնայողության նպատակով համակողմանի կրճատել սովետական հիմնարկությունների պահպանման ծախսերը։ Անհրաժեշտ էր շուկան ենթարկել պետական վերահսկողության ու ղեկավարման, զարգացնել պետբանկի, ինչպես նաև վարկային ընկերությունների, կոոպերացիաների և պետական առևտրական կազմակերպությունների գործունեությունը։ Սուր կերպով ծառացավ շարունակ արժեզրկվող թղթադրամի թողարկումը նվազեցնելու հարցը։

Կոնֆերանսում շատ խոսվեց տնտեսական և, առաջին հերթին՝ արդյունաբերության հարցերին նվիրված զեկուցումների շուրջ, չէ՞ որ խոսքը փաստորեն արդյունաբերության վերընտեղծման մասին էր՝ «Գլխավոր արտադրուժերի՝ գյուղացիների ու բանվորների քայքայման, գերհոգնածության և ուժասպառման...»[2] ամենադժվարին պայմաններում։

Որոշեցին առաջին հերթին արտադրությունը կարգավորել երկրի կարևորագույն պետական արդյունաբերական ձեռնարկություններում, որոնք անցել էին կենտրոնի (ԺՏԳԽ) անմիջական տնօրինությանը։ Մեր արդյունաբերությունը, ինչպես այդ ասված է կուսկոնֆերանսի որոշումներում, «...հարմարվելով շուկայի պայմաններին և մրցման մեթոդներին, պետք է հասնի իր լիակատար տիրապետությանը»[3]։

...Կոնֆերանսում խոսվեց չափազանց սահմանափակ ուժերը, միջոցներն ու կադրերը առանձին ձեռնարկություններում ցրելու դեմ պայքարելու, պետական արդյունաբերության հիմնական ճյուղերը տրեստայնացնելու և «գերատեսչականության» մերժված սխեմի վերականգնում թույլ չտալու մասին։ Խոսվեց կենտրոնի իրավունքների և ձեռնարկությունների ղեկավարման մարզում սովետների աշխատանքի մեթոդների, տեղերի ու ձեռնարկությունների կոլեկտիվների նախաձեռնությունը պաշտպանելու, ինչպես և նրանց աշխատանքում տնտհաշվարկի արմատավորման, արդյունաբերության վերականգնման գործում արհմիությունների դերի ու նշանակության և շատ ու շատ այլ հարցերի մասին...

Զեկուցումները կոնֆերանսում քննարկվում էին շատ ակտիվ, կոնկրետ ու սուր, այս անգամ՝ առանց կուսակցության Կենտրոնական կոմիտեի գծի նկատմամբ ֆրակցիոնության կամ օպոզիցիայի, թեև զեկուցումներում քիչ չէին նաև անհամաձայնությունները...

Բայց կոնֆերանսն ամբողջովին գործարար բնույթ ուներ. այն նախապատրաստությունն էր մի քանի օր հետո կայանալիք՝ սովետների համառուսաստանյան IX համագումարի, որը պետք է որոշումներ ընդուներ հետագա տնտեսական շինարարության առավել կարևոր հարցերի վերաբերյալ։

[1] Տե՛ս В. И. Ленин. ПСС, т. 44, стр. 157, 159, 165, 194, 204, 212.

[2] Նույն տեղը, հ. 43, էջ 79։

[3] «ՍՄԿԿ-ն համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում», հ. I, 1954, էջ 758։



Հարկ եմ համարում մի քիչ ավելի մանրամասն անդրադառնալ արտաքին առևտրի մենաշնորհի վերաբերյալ մի շարք պատգամավորների կարծիքներին։

Արտաքին առևտրի հարցը կոնֆերանսում ծագեց այն առիթով, որ ժողովրդական տնտեսության վերականգնման համար անհրաժեշտ է արտասահմանյան շուկայի հետ առևտրական, արդյունաբերական ու վարկային՝ մեզ համար ամենաշահավետ հարաբերություններ հաստատել և ամեն կերպ զարգացնել դրանք։

Այն ժամանակ ես դեռ իրազեկ չէի այդ հարցին և շատ բան հասկացա միայն հետագայում, երբ արտաքին առևտրի մենաշնորհի վերաբերյալ կուսակցության ղեկավարների վեճերը սուր տարաձայնությունների բնույթ ստացան։

Հանդես գալով XI կոնֆերանսում, Կամենևը մատնանշում էր, որ մենք պետք է մեր ձեռքում պահենք սոցիալիզմի բոլոր հիմնական «հրամանատարական բարձունքները», ինչպես և արտաքին առևտրի մենաշնորհը։ Այն ժամանակ մենաշնորհը թուլացնելու ոչ մի առաջարկ կամ նույնիսկ ակնարկ նա չարեց։

Իսկ կոնֆերանսի մի քանի այլ պատգամավորներ արտահայտվում էին ոչ միայն արտաքին առևտրի մենաշնորհի թուլացման, այլ, նույնիսկ, դրա փաստական վերացման օգտին։ Օրինակ, ԺՏԳԽ-ի նախագահության անդամ Վ. Միլյուտինը հայտարարեց. «...Այստեղ ես արտաքին առևտրի մասին չեմ վախենում ասել և կոնֆերանսը կարող է ուղղակի հայտարարել մասնավոր նախաձեռնությանը որոշ ազատություն տրամադրելու անհրաժեշտության մասին»[1]։

ԺՏԳԽ-ի մի այլ ղեկավար աշխատող՝ Սմիլգան, ավելի հեռուն գնաց, հայտարարելով, թե «...արտաքին առևտրի մենաշնորհը պահպանելու մեր քաղաքականությունը սխալ է»[2], և պահանջեց, որ կոնֆերանսի բանաձևը այդ հարցում ճշգրտվի։

Նույնիսկ սովորաբար զգույշ Ջուբարը՝ այն ժամանակ Դոնբասի տնտեսական ղեկավարը, իր ճառում ասաց, որ «արտաքին առևտրի բնագավառում պետք է կիրառվի բազմակողմանի մոտեցում»[3], ինչպես մենք այդ անում ենք տնտեսական մի շարք այլ հարցերում։

Այն ժամանակ ֆինանսների ժողկոմի տեղակալ Սոկոլնիկովը նույնպես պնդում էր, թե պետք է փոխել արտաքին առևտրի ձևերը։ Բայց բոլորից ավելի հեռուն գնաց Օսինսկին, որը բացեիբաց հայտարարեց, թե «...այժմ պետք է վճռականորեն հանդես գալ արտաքին առևտրի ազգայնացման դեմ, կանգ չառնելով երկդիմի դիրքի վրա»[4]։ Նա պնդում էր, թե առևտրի պետական մենաշնորհ ընդհանրապես հարկավոր չէ, այլ հարկավոր է մրցակցություն, «...այլապես բոլորը կքնեն և Արտառը ոչինչ չի անի։ Անհրաժեշտ է մենաշնորհը ոչնչացնել, ստեղծել բարձր մաքսային պատնեշ, որը կստեղծի նույնը, ինչ որ արտաքին առևտրի մենաշնորհը»[5]։

Դա բացահայտ լիկվիդատորական դիրքորոշում էր պրոլետարիատի դիկտատուրայի կարևոր հրամանատարական բարձունքներից մեկի նկատմամբ։

Եզրափակման խոսքում զեկուցողը մերժեց արտաքին առևտրի ապազգայնացման վերաբերյալ առաջարկությունները, հայտարարելով, սակայն, թե այժմ մեր երկրի ապրած ծանր ժամանակաշրջանի առնչությամբ արտաքին առևտրի դռները բացում ենք միայն կոոպերատիվ կենտրոնների և նահանգտնտխորհների համար։ Մասնավոր կապիտալի համար մենք դուռ կբացե՞նք, արդյոք, թե՞ ոչ,— ասաց Կամենևը։— Այժմ՝ ոչ, իսկ հետագայում արդյոք հարկադրված կլինե՞նք այն բացել։ Չգիտեմ։ Այդ կախված է պայքարից։ Պայքարը կորոշի, թե մենք այդ դուռը որքան ավելի շատ կամ ավելի քիչ կբացենք։ Համենայն դեպս, այդ դուռը պետք է պահել պրոլետարիատի ձեռքում, և հենց դա էլ առևտրի ազգայնացումն է»[6]։

Իրեն հատուկ օպորտունիզմով Կամենևը, ինչպես տեսնում ենք, մի կողմից, կարծես պաշտպանում էր արտաքին առևտրի մենաշնորհը, բայց մյուս կողմից՝ հնարավոր էր համարում հետագայում նահանջել այդպիսի մենաշնորհից, գտնելով, որ նայած իրադրությանը, «արտաքին առևտրի դռները» կարող են բացվել նաև մասնավոր կապիտալի համար։

Դատելով հետագա իրադարձություններից՝ կարելի է եզրակացնել, որ արտաքին առևտրի վերաբերյալ այս բոլոր կարծիքները Լենինին անհայտ մնացին։ Դա երևում է թեկուզ այն բանից, որ արդեն կոնֆերանսից հետո գրած արտաքին առևտրի վերաբերյալ իր գրություններում այդ կարծիքների մասին նա ոչ մի տեղ չի հիշատակում, թեև հայտնի է, որ Լենինն առանց հակահարվածի չէր թողնում ղեկավար աշխատողների՝ իրեն հասած այն կարծիքները, որ վերաբերում էին արտաքին առևտրի մենաշնորհի վերացմանը կամ թուլացմանը։

[1] «Всероссийская конференция РКП(б) (19—22 декабря 1921 г.)». Стенографический отчет. Ростов-на-Дону, 1922, стр. 42.

[2] Նույն տեղը, էջ 46։

[3] Նույն տեղը, էջ 53։

[4] Նույն տեղը, էջ 59։

[5] Նույն տեղը։

[6] Նույն տեղը, էջ 85։

*Կուսակցության ստուգման ու զտման կենտրոնական հանձնաժողովի նախագահ Զալուցկու զեկուցումը հենվում էր նախնական տվյալների վրա. նա բոլորից ավելի լրիվ տվյալներ ուներ միայն հիմնական արդյունաբերական կենտրոնների վերաբերյալ: Զեկուցումից իմացանք, օրինակ, որ Մոսկվայի կազմակերպությունում կուսակցությունից վտարվել է ավելի քան 16 տոկոսը, Իվանովո-Վոզնեսենսկի կազմակերպությունում՝ 8,3 տոկոսը, Պետրոգրադում վտարվել էր մոտ 17 տոկոսը: Մեր Նիժնի Նովգորոդի կազմակերպությունում կուսակցության շարքերից դուրս էր մնացել 16 տոկոսը: Ահա նաև տվյալներ զտմանը չներկայացածների, այսինքն՝ կուսակցությունից կամավոր հեռացածների մասին: Իվանովո-Վոզնեսենսկի նահանգում ստուգման չէին ներկայացել 141, իսկ Պիտերում (նահանգի հետ միասին)՝ ավելի քան 900 մարդ:*

*Զալուցկու զեկուցումը մտքերի լայն փոխանակություն չհարուցեց. հանդես եկան ընդամենը երկու պատգամավոր, որոնք հիմնականում դրական գնահատական տվեցին կուսակցության շարքերի ստուգման մարզում կատարված աշխատանքին, որից հետո ընդունեցին «Կուսակցության ամրապնդման մասին՝ նրա անձնակազմի ստուգման փորձի հաշվառման առիթով» բանաձևը, որը հետագայում հաստատվեց կուսակցության Կենտկոմի և XI համագումարի կողմից[1]:*

*Մի փոքր առաջ անցնելով, ուզում եմ ասել, որ XI կուսհամագումարն ընդունեց, որ համառուսաստանյան մասշտաբով կատարված կուսակցության առաջին զտումը ընդհանուր առմամբ բավարար անցավ: Այդ զտումը կուսակցությանն ազատեց «կարիերիստական ու մորթապաշտ տարրերից»[2], կուսակցությունից հեռացրեց «անպետք տարրերին»[3]:*

*Համառուսաստանյան կոնֆերանսի երկու նիստ զբաղեցրեց Կոմինտերնի հարցերի քննարկումը: Ելույթ ունեցան ներկա գտնվող գրեթե այն բոլոր ղեկավար աշխատողները, որոնք կապված էին Կոմինտերնի գործունեության հետ: Տեղի էին ունենում այնպիսի բուռն վեճեր, որ դրանցից մի քանիսը ստիպված եղան երկու անգամ հանդես գալ: Մենք՝ կոնֆերանսի պատգամավորներս, մեծ ուշադրությամբ ու լարվածությամբ էինք լսում այդ բոլոր ելույթները: Միջազգային կոմունիստական շարժման հրատապ պրոբլեմների այդպիսի մանրամասն և բազմակողմանի քննարկումը պատգամավորների մեծ մասի համար, ինչպես ասում են, նորություն էր:*

[1] ՍՄԿԿ-ն համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, հ. II, 1954, էջ 791—796:

[2] Նույն տեղը, էջ 794—795:

[3] Նույն տեղը, էջ 803:

*ԿԻԳԿ-ի առաջարկություններով նախատեսվում էին Կոմինտերնի աշխատանքում անցում նոր, միասնական ճակատի տակտիկային, կապիտալի դեմ մղվող պայքարում, որը հարձակման էր անցել բանվոր դասակարգի դեմ: Այդ տակտիկական գիծը ելույթ ունեցողներից ոչ մեկը չվիճարկեց:*

*Վեճ ծագեց Տրոցկու ճառի առնչությամբ, որը փաստորեն վերածվեց հարակից զեկուցման:*

*Պաշտպանելով բանաձևի առաջարկված նախագիծը, Տրոցկին այլ գնահատական էր տալիս կապիտալիզմի ժամանակակից վիճակին: Հենվելով Կոմինտերնի ժունալի տվյալների վրա, նա պնդում էր, որ վերջին ժամանակներս նկատվում է կապիտալիստական երկրների էկոնոմիկայի վերելք: Դրանով էր նա փորձում բացատրել նաև բուրժուազիայի հարձակողական տակտիկան: Իսկ զեկուցողը և ելույթ ունեցող մյուս ընկերները, հակադրվելով նրան, ապացուցում էին, որ կապիտալիզմի ճգնաժամային վիճակը շարունակվում է, և որ կապիտալիստական էկոնոմիկայի վերելքի առանձին փաստերը չեն փոխում ընդհանուր պատկերը:*

*XI կուսկոնֆերանսը միացավ միասնական բանվորական ճակատի վերաբերյալ Կոմինտերնի գործկոմի թեզիսներին, հաստատ վստահություն հայտնելով, որ Կոմինտերնի առաջարկած տակտիկան «...կօգնի Եվրոպայի ու Ամերիկայի կոմունիստական կուսակցություններին՝ կոմունիզմի դրոշակի տակ հավաքելու բանվորական ամենալայն մասսաներին և այդ մասսաների սեփական հեղափոխական փորձի հիման վրա լիակատար ակնհերևությամբ մերկացնելու համաձայնողականների և ցենտրիստների առաջնորդների դավաճանությունը»:*

*Որքա՜ն սուր էինք զգում Լենինի բացակայությունն այդ կոնֆերանսում: Եթե նա մեզ հետ լիներ, ավելի շատ պարզորոշություն կլիներ միջազգային և ներքին քաղաքականության բարդ հարցերում:*

*Այն ժամանակ բոլորիս ամենից ավելի հուզում էր Իլյիչի առողջական վիճակը:*

*Եվ որքան մենք երջանիկ էինք, երբ մի քանի օր հետո նորից տեսանք Լենինին սովետների համառուսաստանյան IX համագումարում, որտեղ նա հանդես եկավ համառուսաստանյան ԿԳԿ և Ժողկոմսովետի հաշվետու զեկուցմամբ[4]:*

*...Սովետների վերջին համագումարը, որին ներկա էր Լենինը:*

(Շարունակելի)

**Թարգմ. Վ. Գ. ԱՎԱԳՅԱՆԸ**

[4] Այդ ելույթի մասին ավելի մանրամասն տես իմ *Խոհեր և հիշողություններ Լենինի մասին* գրքում, էջ 188—194:

**ՀՌԻՓՍԻՄԵ ՊՈՂՈՍՅԱՆ**

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԵՎ ՊՈԵԶԻԱՅԻ ՆԵՐԴԱՇՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Կան մարդու կյանքում անմոռաց հուշեր, որոնք աստղերի նման լուսավորում են անցյալի կապույտ հեռուն: Ու երբ արթնանում են այդ հուշերը, երբ նորից լսելի է դառնում մոռացված օրերի քայլքը, սկսում են գծագրվել վաղո՜ւց մոռացված դեմքեր՝ լեցուն կորովով, կրքով ու ներքին անշեջ կրակով: Դեմքեր, որոնց նշանաբանն էր ամեն տեսակ խոչընդոտների ու դժվարությունների հաղթահարումը՝ իրենց լուսավոր նպատակին հասնելու ճանապարհին:

Ահա թե ինչու մենք ևս հետևում ենք ֆրանսիացի նշանավոր պատմաբան և հեղափոխական Ժան Ժորեսին. «Ուզում ենք վերցնել անցյալից նրա հուրը և ոչ թե մոխիրը»:

Ինձ համար անցյալից այդպիսի մի հուշ դարձավ մարտնչող պրոլետարիատի բոցաշունչ երգիչ, հայ հեղափոխական պոեզիայի հիմնադիր Հակոբ Հակոբյանը, որը կռվել էր, տեսել հալածանք ու բանտ.

*— Տեսել էր ալեկոծումը ահեղ օվկիանի,*
*Ուր երկու ալիք շարժուն սարի պես իրար են*
*վազում,*
*Իրար են վազում, փրփուրը դեմքին, հսկայի*
*նման*
*Ու հոխորտալով զարնվում, փշրվում ավազի*
*նման...*

Վերհիշում եմ մի գարնանային միջօրե Թիֆլիսում:

Ես ինը տարեկան եմ: Փոքր ձեռքս հորս լայն ափի մեջ, աշխատում եմ մանրիկ քայլերս հարմարեցնել նրա քայլերին: Հայրս ինձ դուրս է բերել հերթական զբոսանքի: Մենք քայլում ենք Գոլովինսկայա կոչված պողոտայով (այժմ՝ Ռուսթավելու): Լայն մայթի վրա արևի ուրախ ցոլքերը վետվետալով թաքնվում են մայթի երկու կողմերից փարթամորեն կանաչած թփերի մեջ:

Արևոտ պողոտան լեփ-լեցուն է զբոսանքի ելած մարդկանց խմբերով: Մի խմբից առանձնանում է միջահասակ մի մարդ՝ պենսնեով, լայնեզր գլխարկով: Փողկապի փոխարեն լայն վարդակապ, սև թիկնոցը ձախ թևին: Արագ քայլերով նա դիմում է մեր կողմը, շատ ջերմ բարևում հորս: Ժպտալով սեղմում է և իմ ձեռքը: Հայրս շշնջում է ականջիս. «Բանաստեղծ Հակոբ Հակոբյանն է...»:

Զբոսանքը շարունակում ենք երեքով: Հայրս և Հակոբյանը աշխույժ զրուցում են. հետո Հակոբյանը ծոցից հանում է մի ձեռագիր թերթիկ և սկսում կիսաձայն կարդալ: Իմ մանկական գիտակցությանը հասնում է լոկ մի բան— ընթերցածը բանաստեղծություն է: Զգացվում է տողի երգային չափը:

Թեպետ հայրս շարունակում է սեղմել իմ ձեռքը, որ ես իրենից ետ չմնամ, բայց նա այդ անում է մեքենայորեն: Նա հեռու է ինձնից, կլանված լսում է Հակոբյանին...

Ճեմելով դուրս ենք գալիս Երևանյան հրապարակ (այժմ՝ Լենինի) և այստեղ, հրաժեշտ տալով, բաժանվում ենք բանաստեղծից:

Ավելի ուշ ես իմացա հորիցս, որ նա և Հակոբյանը վաղուցվա մտերիմներ են. դեռ անցյալ դարի իննսունական թվականներին երկուսն էլ աշխատակցել են «Մուրճ» ամսագրին, թվականներ, որ եղել են Հակոբ Հակոբյանի համար որոնումների, նրա գրական-հասարակական և հեղափոխական աշխարհայացքի կազմավորման տարիներ: Մի ժամանակաշրջան, երբ նա կլանված կարդում, ու-

սումնասիրում էր Պուշկինի, Լերմոնտովի, Նեկրասովի, Չերնիշևսկու, Օգարյովի, Աբովյանի և Նալբանդյանի ստեղծագործությունները ու ինքն էլ գրական փորձեր անում: Հենց այդ ժամանակ էլ, 1893 թվականին, Հակոբ Հակոբյանը «Մուրճ» ամսագրում լույս է ընծայում իր առաջին բանաստեղծությունները— «Ուխտ բարեկամության» և «Նվեր №№ -ին»:

Հետագայում, դուրս գալով զբոսանքի, մենք երբեմն հանդիպում էինք Հակոբյանին: Արագաշարժ, եռանդուն, սև թիկնոցն ուսերին, նա առաջանում էր մեր կողմը: Աշխույժ զրուցում էր հորս հետ, զբոսնում ու անջատվում Երևանյան հրապարակում:

Բայց ահա երկար ժամանակ է, ինչ այլևս չենք հանդիպում նրան: Երևի դա այն ժամանակն էր, երբ Հակոբյանը մեկնեց արտասահման: Այդ ճամփորդության գլխավոր նպատակներից մեկն էր այնտեղ՝ Փարիզում, հանդիպել Վ. Ի. Լենինին:

Փարիզում Հակոբյանը ծանոթանում, մտերմանում է Ա. Լունաչարսկու հետ: Այդ մտերմության մասին, ավելի ուշ՝ 1928 թվականին, շատ ջերմ է գրել Լունաչարսկին՝ Հակոբ Հակոբյանի «Նոր առավոտ» բանաստեղծությունների ժողովածուի առաջաբանում:

Անցան տարիներ. և ես նորից հանդիպեցի Հակոբ Հակոբյանին: Դա 1921 թ. փետրվար ամիսն էր, Վրաստանում սովետական կարգեր հաստատվելու օրերին: Այդ ժամանակ ես ուսանում էի Անդրկովկասյան համալսարանի պատմա-լեզվագրական ֆակուլտետում:

Մենշևիկյան տիրապետության դաժան օրերին մեր ընտանիքը նյութական ծանր կացության մեջ էր, և ես ստիպված էի, մերոնց օգնելու համար, ցերեկները աշխատել, որպեսզի երեկոները հնարավորություն ունենամ հաճախելու համալսարան:

Ես աշխատում էի Թիֆլիսի «Առաջին մասնավոր լոմբարդում», կատարելով իրերի գրավաթափման գործարքը: Հաշվային անհետաքրքիր աշխատանքը ինձ՝ սկսնակ բանաստեղծուհուս, շատ էր ընկճում, բայց այլ ելք չունեի: «Մասնավոր լոմբարդը» բանկային հիմնարկ էր, մի քանի կապիտալիստների կողմից հիմնված ակցիոներական ընկերություն: Թիֆլիսի հարուստներից մի քանիսը, այդ շահեկան ձեռնարկության մեջ ներդնելով իրենց կապիտալները, ստանում էին հսկայական տոկոսներ:

Ահա այստեղ, լոմբարդում, ես նորից հանդիպեցի Հակոբ Հակոբյանին:

Փետրվարյան ցուրտ առավոտ էր: Դուրսը անվերջ ձյուն էր տեղում: Ցուրտը թափանցել էր և մեր հիմնարկությունը, որի ընդարձակ տարածությունը տաքացվում էր միակ թիթեղյա վառարանով: Իսկ ես, շալով փաթաթված, նստել եմ իմ գրավաթափման պատուհանի առաջ: Ոչ ոք չի մոտենում իմ պատուհանին՝ պարտքը վճարելու, գրավ դրած իրերը վերցնելու, «գրավը թափելու»: Մարդիկ կարիքի մեջ են. դժվար են ապրում: Բայց հարևան պատուհանի մոտ, որտեղ կատարվում է գրավադրումը, հսկայական հերթ է: Դահլիճում ժխոր է, չդադարող աղմուկ: Մարդիկ ամեն կերպ աշխատում են ճեղքել հերթը, մոտենալ նվիրական պատուհանին, որպեսզի գրավ դնեն իրենց հետ բերած իրերը: Դուրսը ցրտաշունչ ձմեռ է... Գրավից ստացած չնչին գումարն այնքան անհրաժեշտ է նրանց՝ հաց, փայտ, նավթ գնելու համար...

Իրերը գնահատող «Սողոմոն իմաստունը» (այդպիսի մականուն էինք տվել ծերուկ Սոլոմոն Մոիսեևիչին) ակնոցի տակից ուշադիր, դանդաղ ուսումնասիրում է ամեն մի իր՝ ծանր ու թեթև անելով իր դողացող ձեռքում: Սոլոմոն Մոիսեևիչի կողքին կանգնած է լոմբարդի վերատեսուչներից ու տերերից մեկը՝ ինքնամփոփ, մռայլ Տումանովը: Նա հսկում է ծերունին, որ չսխալվի՝ գրավը թանկ չգնահատի, վնաս չհասցնի լոմբարդին:

«Սողոմոն իմաստունը» դանդաղաշարժ է, անվրդով: Ահա նրա ափի մեջ է նշանի մի ոսկե մատանի՝ ամուսնական կապի, երջանկության ու հավատարմության խորհրդանիշը: Սոլոմոն Մոիսեևիչը դնում է այն փոքրիկ կշեռքի նժարին, իսկ մյուս նժարին՝ մխալները:

Ու հանկարծ դահլիճում իրարանցում... Մարդիկ, որ խռնվել էին պատուհանի առաջ, ետ են քաշվում: Դահլիճ է մտնում միջահասակ մի մարդ՝ պենսնեով, լայնեզր գլխարկով: Ձմեռային վերարկուի կոճակները արձակած են և երևում է լայն, սև վարդակապը: Նրան հետևում են հրացաններ ուսած երկու կարմիրբանակային՝ կոմունարկաներով: Եկվորն արագաքայլ մոտենում է Սոլոմոն Մոիսեևիչի պատուհանին և հրամայական դիմում Տումանովին՝ դուք պետք է հանձնեք բոլոր սեյֆերի ու պահարանների բանալիները...

Լոմբարդի վերատեսուչը գունատվում է: Նրա դիմաց հիմա կանգնած էր հաղթանակող պրոլետարիատի ներկայացուցիչը: Տումանովը ճանաչում էր Հակոբ Հակոբյանին: Չէ՛ որ Հակոբյանն էլ բանկային պաշտոնյա էր, երկար տարիներ պաշտոնավարել է «Կոմերչեսկի» բանկում: Այդ մասին ահա ինչ է գրում Ավետիք Իսահակյանը՝ վերհիշելով իր առաջին ծանոթությունը Հակոբ Հակոբյանի հետ:



— Երբ, ծանոթության առաջին օրերին հարցրի, թե որտե՞ղ է պաշտոնավարում, նա մի իմաստալի պատասխան տվեց, որ մինչև այսօր անջնջելի տպավորված է ուղեղիս մեջ:

— Կապիտալիզմի ամրոցում:

— Չեմ հասկանում,— ասացի ես:

— Բանկում: Բանկերը բուրժուազիայի ամուր բերդերն են, մինչև չգրավենք այդ բերդերը, կապիտալիստները զինաթափ չեն լինի:

Ու հիմա, խոշոր կապիտալիստի համար, որը տարակուսած կծկվել էր պատուհանի առաջ, անհասկանալի էր, թե ինչպե՞ս մի բանկային ծառայող, մի պոետ կարող էր մարմնավորել այդ սարսափելի հեղափոխությունը: Այդ ի՞նչ ուժ էր, որ կարող էր գալ ու իրեն զրկել ամեն ինչից՝ կապիտալից, տոկոսներից...

Գունատ ու դողդոջ շուրթերով Տումանովը հարցնում է.

— Իսկ ո՞վ եք դուք ու ձեր ինչի՞ն են պետք լոմբարդի բանալիները:

— Ես նշանակված եմ Թիֆլիսի բոլոր բանկերի կոմիսար,— պատասխանեց Հակոբյանը: — Այսուհետև մասնավոր ձեռնարկությունները, հիմնարկությունները պետականացվում են: Հանձնեցե՛ք ինձ բոլոր բանալիները...

Այդ վայրկյանին Տումանովի կողքին հայտնվեց նրա հավատարիմը՝ պահեստապետ Մարկը՝ ճաղատ գլխով, մանրիկ աչքերով, անհանգիստ շարժումներով, հզոր տիրոջ անդավաճան կամակատարը: Նրա մոտ էր բանալիների մեծ կապոցը: Զնգուն բանալիներ, որոնցով Մարկը բաց էր անում Լոմբարդի նկուղային հարկում գտնվող պահեստների ու սեյֆերի ծանր երկաթե դռները:

Այդ նկուղը՝ «ոսկե դժոխքը», մենք՝ ծառայողներս, իրավունք չունեինք իջնելու: Չէ՛ որ այնտեղ, բացի չքավորների գրավներից, պահվում էին Թիֆլիսի շատ հարուստների ոսկեղենն ու թանկարժեք իրերը: Այնտեղ, ներքևում, ապահով և անձեռնմխելի էին նրանց ոսկին, ադամանդը, ալմաստը, սուտակն ու զմրուխտը...

Տումանովը լուռ է, ընկճված: Այդ պահին նա հիշեցնում է Պուշկինի ժլատ ասպետին: Ահա նա սթափվում է ու անհաստատ քայլերն ուղղում դեպի նկուղը: Տումանովին ուղեկցում են Հակոբյանը և կարմիրբանակայինները: Առջևից քայլում է Մարկը:

Կես ժամից անց հինգ հոգին էլ վերևում են: Պահեստներն ու սեյֆերը կնքված են, Մարկը հավետ բաժանվում է իր բանալիներից, Տումանովը՝ իր գանձերից...

Անցավ ևս մի քանի օր: Հիշում եմ մի մեծ դահլիճ, ուր կայացավ բանկային ծառայողների ընդհանուր ժողովը: Օրակարգում մի հարց էր՝ «Հոկտեմբերը և Վրաստանի խորհրդայնացումը»: Ամբիոնի մոտ է զեկուցողը՝ Հակոբ Հակոբյանը: Նա խոսում է ոգեշնչված, նրան վիճակվել էր տեսնել այն, ինչի մասին երազել էր տարիներ շարունակ, տեսնել Հոկտեմբերյան հեղափոխության պատմական հաղթանակը, այն ամենը, ինչի մասին ոգեշունչ երգել էր իր բանաստեղծություններում:

Զեկուցումից հետո Հակոբյանը ներկաներին սկսեց սովորեցնել «Ինտերնացիոնալը»: Քառյակ առ քառյակ մենք կրկնում, սերտում էինք պրոլետարիատի հիմնի բառերը, որոնք մեզ համար դառնում էին միս ու արյուն, համախմբող ուժ, հավատարմության և միասնության երդում: Հասնելով «Ինտերնացիոնալի» կրկներգին, Հակոբյանը մեզ բացատրում է, որ «Это будет наш последний и решительный бой» տողը այժմ պետք է երգել՝ «Это есть...». մենք հաղթել ենք, և երգը պիտի հաստատի այդ հաղթանակը (հիմնը մենք երգում էինք ռուսերեն): Հետագայում Հակոբյանն այն թարգմանեց, այդ եղավ «Ինտերնացիոնալի» առաջին հայերեն թարգմանությունը:

Դահլիճի բարձր կամարների տակ հնչում, ծավալվում էր խրոխտ «Ինտերնացիոնալը» և ներդաշնակ խմբական երգի ելևէջներում առանձնակի էր հնչում Հակոբյանի առնական, հաճելի ձայնը: Պոեզիան ու հեղափոխությունը զարմանալիորեն ներդաշնակ միահյուսված էին նրա ողջ էության մեջ, հաստատ ու անշեղ գծելով Հակոբ Հակոբյանի կյանքի ողջ ուղին:

Թիֆլիսում, սովետական կարգերի հաստատումից հետո, կազմակերպվեց Վրաստանի պրոլետարական գրողների ասոցիացիան, որի հայկական սեկցիայի նախագահ ընտրվեց Հակոբ Հակոբյանը:

Հայկական սեկցիայի նիստերը տեղի էին ունենում նոր կազմակերպված «Հայարտանը», որտեղ ես հաճախ հանդիպում էի Հակոբ Հակոբյանին: Ընտրվեց ասոցիացիայի բյուրո, որի կազմում ընդգրկեցին և ինձ:

Հակոբ Հակոբյանի սիրած բանաստեղծներից էր բելգիացի ուրբանիստ-բանաստեղծ Էմիլ Վերհարնը: Հաճախ, Հակոբյանը, քաջալերելով երիտասարդ բանաստեղծներին, ոգևորվում էր, համեմատում նրանց բանաստեղծությունները իր սիրած Վերհարնի բանաստեղծությունների հետ: Այդպիսի մի պոետական հիպերբոլիկ գնահատման արժանացավ և իմ «Քաղաք» բանաստեղծությունը, որը տպագրվել էր «Մարտակոչ» օրաթերթում...

Այդ օրը, մի խումբ գրողներով հավաքված Հայարտանը, սպասում էինք Հակոբ Հակոբյանին: Նա պիտի ղեկավարեր պրոլետարական ասոցիացիայի հերթական նիստը: Ահա նա. մտնում է դահլիճ, հանում լայնեզր գլխարկը և արագ քայլերով առաջանում է իմ կողմը, սեղմում ձեռքս ու խոսելով «Քաղաք» բանաստեղծության մասին, հիշատակում է «Վերհարնյան շունչը», ավելացնելով դրան և դրվատանքի խոսքեր:

Ես շփոթված եմ, հուզված, վեր եմ թռչում աթոռիցս և ընդհատվող ցածր ձայնով շնորհակալության բառեր կմկմում... Երբեք չեմ կարող մոռանալ Հակոբյանի այդ անմիջականությունը և հայրական ջերմ վերաբերմունքը իմ՝ սկսնակ բանաստեղծուհուս հանդեպ: Դա եզակի դեպք չէր, հաճախ էր նա այդպես քաջալերում երիտասարդ գրողներին:

Երբ նրան հայտնի դարձավ, որ ես առաջին բանաստեղծություններս գրել եմ ռուսերեն, խնդրեց ինձ՝ ռուսերեն թարգմանել իր բանաստեղծություններից մի քանիսը, որոնք պետք է զետեղվեին նրա բանաստեղծությունների հոբելյանական հատորյակում: Այդ առիթով նա մի օր եկավ մեր տուն: Ամուսնուս՝ Հովհաննեսի հետ ծանոթ էր վաղուց, դեռևս ընդհատակից, ապա Հայարտանը հաճախ համատեղ է ընթացել նրանց քաղաքական-գրական գործունեությունը:

Ընտանեկան թեյասեղանի շուրջը, մտերմիկ զրույցի պահին Հակոբյանը նորից դիմեց ինձ իր բանաստեղծությունների թարգմանության հարցով: Ես խոր ակնածանքով ընդունեցի այդ պատվաբեր առաջարկը: Ու ահա, մի քանի օր անց, ես պոետի տանն եմ, նրա համեստ առանձնասենյակում՝ Մախարաձեի փողոցի վրա:

Որքան պարզ ու հասարակ է նա ընտանեկան միջավայրում: Ծանոթացնում է ինձ իր տիկնոջ հետ. թեթև նախաճաշից հետո Հակոբյանն ընթերցում է իր այն բանաստեղծությունները, որոնք ցանկանում էր ինձ հանձնել՝ թարգմանելու: Նա մանրամասն խոսում է գրական այն սկզբունքների մասին, որոնցով առաջնորդվել էր նշանավոր իտալուհի Ադա Նեգրիի բանաստեղծությունները թարգմանելիս: Մի բանաստեղծուհու, որը երգել է Իտալիայի նորածին պրոլետարիատի առաջին ըմբոստ քայլերը, բանաստեղծուհի, որն իր թեմատիկայով, ողջ ստեղծագործությամբ մոտ ու հարազատ էր Հակոբ Հակոբյանի պոեզիայի հեղափոխական ոգուն:

Դժբախտաբար, երկարատև հիվանդությունը խանգարեց ինձ կատարելու Հակոբյանի խնդրանքը՝ ռուսերեն թարգմանելու նրա բանաստեղծությունները:

Հիշում եմ և Հակոբ Հակոբյանին նվիրված հոբելյանական հանդեսը Թիֆլիսի օպերայի դահլիճում, նրա գրական գործունեության 30-ամյակի առթիվ:

Առանձին ոգևորությամբ ու ջերմությամբ ընդունեցին ներկաները Հակոբ Հակոբյանին Վրաստանի ժողովրդական պոետի պատվավոր կոչում շնորհելու հրամանագիրը: Հոբելյանի օրերին վաստակաշատ բանաստեղծին ժողովրդական պոետի կոչում շնորհեց և Հայաստանի կառավարությունը:

Վրաստանի մի խումբ պատասխանատու ընկերների նախաձեռնությամբ և Հակոբ Հակոբյանի անմիջական մասնակցությամբ 1923 թվականի մարտին Թիֆլիսում լույս է տեսնում «Կարմիր ծիլեր» մանկական ամսագրի առաջին համարը: Այդ ամսագրի պատասխանատու խմբագիր է նշանակվում Հակոբյանը: Հետագայում, զբաղվածության պատճառով, Հակոբյանը հրաժարվում է այդ աշխատանքից, մնալով ամսագրի խմբագրական կոլեգիայի անդամ և նրա ակտիվ աշխատակիցը: Ամսագրում մերթ-մերթ տպագրվում էին մանուկների համար գրած նրա գործերը:

Բայց ահա անցյալի մշուշից հառնում է մի տխուր հուշ: Թիֆլիսի 76-րդ աշխատանքային դպրոցի մեծ դահլիճը, ուր ես հրավիրված եմ դպրոցական երեկույթի:

Դրսում Թիֆլիսի մեղմ կլիմայի համար անսովոր բքաշունչ ցուրտ ձմեռ է: Սառնամանիքը քմահաճ վարդանկարներով նախշել է դահլիճի բարձր պատուհանների ապակիները: Բեմի վրա ամբիոնը պատած է կարմիր քաթանով, իսկ դահլիճում, լուռ, սպասողական վիճակ է... Դպրոցին վերջերս շնորհվել է պրոլետարական բանաստեղծ Հակոբ Հակոբյանի անունն ու այսօր այդ առիթով նա հրավիրված է դպրոց: Անցնում են սպասումի պահերը, և ահա պոետը բեմ է դուրս գալիս դպրոցի տեսուչ Հովհաննես Պողոսյանի ուղեկցությամբ: Երկուսն էլ գունատ են, հուզված:

Հակոբյանն իր համար անսովոր դանդաղ քայլերով մոտենում է նախաբեմին, ցածր ու տխուր ձայնով սկսում խոսել: Քարացած դահլիճում մահվան շնչի նման տարածվում է ահավոր բոթը. այսօր հեռագիրը Մոսկվայից տխուր լուր գուժեց: Այլևս չկա մարդկային մտքի մեծագույն հանճարը: Մահացավ Վլադիմիր Իլյիչ Լենինը:



...Թախծալի լռություն... խեղդված հեկեկանք... Հակոբյանը հանում է պենսնեն, արցունքները ողողել են նրա գունատ դեմքը... Նա առաջարկում է հոտնկայս հարգել մեծ առաջնորդի հիշատակը: Ապա, ընդհատվող ձայնով խոսում է մեծ կորստի մասին, այն մասին, որ կուսակցությունն այժմ ավելի սերտ կհամախմբի իր շարքերը հանուն այն պատգամների, այն նախանշումների իրականացման, որ կտակել է մեզ անմահ Լենինը:

Այդ տխուր վշտալի օրերին ստեղծվեց նրա «Լենինը անմահ» բանաստեղծությունը:

*— Այն ո՞վ է ասում՝ թե մեռավ Լենինը...*
*Մի՞թե կմեռնի արևը պայծառ,*
*Կամ թե կմարի՞ շունչը օվկիանի,*
*Արդյոք տեսե՞լ եք Մարսը խավարի,*
*Կամ անհետանա Հիմալայի սարն:*

*Նրա գործերը՝ մի-մի արևներ,*
*Եվ ավանդները խորանիստ օվկիան,*
*Նրա պատգամները— Մարսի բևեռներ—*
*Վեհ ու անսասան, որպես Հիմալայ.*
. . . . . . . . . . . . . . .
*Ու Լենինը դեռ*
*Կմնա անմահ բյուրավոր դարեր,*
*Նրա անունը*
*Այս ամենից էլ հզոր է, անմեռ...*

Անցան օրեր, ամիսներ, ու ես նորից ու նորից հանդիպում էի Հակոբյանին Հայարտանը, գրական հավաքույթների ժամանակ, լսում էի նրա կրակոտ ելույթները՝ ի պաշտպանություն պրոլետարական գրականության:

Հակոբ Հակոբյանը ոգեշունչ բոլշևիկ պոետ էր, որ մինչև վերջին շունչը ըմբոստ երգ ուներ գունատվող շուրթերին: Նրա վերջին բանաստեղծությունը նվիրված է մեծ Հոկտեմբերին. այն նրա կտակն է գալիք սերունդներին, մարող ձայնով պոետը թելադրեց այն իր որդուն, և վաստակած, դողդոջ ձեռքով նրա տակ դրեց իր վերջին ստորագրությունը՝ Հակոբ Հակոբյան:

ԵՐԻՏԱՍԱՐԴ ՍԵՐՆԴԻ

ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ

ՀԱՐՑԵՐ

# ՄԻՋՆԱԿԱՐԳ ԿՐԹՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԵՎ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՀԱՄԱՐ

*ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումները նոր փուլ նշանավո-*
*բեցին սովետական դպրոցի հետագա զարգացման ու կատարելագործման հա-*
*մար. դրանցում սահմանված են այն հիմնական խնդիրները, որոնք դարձել են*
*ժողովրդական կրթության մարմինների գործունեության առանցքը, որոշված*
*են մեր երկրում երիտասարդության ընդհանուր միջնակարգ ուսուցումն իրա-*
*կանացնելու կոնկրետ ուղիները։*
*ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ «...կուսակցությունը*
*ելնում է ամենից առաջ այն բանից, որ մարդկանց նյութական ու կուլտուրա-*
*կան պահանջմունքների առավել լրիվ բավարարումը հանրային արտադրու-*
*թյան գերագույն նպատակն է սոցիալիզմի օրոք»։ Նկատի ունենալով այդ գլ-*
*խավոր խնդիրը, նախատեսված է բազմակողմանի զարգացնել ժողովրդական*
*կրթությունն ու սոցիալիստական կուլտուրան, կատարելագործել ուսումնադաս-*
*տիարակչական պրոցեսը, բարձրացնել ուսուցիչների և մանկավարժական*
*մյուս աշխատողների որակավորման մակարդակը, առաջ մղել սովորողների*
*պրոֆեսիոնալ կողմնորոշումը, ընդլայնել նախադպրոցական, արտադպրոցա-*
*կան և մանկական մյուս հիմնարկությունների ցանցը, բարելավել դրանց աշ-*
*խատանքը։ Ուստի, առավել մեծանում է սովետական յուրաքանչյուր ուսուցչի,*
*ժողովրդական լուսավորության բոլոր աշխատողների պատասխանատվու-*
*թյունը։*
*Իր սոցիալական նշանակությամբ այդ վիթխարի խնդրի՝ երիտասարդու-*
*թյան համընդհանուր միջնակարգ կրթության, իրագործման արգասիքը կլինի*
*սովետական մարդկանց կուլտուրայի, կրթության բարձր մակարդակը, որը*
*աշխատանքի արտադրողականության աճի կարևոր պայմանն է։ Հնգամյակի*
*վերջին տարում միջնակարգ ուսումնական հաստատությունների շրջանավարտ-*
*ների թիվը կավելանա մեկ և կես անգամ։ Պաշտոնական տվյալներով 1971*
*թվականին ոչ-լրիվ միջնակարգ դպրոցներն ավարտել է 4,7 միլիոն մարդ, որից*
*ավելի քան 4,3 միլիոնը՝ ցերեկայինը։ Ութ տարի առաջ դպրոց ընդունված յու-*
*րաքանչյուր հազար աշակերտից 876-ը ժամանակին է ավարտել այն։ Սակայն*
*երկրի հարյուրավոր դպրոցներում այդ ցուցանիշն զգալիորեն ցածր է։ Հաշ-*
*վարկները ցույց են տալիս, որ ուժերի որոշակի լարման դեպքում 1975 թվա-*
*կանին միջնակարգ ուսումնական հաստատությունների շրջանավարտների*
*թիվը կհասնի 4,4-ից 4,5 միլիոնի։*



*Նրախուսելի և բնական է, երբ ութնամյակն ավարտելուց հետո դեռահաս-*
*ներն ուսումը շարունակում են միջնակարգ մասնագիտական ուսումնական*
*հաստատություններում, պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում և*
*միջնակարգ դպրոցի բարձր դասարաններում։ Պահպանելով հանրակրթական*
*դպրոցի առաջատար դերը՝ նրա հետ սերտորեն համագործակցելով, միջնա-*
*կարգ կրթություն են տալիս նաև միջնակարգ մասնագիտական հաստատու-*
*թյունները և պրոֆտեխնիկական ուսումնարանները։*
*ՍՄԿԿ XXIV համագումարը մեծագույն ուշադրություն նվիրեց երկրում*
*պրոֆտեխնիկական կրթության զարգացմանը։ Գիտատեխնիկական բուռն*
*առաջընթացի պայմաններում առավել մեծ պահանջներ են ներկայացվում*
*բանվորներին։ Որակյալ բանվորի տեխնիկական գրագիտության վկայությունն*
*ու արգասիքն են տեխնիկական միջոցների արդյունավետ օգտագործումը և*
*աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Հետևապես, պրոֆտեխ-*
*նիկական ուսումնարանը դառնում է երիտասարդության մասնագիտական*
*պատրաստության և բանվոր դասակարգի համալրման ու ձևավորման հիմնա-*
*կան միջոց։ Արագ աճում է միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարանների*
*թիվը, ուր երիտասարդությունն ուսման ընթացքում ստանում է և՛ մասնագի-*
*տություն, և՛ ընդհանուր միջնակարգ կրթություն։ Եթե 1972—1973 ուսումնա-*
*կան տարում մեր հանրապետությունում գործում էր 16 միջնակարգ պրոֆտեխ-*
*նիկական ուսումնարան, որտեղ սովորում էին 6 հազար պատանիներ ու աղ-*
*ջիկներ, ապա ընթացիկ հնգամյակի մյուս տարիներում այդ միջնակարգ ու-*
*սումնարանների թիվը կհասնի 35-ի, ուր կսովորեն ավելի քան 15 հազար երի-*
*տասարդներ։ Ուսումնական այս հաստատությունների հետագա կատարելագոր-*
*ծումը պայմանավորված է ուսուցման պրոցեսում ժամանակակից տեխնիկայի*
*լայն կիրառմամբ, ուսուցման տեխնիկական միջոցների ստեղծմամբ ու արմա-*
*տավորմամբ, սովորողների արտադրական ուսուցման և պրակտիկայի հաջող*
*կազմակերպմամբ, նրանց կոմունիստական դաստիարակության կատարելա-*
*գործմամբ, հանրակրթական պատրաստականության, գաղափարական մա-*
*կարդակի բարձրացմամբ։*
*Քայլելով կյանքին համընթաց, մանկավարժության բնագավառի աշխա-*
*տողները, ուսուցիչներն արդեն շատ բան են արել դպրոցում նոր ծրագրերի ու*
*դասագրքերի ստեղծման, ներդրման մարզում։ Լուրջ փորձ է արված գիտա-*
*տեխնիկական հեղափոխության պահանջների ու դպրոցական կրթության առա-*
*վել համապատասխանությունն ապահովելու համար։ Լայնորեն տարածվում է*
*հմուտ, բանիմաց ուսուցիչների, դաստիարակների մանկավարժական աշխա-*
*տանքի փորձը։*
*Երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթության իրականացման*
*գլխավոր նպատակներից մեկը սովորողներին կայուն ու խոր գիտելիքներ*
*տալն է։ Անվիճելի ճշմարտություն է, որ երբ ուսուցիչը գիտե շատ ավելին,*
*քան սովորեցնում է, երբ ամեն անգամ դասի ժամանակ վերստին ստեղծա-*
*գործում է՝ նման այն արտիստին, որ բազմիցս, բայց միշտ տարբեր ձևով է*
*խաղում միևնույն դերը, երբ ծանոթ նյութը նա հաղորդում է հայտնագործողի*
*ոգևորությամբ, միայն այդ ժամանակ նա կարող է առինքնել դպրոցականին,*
*սովորեցնել նրան դժվարագույնը՝ ինքնուրույն մտածել և ստեղծաբար յու-*
*րացնել հարուստ գիտելիքներ։ Հաջողության հասնելու համար դաստիարակը*
*պետք է ունենա բարոյական և ինտելեկտուալ բավարար տվյալներ։ Չէ՞ որ*

հենց դասի ընթացքում են աշակերտներն ստանում սիստեմատիկ գիտելիքներ
գիտությունների հիմունքներից. այստեղ են նրանց մեջ ձևավորվում գաղա-
փարական-բարոյական համոզմունքները։ Դասի ընթացքում է ուսուցիչը գա-
ղափարապես ու բարոյապես ներգործում սովորողների վրա։ Այդ ներգործու-
թյունը պայմանավորված է մանկավարժի կոմունիստական գաղափարայնու-
թյամբ, ավանդված առարկայի և ուսուցման մեթոդիկայի խորիմացությամբ,
իր մասնագիտության քաղաքացիական բարձր կոչման ըմբռնմամբ։ Միաժա-
մանակ ուսուցիչը պետք է ջանա, որ ժամանակակից մանկավարժական գի-
տության նվաճումներն արդյունավետ ներդրվեն դպրոցում, որ լավագույն ու-
սուցիչների փորձն աշխատանքի չափանիշ դառնա յուրաքանչյուր մանկավար-
ժի համար։

Մոսկվայի ուսուցիչները կոչով դիմել են իրենց գործընկերներին՝ լայն
աշխատանք ծավալելու դասի հետագա կատարելագործման համար, հասնելու
այն բանին, որ յուրաքանչյուր ուսուցիչ դառնա խորագիտակ, վարպետ ման-
կավարժ։ Մոսկվացիների՝ «Յուրաքանչյուր աշակերտին կայուն ու խոր գիտե-
լիքներ» նշանաբանը Միության մյուս քաղաքների հետ պաշտպանել են նաև
Երևանի մանկավարժները։ Նրանք ևս նախատեսել են իրենց կոնկրետ անե-
լիքները ուսումնադաստիարակչական պրոցեսի կատարելագործման մարզում,
ակտիվ գործունեություն ծավալել ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կեն-
սագործման համար։ Նրանք ջանում են գիտական կոնկրետ նյութի հիման վրա
զարգացնել աշակերտների մտավոր ունակությունները, վինել համապատաս-
խան գիտելիքներով, որպեսզի նրանք կարողանան հստակ ըմբռնել հասարա-
կության ու բնության զարգացման հիմնական օրենքները, ձևավորել պատանու
անհատականությունը։ Հետևաբար, կարևորը ոչ թե սոսկ աշակերտների կողմից
որոշակի նյութի մտապահումն է, այլև հասարակության կյանքը և բնությունը
կարգավորող սկզբունքային օրենքների տիրապետումը։ Հարկ է զարգացնել
նաև երեխայի հիշողությունը, ինքնուրույն դատողությունը։ Երբեք չպետք է
մոռանալ, որ կոմունիստական համոզմունքները սոսկ բացատրական աշխա-
տանքի միջոցով չեն ձևավորվում. միայն անձնական և կոլեկտիվ փորձի, հա-
սարակական օգտակար ակտիվ գործունեության հիման վրա դպրոցականների
մեջ կստեղծվեն դրանք, բարոյական նորմերը կդառնան ոչ թե սոսկ գիտելիք-
ներ, այլ կենսահաստատ համոզմունքներ։ Մեր կրթական հաստատությունները
պետք է ջանան, որ դպրոցում ուսանելու տարիներին յուրաքանչյուր աշա-
կերտ անցնի հասարակական գործունեության դպրոց, համակվի իր և կոլեկ-
տիվի առջև պատասխանատվության զգացումով։ Չէ՛ որ նոր մարդու ձևավո-
րումն ու նրա բարոյական բարձր հատկությունների դաստիարակումը մեծ չա-
փով կախված են կոլեկտիվից, այն բանից, թե կոլեկտիվիզմի ոգին և էությու-
նը որքանով են ներթափանցել մարդկանց գիտակցության, վարքագծի մեջ։

ՍՄԿԿ XXIV համագումարը աճող սերնդի դաստիարակության, կոմունիս-
տական գիտակցության ձևավորման կարևոր խնդիրներից մեկն էլ համարեց
մարդու համակողմանի զարգացման պրոբլեմը։ «Մեծ գործը՝ կոմունիզմի կա-
ռուցումը, անկարելի է առաջ շարժել առանց իր՝ մարդու բազմակողմանի
զարգացման։ Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գի-
տակցության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմն անհնա-
րին է, ինչպես որ այն անհնարին է առանց նյութատեխնիկական համապա-
տասխան բազայի» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 129—130)։



Սովետական դպրոցը գտնվում է գաղափարական աշխատանքի առաջա-
գծում. վճռական է նրա դերը համակողմանի զարգացած անձնավորության
դաստիարակության գործում։ Դպրոցը պետք է ժամանակին հայտաբերի, զար-
գացնի երեխաների ունակությունները, նրանց հակումներն ու նախասիրու-
թյունները, համակի աշխատասիրությամբ, սովորեցնի անընդհատ հարստաց-
նել գիտելիքները։ Համակողմանի զարգացումը ո՛չ միայն մարդկային հասա-
րակության առաջընթացի օբյեկտիվ անհրաժեշտությունն է և կոմունիստական
հասարակարգի հասարակական արտադրության զարգացման երաշխիքը, այլև
կոմունիստական դաստիարակության բուն նպատակը։

Դպրոցի և կոմունիստական դաստիարակության ողջ համակարգի դերը
մեծանում է հատկապես այժմ՝ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանա-
կաշրջանում. հանրակրթական ու մասնագիտական դպրոցի մանկավարժների
առջև ծառացել են ուսուցման արդյունավետության բարձրացման պատասխա-
նատու խնդիրներ, որոնց հաջող լուծման համար անհրաժեշտ է ուսուցումը զու-
գակցել արտադրական աշխատանքի հետ։ Անհատի բազմակողմանի զարգաց-
ման, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերություն-
ների վերացման կարևոր միջոց է այդ։

Գիտատեխնիկական առաջընթացի ներկա փուլում սովորողների պոլիտեխ-
նիկական ուսուցումն ստանում է հատուկ նշանակություն։ Խնդիր է դրվում
բարելավել դպրոցականների աշխատանքային դաստիարակությունը, օգնել
նրանց մասնագիտական կողմնորոշմանը՝ ուսուցման ողջ ընթացքում։

Արդի դարաշրջանը բնորոշ է նրանով, որ գիտական հայտնագործություն-
ները ո՛չ միայն երևան են բերում տեխնիկայի նորանոր ուղղություններ, այլև
առավել մեծ ազդեցություն են գործում արտադրության բոլոր պրոցեսների
վրա։ Գիտական նոր հայտնագործությունների ազդեցությամբ շատ արագ են
փոխվում արտադրապրոցեսները։ Մեր ժամանակներում չի կարելի մասնագի-
տություն ձեռք բերել՝ առանց մշտապես յուրացնելու գիտատեխնիկական
առաջընթացի նորույթները։ Նույնքան կարևոր է և դրանց կիրառումը կյանքում,
պրակտիկայում։ Հետևապես, դպրոցը ո՛չ միայն գիտելիքների հիմքերն է դնում,
այլև կապում է դրանք պրակտիկայի հետ, սովորողներին վարժեցնում ապագա
աշխատանքի, ստեղծագործական ակտիվ գործունեության, անկախ նրանից,
թե հետագայում նա կաշխատի գիտությա՞ն, արդյունաբերությա՞ն, գյուղա-
տնտեսությա՞ն, թե՞ որևէ այլ բնագավառում։

Սովորողների ստեղծագործական ունակությունների համակողմանի զար-
գացմանը մեծապես կարող են նպաստել լավ կազմակերպված ֆակուլտատիվ
դասերն ու արտադասարանական այլ միջոցառումները, ուսուցման տեխնի-
կական միջոցների լայն օգտագործումը, որոնք հնարավորություն են ընձեռում
ուսուցչին՝ բազմազան դարձնելու մեթոդական հնարները, հետաքրքրասիրու-
թյամբ համակելու աշակերտներին։ Ֆակուլտատիվ դասերը սովորողներին
հնարավորություն են ընձեռում խորանալու սիրած գիտելիքներում, նպաստում
նրանց մասնագիտական կողմնորոշմանը։

Մեր դպրոցը հարստացել և հարստանում է դասավանդման նոր մեթոդնե-
րով. ավելի արդյունավետ են կիրառվում ուսուցման տեխնիկական միջոցները՝
կինոն, ռադիոն, հեռուստատեսությունը։ Դպրոցների մեծ մասն ապահովված է
կինոապարատներով, մագնիտոֆոններով, հեռուստացույցներով ու պրոեկ-
ցիոն սարքավորումներով։ Ուսումնական կինոնկարներ են ստեղծվում հայ

գրականության, հայ ժողովրդի պատմության և Հայաստանի աշխարհագրության վերաբերյալ: Միայն վերջին երկու տարում ուսումնական հաղորդումներ տվող ստուդիաների թիվն ավելացել է 30-ով, դրանց համար կազմվում է հատուկ ծրագիր: Հեռուստատեսությունը ո՛չ միայն առավել դիտողական ու ակնառու է դարձնում ուսուցումը, այլև խնայում է ժամանակը, նպաստում նյութի բազմակողմանի, խոր յուրացմանը, հնարավորություն ընձեռում աշակերտին՝ պատկերացնելու իրը, երևույթը: Ցավոք, մեր հանրապետության դպրոցների մեծ մասն ինչպես հարկն է չի օգտվում հեռուստատեսային ուսումնական հաղորդումներից, չնայած այդ նպատակով որակավորման դասընթացներում սովորել են մեր հանրապետության 14 հազար ուսուցիչներ:

Մեր դարում առավել, քան երբևէ պատանեկության, երիտասարդության դաստիարակության գործը դուրս է եկել դպրոցի, բարձրագույն ուսումնական հաստատության պատերից: Երեխաներն իրենց շուրջը, ամենուր տեսնում են փոթորկահույզ, բազմամարդ աշխարհը. տանը, կոլեկտիվում, թերթերի, ռադիոյի, հեռուստատեսության և ինֆորմացիայի բազմազան միջոցներով ձեռք են բերում կենսագիտելիքներ, սոցիալական փորձ... Երբեմն տեսածը չի համապատասխանում դասագրքում կարդացածին, դպրոցում դասավանդածին: Ահա այստեղ է, որ պետք է դրսևորվեն մանկավարժի համակողմանի գիտելիքները, կյանքի նոր, կամ բացառիկ երևույթները խորապես, համոզիչ վերլուծելու կարողությունը: Անտարբերությունը դպրոցականի զգացածի, ապրումների նկատմամբ և միայն դասագրքի սահմաններում նրան ուսուցելն ու նրանից պահանջելը սովորողին կվանի և՛ ուսուցչից, և՛ դպրոցից, կխռովի նրա հոգին: Երբեք չպետք է մոռանալ, որ դպրոցականի շատ տպավորվող հոգու վրա անխիտ ներգործում են դպրոցից դուրս լսած խոսակցությունները, նրան աննկատելիորեն դաստիարակում են մեծերի, ծնողների զրույցները սոցիալական, քաղաքական, նույնիսկ առօրյա սովորական հարցերի շուրջ: Ահա թե ինչու մեր օրերում առավել բարձրանում են դպրոցի, ընտանիքի և հասարակության դերն ու նշանակությունը, կատարելագործվում, նոր որակ ու ձևեր է ընդունում նրանց համագործակցությունը: Եվ այժմ դժվար է որոշել՝ որտե՞ղ է սկսվում ընտանեկան ու դպրոցական դաստիարակությունը, որտեղ ավարտվում հասարակականը:

Սովետական ընտանիքում օրըստօրե բարձրանում է ծնողների մանկավարժական գիտելիքների մակարդակը, ընդարձակվում նրանց դաստիարակչական գործունեության ոլորտը: Շատերն ավելի ակտիվ են մասնակցում դեռահասների, պատանիների ու աղջիկների մասնագիտական կողմնորոշմանը, կյանքում իրենց տեղը գտնելու հարցերի լուծմանը, հսկում դասապատրաստմանը, երեխաներին ներգրավում հասարակական հանրօգուտ աշխատանքում:

Եվ դա բնական է: Առանց ընտանիքի և ողջ հասարակության ակտիվ աջակցության դպրոցը չի կարող լուծել իր առջև դրված դաստիարակչական վիթխարի խնդիրները: Դպրոցում երեխայի անբավարար առաջադիմության պատճառներից մեկն էլ տանը նրա ինքնուրույն աշխատանքի վատ կազմակերպումն է: Դեռահասը հաճախ տնային հանձնարարությունները կատարում է մակերեսորեն, առանց խորանալու առաջադրանքների էության մեջ: ՍՄԿԿ XXIV համագումարը խնդիր դրեց այսուհետև ևս կատարելագործել երեխաների ընտանեկան դաստիարակության ձևերը, հասնել դպրոցի և ընտանիքի կապերի հետագա ամրապնդման, բարոյագիտական պահանջների միասնության: Հա-



մագումարը նշեց սովետական ընտանիքի կայունացման ու ամրապնդման, նոր սերնդի դպրոցական և ընտանեկան դաստիարակության հետագա կատարելագործման հոյակապ ծրագիր:

Վերջերս ՍՍՀՄ ութերորդ գումարման Գերագույն սովետի վեցերորդ սեսիան քննարկեց մեր երկրում կրթության բոլոր ձևերի հետագա կատարելագործման միջոցառումների մասին կարևորագույն հարցը, հաստատեց ժողովրդական լայն քննարկման ներկայացված ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների ժողովրդական կրթության օրենսդրության հիմունքները, որոնք գործողության մեջ կդրվեն 1974 թ. հունվարի 1-ից:

Սեսիան ընդգծեց, որ ժողովրդական կրթության բարելավմամբ, նրա հետագա կատարելագործմամբ շահագրգռված են յուրաքանչյուր սովետական ընտանիք, ամբողջ սովետական ժողովուրդը: Մարդու համակողմանի զարգացումը, կուլտուրայի և կրթության բարձր մակարդակը, մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումը կոմունիզմի ուղիով մեր հայրենիքի հաջող առաջընթացի պայմանն են: Զեկուցումներում, դեպուտատների ելույթներում միահամուռ պաշտպանության արժանացավ մեր կուսակցության և սովետական պետության քաղաքականությունը, որը տոգորված է հոգատարությամբ ժողովրդական կրթության դերը բարձրացնելու, երկրի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր ճյուղերի համար բարձրորակ բանվորական կադրերի ու մասնագետների պատրաստումը բարելավելու նկատմամբ: Հավանություն գտան նաև այն բոլոր կոնկրետ միջոցառումները, որոնք ՍՄԿԿ XXIV համագումարից հետո երկրում իրականացվում են ժողովրդական կրթության համակարգի հետագա զարգացման ու կատարելագործման նպատակով: Միասնական, աշխատանքային, պոլիտեխնիկական դպրոցի լենինյան սկզբունքները լիովին ապացուցել են իրենց կենսական մեծ ուժը, որ դրանց գործնական իրականացումը մեր սոցիալիստական հասարակությանը հսկայական հաջողություններ է բերել և, անկասկած, է՛լ ավելի մեծ հաջողություններ կբերի ապագայում: Այսուհետև ևս պետք է պահպանել և ամրապնդել այդ սկզբունքները, կրթության սովետական համակարգի սոցիալիստական ավանդույթները, դրանք մշտապես հարստացնել ժամանակակից պայմանների համեմատ:

Անդրադառնալով միջնակարգ կրթության իրականացման գործում ձեռք բերված նվաճումներին, սեսիան միաժամանակ նշեց, որ որոշ միութենական հանրապետություններում առանձնապես գյուղական շրջաններում, միջնակարգ կրթություն ստացող երիտասարդների տոկոսը ընդհանուր միութենականից ցածր է: Գյուղական երիտասարդության մի մասն ամեն տարի հանրակրթական դպրոցներից և տեխնիկումներից դուրս են մնում նախքան միջնակարգ կրթություն ստանալը: Այս կապակցությամբ բացառիկ կարևոր նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի կողմից վերջերս ընդունված որոշումը «Գյուղական հանրակրթական դպրոցի աշխատանքի պայմանների հետագա բարելավման միջոցառումների մասին»: Այդ որոշման մեջ գյուղական դպրոցի ամրապնդման ու զարգացման լայն, համակողմանի ծրագիր է նախատեսված:

ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիան հաստատեց պետական և հասարակական մեծ նշանակություն ունեցող փաստաթուղթ՝ ժողովրդական կրթության օրենսդրության հիմունքները, որի մեջ վավերագրված են մեր երկրում ժողո-

վորդական կրթության դեմոկրատական սկզբունքները, սահմանված են ընդհանուր միջնակարգ, պրոֆեսիոնալ տեխնիկական, միջնակարգ մասնագիտական և բարձրագույն կրթության գլխավոր խնդիրները։

Մեր երկրում չկա աշխատանքի մի այնպիսի ոլորտ, որն ուղղակիորեն առնչված չլինի դպրոցական կրթության, ուսուցման հետ։ Ժողովրդական կրթության մեր համակարգը թևակոխում է զարգացման նոր փուլ։ Երկրում ավարտվում է անցումը ընդհանուր միջնակարգ կրթության։ Հենց դա էլ ժամանակի թելադրանքն է, արագ տեմպերով ընթացող գիտատեխնիկական հեղաշրջման թելադրանքը։

Օրենսդրության հիմունքները միաժամանակ օրենսդրորեն վավերագրում են ժողովրդական կրթության բոլոր օղակների կառուցվածքի հիմնական սկզբունքները, համակարգում կրթության բնագավառի գործող կարևորագույն որոշումները, արտացոլում աճող սերնդի կոմունիստական դաստիարակության լենինյան գաղափարների կենսագործման ասպարեզում կուտակված հարուստ փորձը, մեր երկրի բոլոր ուսումնա-դաստիարակչական հիմնարկությունների գործունեությունը դնում իսկական ամուր հիմքերի վրա։ «Հիմունքներ»-ում վավերագրված է նաև ուսուցման և կոմունիստական դաստիարակության միասնության, դպրոցի, ընտանիքի և հասարակայնության համագործակցության սկզբունքը։ Այդ բոլորը համապատասխանում են զարգացած սոցիալիստական հասարակարգի ոգուն և պահանջներին, վկայում են մեր երկրում կրթության համաժողովրդական, հիրավի, դեմոկրատական բնույթի մասին, լիովին բխում են կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունից։

«Հիմունքներ»-ում մեծ տեղ է տրվում հասարակական դաստիարակության նոր օջախների՝ գիշերօթիկ և երկարօրյա դպրոցների կազմակերպմանը, որոնցում հիմնականում պետք է ընդգրկվեն ծնողների խնամակալությունից, ինչպես նաև տանը դաստիարակության անհրաժեշտ պայմաններից զուրկ երեխաները։ Երկարատև բուժման կարիք ունեցող երեխաների և դեռահասների համար կազմակերպում են հանրակրթական կազդուրիչ սանատորիա-անտառային դպրոցներ։

Կոմունիզմի գիտակից, բարձրակիրթ, ակտիվ մարտիկների դաստիարակության գործում պետությանը, ուսումնական հաստատություններին մեծ օգնություն է ցույց տալիս սովետական ընտանիքը։ «Հիմունքներ»-ում պատշաճ չափով արտացոլվում է ծնողների այդ ամենագլխավոր պարտականությունը։ Ընտանիքի, դպրոցի, հասարակայնության համատեղ, համաձայնեցված գործողություններն են ապահովում նոր սերնդի համակողմանի, արդյունավետ կրթությունն ու դաստիարակությունը։ Յուրաքանչյուր սովետական քաղաքացի, կարդալով «Հիմունքներ»-ը, գիտակցում է այն վիթխարի խնդիրների լրջությունն ու պատասխանատվությունը, որ դրվում են դպրոցի աշխատողների վրա՝ երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում։

Մեր այսօրվա տղաներն ու աղջիկները ապագա հասարակության գործուն անդամներն են։ Նրանց դերն այդ հասարակության մեջ պայմանավորված է նրանով, թե նրանք ինչպես կնախապատրաստվեն կյանքին։ Օժտելով սովորողներին աշխատանքային հմտություններով ու ունակություններով՝ դպրոցը դրանով իսկ նպաստում է ոչ միայն ապագա լավ քաղաքացու ձևավորմանը, այլև ապահովում նրա հետագա կենսամակարդակն ու բարեկեցությունը։

Լ. Հ. ԿԱՆՑՅԱՆ

ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ

ամբիոն

## ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ

Մեր երկրի սոցիալիստական շինարարության պատմական փորձը վկայում է, որ կոմունիստական կուսակցության մասսայական-քաղաքական աշխատանքը տնտեսական արմատական խնդիրների լուծման գործում սովետական ժողովրդի հաջողությունների կարևորագույն նախադրյալներից է։ Հայրենական մեծ պատերազմի ժամանակաշրջանում է՛լ ավելի մեծացավ աշխատավորների շրջանում տարվող մասսայական-քաղաքական և կուլտուր-դաստիարակչական աշխատանքի դերը։ Ուստի, բնական է, որ պատերազմի դժնդակ տարիներին կոմունիստական կուսակցությունը հըսկայական ուշադրություն էր նվիրում գաղափարախոսության, մասսայական-դաստիարակչական աշխատանքին, ռազմական իրադրության պահանջներին համապատասխան դրա վերակառուցմանը։

Պատերազմի տարիներին մասսաների շրջանում տարվող կուսակցության գաղափարական-դաստիարակչական աշխատանքի գլխավոր խնդիրն էր՝ սիստեմատիկաբար բարձրացնել նրանց քաղաքական գիտակցությունը, սովետական յուրաքանչյուր քաղաքացու մեջ արմատավորել անձնական բարձր պատասխանատվության զգացում իր սոցիալիստական հայրենիքի ճակատագրի համար, սովետական մարդկանց ուժերը մոբիլիզացնել՝ ջախջախելու գերմանա-ֆաշիստական զավթիչներին։

Ղեկավարվելով ՀամԿ(բ)Կ Կենտկոմի որոշումներով՝ սովետական բանակի կուսկազմակերպությունները հաջողությամբ վերակառուցեցին ինչպես գաղափարախոսական, այնպես էլ կուլտուր-լուսավորական հիմնարկությունների գործունեությունը։ Հանրապետությունների կոմկուսների կենտկոմները մի շարք միջոցառումներ անցկացրին՝ կուլտուր-լուսավորական հիմնարկությունները կադրերով ամրապնդելու, նրանց գործունեությունը բարելավելու և նոր հաստատությունների շինարարությունն իրականացնելու համար։

Հայաստանում գաղափարախոսական աշխատանքի վերակառուցման հարցը հանրապետության կոմկուսի Կենտկոմի բյուրոն քննության առավ 1941 թ. հուլիսի սկզբին։ Ընդունված որոշման մեջ պահանջվում էր առաջավոր կոմունիստներից ագիտատորներ ուղարկել արդյունաբերական ձեռնարկություններն ու գյուղական վայրերը, նպատակ ունենալով թիկունքի աշխատավորների ուժերը մոբիլիզացնել ռազմական պատվերներն ու արտադրական պլանները կատարելու, քաղինֆորմացիա անցկացնելու և աշխատավոր ժողովրդին սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելու համար[1]։ Այդ որոշման հիման վրա հանրապետության 'քաղաքներում ու գյուղերում ստեղծվեց ագիտատորների լայն ցանց։ Ագիտկոլեկտիվները համալրվեցին կուսակցական ու սովետական ղեկավար աշխատողներով, գիտության, գրականության և արվեստի աչքի ընկնող գործիչներով, գյուղական մտավորականության ակտիվիստներով, առաջավոր կոլտնտեսականներով։ Ձեռնարկված միջոցների շնորհիվ արդեն 1941 թ. վերջին հանրապետությունում կային 4 հազար ագիտատորներ[2]։ Վերակառուցվեց շրջանային կուսկաբինետների գործունեությունը, որոնք դարձան օպերատիվ ագիտկետեր։ Ագիտկետեր ու ագիտբրիգադաներ կազմակերպվեցին գյուղերում և մոբիլիզա-

---

*1 Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 30, գ. 881, թ. 2։*

*2 Տե՛ս նույն տեղը, գ. 13, թ. 102։*

ցիոն կետերում, խոշոր ձեռնարկություններում ու բնակելի տներին կից[1]:

Լավ էին աշխատում Երևանի երկաթուղային հանգույցի, Ս. Մ. Կիրովի անվան քիմիական, ալրաղաց, ձեթ-օճառի կոմբինատների, ծխախոտի փաբրիկայի, «Մոսկվա» կինոթատրոնի և մի շարք այլ ձեռնարկությունների ու հիմնարկությունների ագիտկետերը (տե՛ս «Коммунист», № 257, 30 հոկտեմբերի 1941 թ.): Ագիտացիոն աշխատանքին ակտիվորեն մասնակցում էին գրողներ Դ. Դեմիրճյանը, Մ. Արազին, Ն. Զարյանը, պրոֆ. Աբ. Հովհաննիսյանը, պատմական գիտությունների դոկտոր Վ. Ռշտունին, դերասաններ Մ. Մանվելյանը, Վ. Վարդանյանը և ուրիշներ[2]: Շրջանային ագիտբրիգադաների մեջ մտնում էին բանաստեղծներ, երաժիշտներ, նկարիչներ, որոնք սիստեմատիկաբար զրույցներ էին անցկացնում, լույս ընծայում պատի ու փոտո-թերթեր:

Ագիտատորներն աշխատավորներին պարզաբանում էին Սովետական ինֆորմբյուրոյի հաղորդումները, նրանց ծանոթացնում «Պրավդա»-ի առաջնորդող հոդվածներին, հանրապետական թերթերի նյութերին, ռազմաճակատներում տեղի ունեցող իրադարձություններին, թիկունքի աշխատանքային սխրանքներին՝ այդ ամենը սերտորեն կապելով յուրաքանչյուր կոլեկտիվի կոնկրետ խնդիրների հետ:

Հանրապետության կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն էին նվիրում արտադրական ագիտացիային: Ձեռնարկություններում ագիտատորների միջոցով անցկացվում էր արտադրության առաջավորների փորձի փոխանակում, աշխատանք էր տարվում պլանները գերակատարելու, խնայողության ռեժիմն արմատավորելու համար: Այն ձեռնարկություններում, որտեղ ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքն ամուր հիմքերի վրա էր դրված, անշուշտ, հաջողությամբ էին կատարվում նաև արտադրական պլանները: Հմտորեն կազմակերպված, գործուն ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի օրինակ կարող է ծառայել «Արարատ» և № 1 հացի գործարանների ագիտկոլեկտիվների գործունեությունը: Այդ գործարաններում տարվող քաղաքական աշխատանքը սերտորեն կապվում էր արտադրական պլանների կատարման հետ: Զարմանալի չէ, որ այդ ձեռնարկությունները սիստեմատիկաբար գերակատարում էին պլանները[3]: Ագիտացիոն լայն աշխատանք էր տարվում նաև զորակոչային կետերում և հավաքակայաններում: Ագիտատորներն այնտեղ պարբերաբար հանդես էին գալիս դասախոսություններով, զեկուցումներով և զրույցներով, թողարկում մարտական թերթիկներ, իսկ արվեստի աշխատողները համերգներ էին տալիս:

Ագիտացիոն-մասսայական գործունեության ժամանակ հատուկ տեղ էր հատկացվում ռազմա-պաշտպանական հարցերին: Հանրապետության կոմկուսի Կենտկոմը պատերազմի առաջին իսկ օրերից ագիտատորների ու պրոպագանդիստների մի մեծ խումբ ուղարկեց զորամասեր ու միավորումներ՝ քաղաքական աշխատանք տանելու համար: Հայ ռազմիկների շրջանում տարվող գաղափարախոսական աշխատանքն առավել լավ կազմակերպելու նպատակով նրանց համար ուղարկվում էր մայրենի լեզվով քաղաքական, ռազմական, գեղարվեստական գրականություն[4]:

Ռազմա-հայրենասիրական և պաշտպանական զգալի աշխատանք էին կատարում շրջանային ագիտկետերը, որոնց առընթեր կային հատուկ ռազմա-պաշտպանական սենյակներ և անկյուններ, ուր անց էին կացվում դասախոսություններ, կոնսուլտացիաներ, պարապմունքներ: Ռազմական ուսուցման ցանցն ընդգրկում էր մոտ 100 հազար մարդ, որոնք անցել էին 110-ժամյա ռազմական ուսուցում: Ագիտացիոն-պրոպագանդիստական և կուլտուր-մասսայական բազմազան աշխատանք էր տարվում զինվորական հոսպիտալներում:

Կուսակցության գաղափարախոսական և մասսայական-քաղաքական գործունեության կարևորագույն խնդիրը մասսաներին սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելն էր: Կուսակցության գործունեության նպատակն էր աշխատավորներին դաստիարակել սովետական ժողովուրդների հեղափոխական ավանդույթների ու հերոսական անցյալի, կոմունիզմի իդեալներին հավատարմության, սոցիալիստական հայրենիքի նկատմամբ հպարտության, թշնամու հանդեպ անսահման ատելության ոգով:

Պատերազմի տարիներին ռազմա-հայրենասիրական դաստիարակության գործում առանձնապես մեծացավ սովետական ժողովրդի մարտական ավանդույթների, օտարերկրյա հափշտակիչների դեմ նրա հերոսական պայքարի պրոպագանդման դերը: Դաստիարակչական մեծ նշանակություն ունեցան Հայրենական մեծ պատերազմի տարիներին սովետական մարդկանց, հայ ռազմիկների քաջության, սխրագործության և հերոսության վերաբերյալ պատ-

[1] Տե՛ս նույն տեղը, թ. 16:

[2] Տե՛ս ՄԼԻ Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 30, գ. 13, թ. 17:

[3] Տե՛ս նույն տեղը, ց. 31, գ. 9, թթ. 49—50:

[4] Տե՛ս ՄԼԻ Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 31, գ. 885, թթ. 94—97:



մըվածքները ու ակնարկները: Օգտակար դեր էին խաղում հանդիպումները ու զրույցները մարտերի մասնակիցների, պատերազմի հերոսների, պարտիզանների հետ: Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում զորամասերն ու զորամիավորումները պարբերաբար ճակատային ռազմիկների պատվիրակություններ էին ուղարկում մեր հանրապետության քաղաքներն ու շրջանները՝ աշխատավորների առջև հանդես գալու համար: Այսպես, 1942 թ. հոկտեմբերին ռազմաճակատից Հայաստան գործուղվեցին Հ. Քոչարը, Ա. Մատղաշյանը և ուրիշներ, որոնք բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության ընդհանուր ժողովներում պատմում էին իրենց միավորումների հերոսների և մարտական իրադարձությունների մասին: 1944 թ. փետրվարին 409 Կիրովգրադյան հայկական հրաձգային դիվիզիայի հրամանատարությունը Հայաստան ուղարկեց մի բազմամարդ պատվիրակություն, որն այցելեց մի շարք քաղաքներ ու գյուղեր: Պատվիրակության անդամները աշխատավորներին պատմում էին դիվիզիայի մարտական գործերի մասին: Ճակատային ռազմիկներին ընդունեց հանրապետության Գերագույն սովետի նախագահությունը և նրանց հանձնեց պատվոգրեր ու նվերներ: Պատվիրակության անդամները դիվիզիայի անձնակազմի անունից Սովետական Հայաստանի կառավարությանը և հայ ժողովրդին հավաստիացրին, որ իրենք մինչև վերջ կպայքարեն հակառակորդի դեմ և տուն կվերադառնան թշնամու վերջնական ջախջախումից հետո միայն (տե՛ս «Коммунист», 16 փետրվարի, 1944): 1944 թ. հունիսի 6-ին հանրապետություն ժամանեց 89-րդ Թամանյան հայկական դիվիզիայի՝ 12 ռազմիկներից կազմված պատվիրակությունը, որին գլխավորում էր դիվիզիայի հրամանատար, գեներալ-մայոր Ն. Սաֆարյանը:

1941 թ. հոկտեմբերի 30—31-ին տեղի ունեցավ Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի VIII պլենումը, որը քննարկեց կուսակցական-քաղաքական աշխատանքի վիճակը պատերազմական ժամանակի պայմաններում: Պլենումը մատնանշեց, որ հանրապետության կուսկազմակերպությունը, ամբողջությամբ վերցրած, պատերազմի պահանջներին համապատասխան հաջողությամբ վերակառուցել է իր գործունեությունը, և պահանջեց ուժեղացնել ռազմաճակատին օգնելու, թիկունքն է՛լ ավելի ուժեղացնելու, զորամասերի ու հոսպիտալների հետ սերտ կապեր հաստատելու և նրանց զանազան օգնություն ցույց տալու համար տարվող աշխատանքը[1]: Մատնանշելով ագիտացիոն աշխատանքում տեղ գտած թերությունները, պլենումը պահանջեց, որ կուսակցության շրջկոմների առաջին քարտուղարներն անմիջականորեն զբաղվեն ագիտատորների դաստիարակության գործով, կուսակցական, սովետական, կոմերիտական ղեկավար աշխատողները սիստեմատիկաբար հանդես գան բնակչության առաջ, ագիտացիոն գործունեությանը մասնակցեն ո՛չ միայն կոմունիստները, այլև բոլոր բանվորներն ու ծառայողները, որ ագիտացիան տարվի ցանկացած պահին, ցանկացած պարագայում: Ագիտացիան պետք է լիներ հարձակողական, քաղաքական խոր բովանդակությամբ և նպատակալաց: Պլենումի որոշումները կուսկազմակերպություններին օգնեցին զգալիորեն բարելավելու գաղափարախոսական-դաստիարակչական գործունեությունը, բազմազան դարձնելու ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի ձևերն ու մեթոդները: Բացի բանավոր ու տպագիր պրոպագանդայից և ագիտացիայից, լայն թափ ստացավ ցուցադրական ագիտացիան:

Դասախոսական պրոպագանդային ակտիվորեն մասնակցում էին կուսակցական ու սովետական աշխատողներ, աչքի ընկնող գիտնականներ, գրականության ու արվեստի խոշոր գործիչներ: Ագիտացիոն-պրոպագանդիստական գործունեության կազմակերպման գործում տեղական կուսկազմակերպություններին օգնություն ցույց տալու նպատակով 1942 թ. Հայաստան այցելեցին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի պրոպագանդայի վարչության մի խումբ պատասխանատու աշխատողներ՝ Մ. Պետրոսյանի գլխավորությամբ: Ստուգումները ցույց տվեցին, որ պրոպագանդիստական կադրերի ընտրությունը կատարվում է ճիշտ, կազմակերպական բարձր մակարդակով, որ պատշաճ և որոշակի սիստեմով է կազմակերպվում պրոպագանդիստական աշխատանքը, մտավորականությունն ակտիվորեն մասնակցում է ագիտացիոն-պրոպագանդիստական գործունեությանը[2]: 1943 թ. հանրապետությունում կարդացվել է 8.432 դասախոսություն, որոնց ներկա է եղել 733 հազար 778 մարդ[3]:

Կուսակցությունը սովետական մարդկանց դաստիարակում էր սոցիալիստական գաղափարախոսության ու բարոյականության, կոմունիզմի գործին նվիրվածության, հայրենիքի հանդեպ հավատարմության, սովետական հայրենասիրության ու թշնամու դեմ հաղթանակի նկատմամբ վստահության ոգով:

Սովետական մարդկանց բարձր գաղափա-

[1] Տե՛ս ՄԼԻ Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 3, գ. 17, թթ. 8—9:

[2] Տե՛ս ՄԼԻ Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 31, գ. 9, էջ 84:

[3] Տե՛ս նույն տեղը, ց. 33, գ. 7- թ. 64—65:

է ունեցել, օրինակ՝ նորագույն սլավոնական գրականություններում, որտեղ նույն կերպով միանգամից երևան եկան եվրոպական գրականության բոլոր ձևերը, կամ ինչպես եղել է այդ մեր գրականության մեջ անցյալում և այս դարի (այսինքն՝ XIX դարի) սկզբներին»։

Այսպիսով, վիճելի չէ այն ակնհայտ փաստը, որ ռուս գրականությունն ազդել է հայ նոր շրջանի գրական զարգացման վրա։ Հարցը այդ ազդեցության չափի և բնույթի մասին է, որը կոնկրետ հետազոտության կարիք ունի։ Յու. Վեսելովսկին գերագնահատել է ազդեցության նշանակությունը։ Նրան չի հաջողվել հայտնաբերել հայ բանաստեղծության (նոր շրջանի) ծագման ազգային ակունքները։ Մասնավորապես համոզիչ չեն նրա դատողությունները Նաղաշի ազդեցության մասին։ Այնտեղ, որտեղ ավելի շուտ Պուշկինը և Լերմոնտովն են ազդել (այդ մասին ասում են իրենք՝ բանաստեղծները), Վեսելովսկին փնտրում է Նաղաշի ազդեցությունը։

Յու. Վեսելովսկու հոդվածները կրում են կուլտուր-պատմական գրականագիտության զգալի ազդեցությունը։ Հետևելով իր հորը (մասնավորապես նրա «Արևմտյան ազդեցությունները ռուս գրականության մեջ» աշխատությանը), նա փորձում է նույն սկզբունքները կիրառել հայ-ռուսական գրական հարաբերությունների պատմությանը նվիրված իր հոդվածներում։

Պատմական հանգամանքներն այնպես են դասավորվել, որ հայագիտությունը Ռուսաստանում ավելի ուշ է կազմավորվել, քան Արևմտյան Եվրոպայում։ Առաջին խոշոր հայագետը, որի աշխատությունները մինչև մեր օրերը չեն կորցրել իրենց գիտական նշանակությունը, հայ ժողովրդի ծոցից ելած, Լազարյան ճեմարանի սան (սպա և դասատու) Մկրտիչ Էմինն էր։ Նրանից հետո պետք է հիշատակել նույն ճեմարանի սան Քերովբե Պատկանյանի արդյունավետ գործունեությունը, որն առաջինը հայ գիտնականներից ընտրվեց պետերբուրգյան գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ և որը որպես հայագետ, հայտնի դարձավ և Եվրոպայում։

Լազարյան ճեմարանում է ստացել իր հայագիտական գիտելիքները նաև Յուրի Վեսելովսկին։ Սակայն նա այլ տիպի գործիչ էր։ Ոչ այնքան գրականագետ, որքան գրասեր էր նա։ Ահա ինչու Ն. Յա. Մառը իր սևագիր դիտողություններից մեկում գրել է. «Առայժմ չեմ տեսնում Կովկասի գրականությամբ գիտականորեն հետաքրքրվող ոչ մի ռուս, ներառյալ հանգուցյալ Յուրի Վեսելովսկուն»։

Չնայած այս հանգամանքներին, իրավունք չունենք մոռացության մատնելու այն փաստը, որ Յուրի Վեսելովսկին ռուս գրասերներից առաջինն էր, որ ցարական իրավակարգի պայմաններում, ազգային ու անտարբերության մթնոլորտում անգնահատելի աշխատանք կատարեց հայ նոր գրականության ժողովրդականացման բնագավառում։

Այսօր մենք նրախտապարտ ենք հայ գրականության քրտնաջան, եռանդուն պրոպագանդիստին, հայ ժողովրդի անշահախնդիր բարեկամին, որի գրական-հասարակական գործունեությունը ծառայեց հայ և ռուս ժողովուրդների կուլտուրական ու գաղափարական մերձեցման ազնիվ նպատակին։

Կ. Ն. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Բանասիրական գիտությունների դոկտոր

Լենինգրադ


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ)։

Адрес редакции: Ереван-33, Барекамутян, 59 г.
Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64։

ՎՖ 05798 Պատվեր 1426 Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ 13.100 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 4/IX 1973 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ Ավ. Իսահակյան փող. № 28։





## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԳԱՍՏԵՎ Ա. Կ.— Աշխատանքային հրահանգներ, *Մ., «Экономика» հրատ., 1973, 343 էջ։*

ՖԻԼԻՊՈՎԱ Գ. Դ.— Աշխատանքի արտադրողականության պլանավորումը արդյունաբերության մեջ, *Մ., «Экономика» հրատ., 1973, 152 էջ։*

Գյուղատնտեսական արտադրության վերլուծության հարցերը, *Մ., «Экономика» հրատ., 1973, 63 էջ։*

Արդյունաբերական միավորումների ու ձեռնարկությունների կառավարման կազմակերպման հիմունքները, *պրակ II, Դ. Մ. Գվիշիանիի, Ս. Ե. Կամենիցերի, Ն. Մ. Օզնոբինի խմբագրությամբ, Մ.,* «Экономика» *հրատ., 1973, 222 էջ։*

ՀՈՎԱԿԻՄՅԱՆ Հ. Հ.— Նյութական շահագրգռվածության տնտեսական օրենքը սոցիալիզմի ժամանակ։ *Եր., համալս. հրատ., 1973, 290 էջ։*

*Այս գրքում բացահայտված են նյութական շահագրգռվածության համընդհանուր տնտեսական օրենքի գործողության պայմանները և այլ հարցեր։*

Բնագիտության և տեխնիկայի պատմությունը Հայաստանում։ *Գիտական աշխատությունների ժողովածու։ Հինգերորդ հատոր։ Եր., ԳԱ հրատ., 1973, 282 էջ։*

*Այս հատորում զետեղված են բնագիտության և տեխնիկայի պատմության վերաբերյալ հայերեն և ռուսերեն ուսումնասիրությունների անունները (հին և սովետական շրջան)։*

Հայոց լեզվի զարգացումը սովետական շրջանում։ *(Ժողովածու)։ Եր., ԳԱ հրատ., 1973, 554 էջ։*

Ծրագիր քաղաքատնտեսության դասընթացի։ *Բարձրագույն ուսումն. հաստ. համար։ Եր., համալսարանի հրատ., 1973, 66 էջ։*

ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա.— Դաստիարակչական աշխատանքը պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում։ *(Մեթոդական ձեռնարկ)։ Եր., «Լույս» հրատ., 1973, 164 էջ։*

*Հեղինակը, ելնելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներից և օգտագործելով պրոֆտեխնիկական ուսումնարանների փորձը, շարադրել է կոմունիստական դաստիարակության հիմնական խնդիրները։*

ՎԱՐԴԱՆՅԱՆ Բ. Թ.— Փոքրիկը, որոնող սերունդ։ *Եր., «Հայաստան» հրատ., 1973, 78 էջ։*

*Գրքում հեղինակը համառոտ, հանրապետության երիտասարդության կյանքի կոնկրետ օրինակներով, վերլուծում է երիտասարդության կոմունիստական դաստիարակության հարցերը, և հատկապես ուշադրություն նվիրում ինտերնացիոնալ և գեղագիտական դաստիարակությանը։*

ՏԻՉԻՆԱ Պ., ՌԻԼՍԿԻ Մ.— Հայաստանի և հայ կուլտուրայի մասին։ *Կազմեց և խմբագրեց Գուրգեն Հովնանը։ Եր., ԳԱ հրատ., 1973, 250 էջ։*

*Գրքում զետեղված են ուկրաինացի ժողովրդական գրողներ՝ Տիչինայի և Ռիլսկու ստեղծագործությունները և հոդվածները Հայաստանի ու հայ կուլտուրայի մասին։*

Հին Արևելք։ Քաղաքները և առևտուրը։ *(3—1 հազար. մ. թ. ա.)։ Եր., ԳԱ հրատ., 1973, 244 էջ (ռուսերեն)։*

*Ժողովածուում զետեղված են 1969 թ. Երևանում տեղի ունեցած Համամիութենական սիմպոզիումում կարդացված զեկուցումները։*

Կուսակցական շինարարության ուսումնական ձեռնարկ։ *Եր., «Հայաստան» հրատ., 1973, 608 էջ։*

*Ձեռնարկը բացահայտում է կոմկուսի մասին մարքսիստական-լենինյան ուսմունքի հիմունքները, կուսակցական կյանքի լենինյան նորմերը և ղեկավարման սկզբունքները։ Այն նախատեսված է կուսկրթության ցանցի և կուսշինարարության հարցերն ուսումնասիրողների համար։*

ԼԱԼԱՅԱՆ Ա. Ս.— Պրոֆեսիոնալ-կողմնորոշում։ *Եր., «Լույս» հրատ., 1973, 128 էջ։*

Գինը 25 կ.: 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԼԱԶԵՐԱՅԻՆ ՀԵՌՈՒՍՏԱՑՈՒՅՑ

*ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի Պ. Ն. Լեբեդևի անվան ֆիզիկական ինստիտուտի քվանտային ռադիոֆիզիկայի լաբորատորիայում ակադեմիկոս Ն. Գ. Բասովի ղեկավարությամբ ստեղծվել է լազերային կինեսկոպ՝ էլեկտրոնաճառագայթային խողովակիկ՝ լազերային էկրանով պրոյեկցիոն հեռուստատեսության համար: Լյումինաֆորի լուսավորող նյութի փոխարեն օգտագործվում է բարակ (սանտիմետրի մեկ հազարերորդական չափ) կիսահաղորդչային թիթեղ: Կարելի է պրոյեկցել էկրանի վրա 60 կմ տարածությամբ պատկերը:*

*Գյուտի հեղինակները ենթադրում են, որ լազերի այդ տիպը հեռուստատեսության և կինոյի նոր սիստեմի ստեղծման հիմք կարող է լինել:*

## ԱՐԱԳԸՆԹԱՑ ՈՒՆԻՎԵՐՍԱԼԸ

*Լիպեցկի տրակտորաշինարարները ստեղծում են ունիվերսալ էներգահագեցված արագընթաց տրակտոր: Գործարանի կոնստրուկտորները մշակել են Л—100 տրակտորի մոդելը: Л—100-ի աշխատանքային արագությունը ժամում 15 կմ է, իսկ տրանսպորտայինը՝ 45 կմ: Տրակտորի խցիկը հերմետիկ է, ջեռուցվում և օդափոխվում է: Նոր տրակտորի հետ կարող են օգտագործվել բոլոր կախովի մեքենաները և գյուղատնտեսական գործիքները:*

## ՆԱՏՐԻՈՒՄԱԿԱՆ ԼՈՒՍԱՏՈՒ

*Համամիութենական լուսատեխնիկական ինստիտուտը պատրաստել է բարձր ճնշման նատրիումական լամպ, որն իր չափերով մի փոքր է մեծ դպրոցական գրչատուփից, հզորությունն էլ մեծ չէ՝ 400 վատտ, բայց կարող է գիշերը լուսավորել քաղաքային մեծ հրապարակը: Շիկացման թելի փոխարեն լամպի մեջ տեղադրված փոքրիկ խողովակում խտացվում է վիթխարի լուսային էներգիա:*

## ՍՆՆԴԱՐԱՐ ԿԱՐԲԻԶՈԼ

*Բուլղարական Դիմիտրովգրադ քաղաքի «Քիմիկ» գործարանում սկսվել է կարբիզոլ քիմիական պրեպարատի արտադրությունը: Այն նախատեսված է կովերի զարգացումը արագացնելու և կաթնատվությունը բարձրացնելու համար:*

## ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ ԲՈՒԺՈՒՄ Է

*Լեհական Վրոցլավ քաղաքի բարձրագույն երաժշտական դպրոցում ստեղծվել է երաժշտաբուժման բաժանմունք: Բժիշկների համագործակցությամբ այստեղ մըշակվում են մեթոդներ, որոնք հնարավոր են դարձնում մեղեդին օգտագործելու որպես ներվային ու հոգեկան հիվանդությունների բուժման միջոց:*

## ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ԿԵՆՑԱՂՈՒՄ

*Գերմանական Դեմոկրատական Հանրապետության «Ստուդիոտեխնիկ» ժողովրդական ձեռնարկությունը թողարկել է պարզ գործածման պորտատիվ տրանզիստորային հեռուստախցիկ: Այն կարելի է օգտագործել խանութում, դպրոցում, հիվանդանոցում և նույնիսկ բնակարանում: Խցիկը միացնելով ուղղակի հեռուստացույցին, կարելի է դիտել, թե ինչ է կատարվում խոհանոցում կամ մանկական սենյակում:*

## ՇԻՆԱՆՅՈՒԹ՝ ԾԾՄԲԻՑ

*Ծծմբի արտահանումը հրաբխային շըրջաններում հատուկ դժվարություններ և մեծ ծախսեր չի պահանջում: Ծծումբը չի լուծվում ջրում, ջերմամեկուսիչ է, և լավ է միանում տարբեր նյութերի: Ուստի, շինարարները ծծումբը համարում են ոչ խոշոր տների կառուցման համար շինանյութ:*

*Ավազից կամ մանրացված հրաբխային լավայից կարելի է պատրաստել ծծմբի խառնուրդով ցեմենտ, որը կայուն է ուտիչ նյութերի և թթուների նկատմամբ: Այդպիսի ցեմենտով կարելի է կառուցել կենցաղային սիստեմներ. դրա լուծույթով ցողված կառույցի պատերը պահպանվում են կործանումից (Իտալիա):*

## ԱՆԱՂՄՈՒԿ ՏՐԱՄՎԱՅՆԵՐ

*Լոնդոնի փողոցներում շուտով կերևան տրամվայի նոր գծեր, որոնց շնորհիվ այդ շարժումը կլինի անաղմուկ, քանի որ մետաղյա ռելսերին կփոխարինեն ամուր մամլված ռետինե գծեր: Բացի դրանից այդ գծերի վագոնները կտեղափոխեն 10—20 ուղևոր: Այդ տրամվային պետք չեն սնման կոնտակտային էլեկտրացանցերը: Դրանք կունենան ակումուլյատորի մարտկոցներ:*